## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԵԳԱՆՈՎ Գ. Լ.— «ՍՍՌՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական զարգացման պրոբլեմները ԱՄՆ-ի տնտեսագետ-աշխարհագետների աշխատություններում» *(ռուսերեն)։ Այս աշխատության մեջ քննադատված են ամերիկյան և ընդհանրապես բուրժուական տնտեսական աշխարհագրության մեջ իշխող հիմնական տեսական սկզբունքները և համառոտ բնութագրվում է այն ղինանոցը, որից կորզվում են այդ գաղափարները։ Աշխատության հիմնական մասը նվիրված է ՍՍՌՄ-ի և սոցիալիստական երկրների տնտեսական աշխարհագրության այն հարցերին, որոնք գրավում են ամերիկյան գիտնականների ուշադրությունը և քննադատվում են նրանց կողմից։*

*Հեղինակը մեր երկրի և սոցիալիստական մյուս երկրների տնտեսական զարգացման ճիշտ պատկերը հակադրում է այդ գիտնականների աշխատությունների մեջ տրված սխալ պատկերացումներին և վեր է հանում նրանց տհասությունը մեր կյանքի մի քանի կարևոր կողմերը հասկանալու անկարողության մեջ և փաստերը գիտակցաբար աղավաղելու նրանց մտադրությունը։ Գրքում միաժամանակ նշվում է այն դրականը, որ կա տնտեսական աշխարհագրությամբ զբաղվող ամերիկյան գիտնականների մոտ։*

ԱՆԱՍՅԱՆ Հ. Ս.—«XVII դարի ազատագրական շարժումները Արևմտյան Հայաստանում»: *Հայկական և օտար աղբյուրների հիման վրա գրված այս պատմական հետազոտությունը մեր ընթերցողներին է ներկայացնում հայ ազատագրական շարժումներից բոլորովին անհայտ մնացած մի դրվագ։ Աշխատության մեջ նոր և հարուստ նյութերի հիման վրա քննության են առնվում հայ ժողովրդի արևմտյան հատվածի XVII դարի պատմության հետ կապված հարցերը։*

ՆԵՐՍԻՍՅԱՆ Ա. Ն.—«Արևմտահայերի տնտեսական ու քաղաքական վիճակը և նրանց ռուսական օրիենտացիան XIX դարի առաջին կեսերին»:

*Մասնագետների և ընթերցող լայն շրջանների համար նախատեսված այս ուսումնասիրության մեջ փորձ է արված վեր հանելու արևմտահայ աշխատավորության տնտեսական ծանր պայմանները, նրանց կրած անլուր տառապանքները թուրքական ռազմա-ֆեոդալական լծի տակ։ Այդ անտանելի ծանր պայմաններում շարունակվում է արևմտահայերի դեռ վաղուց ծայր առած պայքարը թուրքական տիրապետության դեմ։ Այդ պայքարի ընթացքում նրանք մի ավելորդ անգամ համոզվում են, որ Եվրոպայից օգնության հույս տածելն ավելորդ է և իրենց երեսը լրիվ դարձնում են դեպի հյուսիս՝ Ռուսաստան։*

*1828—1829 թվականների ռուս թուրքական պատերազմում ռուսների տարած հաղթանակները էլ ավելի են ոգեշնչում ու հուսադրում արևմտահայերին։ Բայց նրանց՝ թուրքական լծից ազատագրվելու հույսը ի դերև է ելնում, Արևմտյան Հայաստանը պատերազմից հետո նորից մնում է թուրքական բռնակալության արյունալի լծի տակ, սակայն հայերի ռուսական օրիենտացիան ավելի է ամրապնդվում։*

ԼԱՎՐԵՑԿԻ Ի. —«Կարդինալները գնում են դժոխք» *(ռուսերեն)։ Հեղինակը հենվելով փաստական հարուստ նյութի վրա, աշխույժ, վառ ու համոզիչ ձևով ընթերցողին պատմում է Հռոմի այժմյան Պապի՝ Հովհան XXIII-ի ընտրության ժամանակ տեղի ունեցած անդրկուլիսային խայտառակ պատմության, եկեղեցական ազնվագարմ քուրմերի քաղաքական ինտրիգների, Կուբայում հոգևորական դասի հակառևոլյուցիոն գործողությունների, Կոնգոյում բելգիական իմպերիալիստներին կաթոլիկական միսիոներների ցույց տված օգնության, Հռոմում 1960 թվականին կայացած Օլիմպիական խաղերի ժամանակ Վատիկանի պրովոկացիաների, դեպի կոսմոս մարդու առաջին թռիչքի նկատմամբ կաթոլիկ եկեղեցու ցույց տված վերաբերմունքի մասին և այլն։ Գրքում կան կաթոլիկական եկեղեցու պարագլուխների գործունեությունը ցուցադրող շատ ֆոտոնկարներ ու ծաղրանկարներ, որոնք ավելի հետաքրքիր են դարձնում այն։*

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ —ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 8
ՕԳՈՍՏՈՍ
1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ






# ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ԽՆԴԻՐԸ

Սովետական Միության Կոմունիստական պարտիան գյուղատնտեսության ջեշտակի վերելքը համարում է կոմունիստական շինարարության գլխավոր և անհետաձգելի խնդիրներից մեկը, նպատակ ունենալով ամենակարճ ժամանակում ստեղծել գյուղատնտեսական մթերքների առատություն, որպեսզի երկրի արդյունաբերությունը լիովին ապահովվի հումքով, իսկ բնակչությունը՝ սննդամթերքով:

«Հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— բազմակողմանիորեն զարգացած ու բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է»: Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը ՍՄԿՊ XXII համագումարից հետո, ամբողջ ժողովրդի ակտիվ մասնակցությամբ, ձեռնամուխ եղան մի շարք կարևոր հարցերի լուծման, որոնք վճռական նշանակություն ունեն կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան առաջ մղելու գործում:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Մարտյան պլենումը քննարկելով գյուղատնտեսության ղեկավարման հարցերը, նշեց, որ այդ բնագավառում եղած շատ թերություններ հետևանք են այն բանի, որ չի եղել նրա արտադրությունը կառավարելու հստակ, լավ գործուն սիստեմ: Պլենումը անհրաժեշտ գտավ վերակազմել գյուղատնտեսության ղեկավարման ձևերը շրջաններում, մարզերում, երկրամասերում և միութենական ռեսպուբլիկաներում՝ ստեղծել գյուղատնտեսական արտադրության ղեկավարման տերիտորիալ արտադրական վարչություններ ու կոմիտեներ, որոնք ավելի գործնական և լավ կկազմակերպեն կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրությունը:

Ինչո՞ւ պարտիան դիմեց այդ միջոցին: Որովհետև «...ղեկավարման հին կազմակերպական ձևերն,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— արդեն չէին համապատասխանում գյուղատնտեսության զարգացման կենսական շահերին, ո՛չ միայն չէին նպաստում նրա վերելքին, այլև կասեցնող գործոն էին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ասպարեզում»: Նոր, փոխված պայմաններում, երբ ավելի մեծ ու կարևոր հարցեր են կանգնած գյուղատնտեսության առջև, ղեկավարման հին կազմակերպական ձևերն ու մեթոդները արդեն չէին համապատասխանում ծագած նոր խնդիրներին: Հարկավոր էր գյուղատնտեսության ղեկավարման հիմքում դնել արտադրական սկզբունքը: Գյուղատնտեսության ղեկավարման նոր օրգանների բնորոշ գիծն այն է, որ դրանք ստեղծված են բացառապես կոլտնտեսային ու սովխոզային արտադրությունը ղեկավարելու համար:

Վերակառուցելով գյուղատնտեսական օրգանները, պարտիան միաժամա-

նակ աշխատեց տերիտորիալ-արտադրական վարչությունները կոմպլեկտավորել լավագույն, գործիմաց ու ձեռներեց մասնագիտական կադրերով և կազմակերպչական տաղանդ ունեցող հմուտ ընկերներով: Չէ՛ որ վարչության պետը, պարտկազմակերպիչը, կոմերիտական կազմակերպիչը, տեսուչ-կազմակերպիչները, պարտհրահանգիչներն այն կադրերն են, որոնք կոչված են գործնական օգնություն ցույց տալու կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներին, պարտիական ու կոմերիտական կազմակերպություններին՝ գյուղատնտեսությունը զարգացնելու գործում: Նրանք գիտակցում են, որ գտնվում են գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար մղվող պայքարի առաջավոր գծում, որը վստահել է նրանց պարտիան և ամեն կերպ ձգտում են արդարացնելու այդ վստահությունը:

Գյուղատնտեսության ղեկավարման նոր օրգանները, ընթանալով պարտիայի Կենտկոմի Մարտյան պլենումի նշած ուղիով, վերանայում են ցանքերի խոտադաշտային սիստեմը և տեղի պայմաններին համապատասխան կրճատում միամյա ու բազմամյա խոտերի ցանքատարածությունները, դրանց փոխարեն ընդարձակում եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, ոլոռի, լոբազգի կուլտուրաների ցանքատարածությունները, որոնք կերի կայուն բազա են հանդիսանում: Նրանք ջանում են խելացի օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան, այն ի սպաս դնել արտադրության բարձրացման գործին:

Պարտիական ու կոմերիտական կազմակերպիչները և նրանց հրահանգիչները ձգտում են ըստ արտադրության նյութերի ճիշտ տեղաբաշխել կոմունիստներին ու կոմերիտականներին, նրանց ուղարկել աշխատանքի վճռական տեղամասերը՝ գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու պայքարին ակտիվ մասնակցելու համար:

Երկրի գյուղատնտեսության ղեկավարման նոր ձևերն իրենց առավելությունները արդեն ցույց են տալիս հնի նկատմամբ: Արագ թափով առաջ են գնում ամռան գյուղատնտեսական աշխատանքները: Սովետական մարդկանց մեծ ուրախություն են պատճառում հաղորդագրությունները հանրային գյուղատնտեսության մեջ աշխատողների հաջողությունների մասին: Այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, ՍՍՌՄ-ում 14,7 միլիոն հեկտարով ավելի գարնանացան է կատարվել: Եգիպտացորենի ցանքերի տարածությունն ընդարձակվել է 11 միլիոն հեկտարով. 2 միլիոն 500 հազար հեկտարով ավելացել է ոլոռի ցանքատարածությունը: Մինչև հունիսի քսանը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելի են մթերվել անասուն՝ 313 հազար տոննա, կաթ՝ 831 հազար տոննա, բուրդ՝ 12 հազար տոննա, ձու՝ մոտ 700 միլիոն հատ: Այս տարվա հունիսի մեկի տվյալներով (անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ), կոլտնտեսություններում և սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 5,6 միլիոնով, խոզերինը՝ մոտ 4,4 միլիոնով, ոչխարներինը՝ 2,218 հազարով:

Գյուղատնտեսական, մասնավորապես անասնաբուծական մթերքները որոշ չափով ավելացել են նաև մեր ռեսպուբլիկայում: Կոլտնտեսություններում ու սովխոզներում մեծ ջանքեր են ներդրվում հասկավոր կուլտուրաների բերքահավաքը սեղմ ժամկետում կատարելու, անհրաժեշտ քանակությամբ կեր հավաքելու, տեխնիկական կուլտուրաները խնամքով մշակելու, անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու համար: 1962 թվականի առաջին կիսամյակում, 1961 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատու-



թյամբ, ավելի է գնվել՝ կաթ մոտ քառասուն հազար ցենտներ, ձու՝ ավելի քան 1,3 միլիոն հատ: Ալավերդու արտադրական-տերիտորիալ վարչության կոլտնտեսություններում ու սովխոզներում մսի գնման կիսամյա առաջադրանքը կատարված է 164 տոկոսով, Ախուրյանի վարչությունում՝ 113, Կիրովականի վարչությունում՝ 100 տոկոսով:

Կարելի է թվել բազմաթիվ կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնց ղեկավարները, պարտիական և կոմերիտական կազմակերպությունները հմտորեն վարելով տնտեսությունը և գլխավորելով մասսաների արտադրական նախաձեռնությունը, լավագույն ցուցանիշներ են ձեռք բերել թե՛ բուսաբուծության, թե՛ անասնաբուծության բնագավառներում:

Կիրովականի արտադրական վարչության Նալբանդ գյուղի սովխոզն անցյալում իր արտադրական ցուցանիշներով նախանձելի տեղ չէր գրավում Սպիտակի շրջանում: Բայց երբ տնտեսության ղեկավարման գլուխ կանգնեցին բանիմաց մարդիկ, երբ կոմունիստներն ու կոմերիտականները պետական առաջադրանքների կատարման համար պայքարը համարեցին իրենց սրբազան պարտքը, իրերի վիճակը փոխվեց դեպի լավը: Չնայած անցյալ տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմաններին, սովխոզի կոմունիստները, ամբողջ կոլեկտիվը գործադրելով իրենց եռանդուն ջանքերը, անասունների համար ստեղծեցին կերի կայուն բազա, գիտակցելով, որ եթե կա կեր, ապա կա միս, կաթ և բուրդ:

Նալբանդի սովխոզում անասնաբուծության զարգացումը լավ կազմակերպելու շնորհիվ կոլեկտիվը հասել է լավագույն ցուցանիշների: Այս տարվա հուլիսի մեկի դրությամբ (անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ) խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 166-ով, այդ թվում կովերինը՝ 16-ով. զգալիորեն աճել է նաև մանր եղջերավոր անասունների հոտը: Անասունների գլխաքանակը սովխոզում ավելացել է միայն սեփական հոտի վերարտադրության և անկումները մինիմումի հասցնելու հաշվին: Այսպես, եթե անցյալ տարի առաջին կիսամյակում 210 կովից ստացվել է 141 հորթ, ապա այս տարի՝ 226 կովից ստացվել է 191 հորթ, կամ միջին հաշվով յուրաքանչյուր 100 կովից ստացվել ու պահպանվել է 89 հորթ, նախատեսված 82-ի դիմաց: Արհեստական սերմնավորման շնորհիվ տարվա սկզբին ծնած կովերը տարվա վերջին նոր սերունդ կտան: Սովխոզում ինչպես մսուրային, այնպես էլ արոտային շրջանում լավ հիմքերի վրա է դրված անասունների բտումը, որի շնորհիվ մսամթերման հանձնված յուրաքանչյուր խոշոր եղջերավոր անասունի միջին քաշը հասնում է 260 կիլոգրամի, իսկ խոզինը՝ 102 կիլոգրամի: Այստեղ տարվա առաջին վեց ամիսներին կաթի արտադրության պլանը կատարվել է 181, մսինը՝ 156, բրդինը՝ 131 տոկոսով, միջին հաշվով յուրաքանչյուր կովի կաթնատվությունն ավելացել է ավելի քան 122 կիլոգրամով:

Նալբանդ գյուղի սովխոզը մեր ռեսպուբլիկայում եզակի չէ: Կարելի է թվել և շատ ուրիշ կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնց աշխատողները ակտիվ պայքարի են ելել լրիվ օգտագործելու բոլոր ռեզերվները, ավելի քիչ աշխատանքային ու նյութական ծախսումով առավելագույն քանակությամբ բերք ու անասնաբուծական մթերքներ ստանալու համար:

Այս ամենը գյուղատնտեսության ղեկավարումը վերակազմելու միջոցառման նախնական արդյունքներն են: Չնայած նրան, որ պարտիայի ու կառավարության ձեռնարկումների շնորհիվ Սովետական Միության գյուղատնտեսու-

թյունը ապրում է վերելք, բայց նրա աճման տեմպը անբավարար է, դեռևս հնարավոր չէ լիովին բավարարել բնակչության պահանջմունքները. գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակը ետ է մնում երկրի պահանջմունքներից:

Որպեսզի օր-օրի ամրապնդվեն, աճեն ու բազմապատկվեն գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունները, առատության եղջյուրից անընդհատ բարիքներ հոսեն, անհրաժեշտ է լիովին իրագործել Կենտկոմի Մարտյան պլենումի առաջադրանքները: Հենց այս նպատակին էլ ծառայելու են գյուղատնտեսության ղեկավարման նոր օրգանները: Նրանք ստեղծված են տեղերում կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրությունը բարձրացնելու գործին կոնկրետ օգնելու համար:

Գյուղատնտեսական արտադրության ղեկավարումը պետք է իրագործվի ո՛չ թե դիրեկտիվներով ու հրամանագրերով, այլ յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում կազմակերպական աշխատանքի միջոցով: Արտադրական վարչությունների աշխատակիցների պարտականությունն է կոլտնտեսություններում ու սովխոզներում թերություններ նկատելիս օգնել, օժանդակել տեղի ընկերներին՝ վերացնելու դրանք, ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և ոչ թե այդ թերությունների մասին ակտեր ու արձանագրություններ կազմել:

Ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներ դեռևս խորամուխ չեն լինում արտադրության էկոնոմիկայի մեջ, անփույթ են օգտագործում հողը, գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները, շահավետ չեն վարում տնտեսությունը: Հենց այդ բանի հետևանք է, որ Արթիկի շրջկենտրոնի սովխոզը 1961 թվականի տնտեսական տարին փակեց վնասով: Եվ ոչ միայն Արթիկի սովխոզը, այլև մի շարք ուրիշ սովխոզներ գործը վատ կազմակերպելու հետևանքով անցած տնտեսական տարին փակեցին վնասով:

Այժմ, երբ անհրաժեշտ է արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման միջոցով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում լրիվ կարողությամբ չի օգտագործվում գյուղատնտեսական տեխնիկան, որոշ տեղերում էլ դրանք անխնամ են թողնված: Մոտ անցյալում Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունը գնեց «ДА—3» էլեկտրակիթ ագրեգատ: Նրա օգտագործման առաջին օրերին Շահումյանի անվան կաթնապրանքային ֆերմա հրավիրվեցին ռեսպուբլիկայի շրջանների շատ կոլտնտեսականներ, անասնաբուծական ֆերմաների վարիչներ, կոլտնտեսությունների նախագահներ և սովխոզների դիրեկտորներ՝ դիտելու, ուսումնասիրելու ագրեգատի աշխատանքը և այդ ձևով էլ իրենց մոտ կազմակերպելու կովերի կիթը: Բայց շուտով Շահումյանի անվան կոլտնտեսության էլեկտրակիթ ագրեգատը գործածությունից հանվեց և նետվեց պահեստ. հայտարարվեց, որ իբր թե վակուումները լրիվ չեն:

Պարտիան միշտ հիշեցնում է, որ անասնաբուծության զարգացման հիմնական լծակը կերի կայուն բազայի ստեղծումն է: Սակայն շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ խիստ թերանում են այս գործում և չեն աշխատում անհրաժեշտ քանակությամբ կեր կուտակել, որպեսզի անասունները ձմեռային շրջանում ապահովված լինեն կերով: Գործը պետք է այնպես կազմակեր-



պել, որ ամեն մի կոլտնտեսությունում ու սովխոզում հաշվեն, թե տնտեսությունը վարելահողի մեկ հեկտարից որքան կերամիավոր է ստանում, որ կուլտուրան է առավելագույն քանակությամբ կեր տալիս ներդրված աշխատանքի դիմաց: Միայն այդպիսի մոտեցման դեպքում կարելի կլինի ըստ արժանվույն գնահատել եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, ոլոռնի և մյուս արժեքավոր կուլտուրաների նշանակությունը, որոնք կազմում են կոլտնտեսությունների ու սովխոզների իսկական հարստությունը: Ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը, հաշվի առնելով այս տարվա բնակլիմայական նպաստավոր պայմանները, դիմեց կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, սովխոզների բանվորներին ու բանվորուհիներին մեկ ու կես տարվա կեր կուտակել: Կոլտնտեսություններում ու սովխոզներում արդեն պայքար է ծավալվել այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար:

Կոլտնտեսության նախագահը, սովխոզի դիրեկտորը պարտավոր են իմանալ թե վար ու ցանքի, այգիները մշակելու, բերքը հավաքելու, կեր կուտակելու, անասունները խնամելու համար որքան են ծախսել, որքան աշխատանք ու նյութական միջոցներ են ներդրվել ամեն մի տոննա հացահատիկի, կաթի, մսի, բրդի ու այլ մթերքների միավորի արտադրության վրա:

Կազմակերպորեն ու տնտեսապես թույլ կոլտնտեսությունները և սովխոզներն առաջավորների մակարդակին բարձրացնելու գործում վճռական է գյուղատնտեսական նոր օրգանների դերը, մանավանդ առաջիկայում ավելի են ամրապնդվելու դրանք, որոնք կոլտնտեսային ու սովխոզային արտադրության ղեկավարման գլխավոր և միակ օրգաններն են:

Հետագայում, ասում է Ն. Ս. Խրուշչովը, նպատակահարմար կլինի ընդարձակել վարչական շրջանները մոտավորապես արտադրական վարչության սահմաններում խոշորացնելու ուղիով, պահպանելով գյուղատնտեսության կառավարման արտադրական սկզբունքը: Տերիտորիալ արտադրական վարչությունների աշխատողները՝ վարչության պետը, պարտիական կազմակերպիչը, կոմերիտական կազմակերպիչը, կազմակերպիչ-տեսուչները և մյուս աշխատողներն այն հիմնական կադրերն են, որոնք կոչված են կառավարելու կոլտնտեսային ու սովխոզային արտադրությունը, նրանք պետք է իրենց դերը խաղան գյուղատնտեսական մթերքների արտադրության վերելքի գործում: Նրանց առաջնահերթ խնդիրն է՝ լինել կոլտնտեսություններում, սովխոզներում, անմիջականորեն արտադրողների մոտ և տեղում օգնել աշխատողներին ուսումնասիրելու գիտության նվաճումները և առաջավորների փորձը, այն արմատավորել արտադրության մեջ, պայքարել գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար:

Գյուղատնտեսական, մասնավորապես անասնաբուծական մթերքների արտադրության արագ ավելացմանը խթանող միջոցառումներից է վերջերս ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ մսի ու կենդանական յուղի գնման գների, ինչպես նաև մսի ու մսամթերքների և յուղի մանրածախ գների բարձրացման մասին որոշումը, որը հիմնավորված է տնտեսապես. այն բխում է մեր երկրի շահերից և նյութապես շահագրգռում է կոլտնտեսականներին և սովխոզների բանվորներին՝ լարելու իրենց ջանքերը անասնապահության զարգացումն ավելի բարձր թափով առաջ մղելու համար: «Բայց խոր մոլորություն կլիներ կարծել,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի, Մինիստրների Սովետի Դիմումում,— թե այժմ, երբ բարձրացվել են մսի գնման գները, իջեցվել են մեքենա-

ների, վառելիքի, պահեստամասերի գները, անասնապահությունը իսկույն ներշահութաբեր կդառնա և գործերն առանց հատուկ ջանքերի շեշտակի վերելք կապրեն... հույսը դնել միայն գնման բարձր գների վրա, նշանակում է մոռանալ արտադրության մյուս վճռական գործոնները, կորցնել գյուղատնտեսության զարգացման հեռանկարը»: Ինչպես ընդհանուր առմամբ գյուղատնտեսության զարգացման հետագա շեշտակի վերելքը, այնպես էլ անասնաբուծության զարգացումը պահանջում են խելացի օգտագործել բոլոր ռեզերվները, մեքենայացնել արտադրության աշխատատար պրոցեսները, ստեղծել կերի կայուն բազա, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը:

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը խորհուրդ են տալիս կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներին՝ մշակել մսի, կաթի և անասնապահական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու կոնկրետ պլան, հաշվի առնելով ներկայումս ստեղծված նոր հնարավորությունները: Այդ նշանակում է, որ կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները, արտադրական վարչությունների աշխատակիցներն, պարտիական և կոմերիտական կազմակերպությունների, կոլտնտեսականների և սովխոզների բանվորների հետ պետք է խորամուխ լինեն տնտեսության հնարավորություններին, նախատեսեն, թե ի՞նչ պետք է արվի ընթացիկ տարվա երկրորդ կիսամյակում, եկող տարում գրավելու մսի արտադրության առաջին բնագիծը, այն է՝ 100 հեկտար վարելահողի դիմաց արտադրել 75 ցենտներ և 100 հեկտար մյուս հողատարածությունների դիմաց՝ 16 ցենտներ միս: Իսկ այն տնտեսությունները, որոնք արդեն հասել են այդ մակարդակին, պետք է առաջ գնան դեպի երկրորդ և երրորդ էտապները՝ 100 հեկտար վարելահողի դիմաց արտադրեն 100 և 150 ցենտներ միս:

Սովետական Միության գյուղատնտեսության հետագա զարգացումը կոմունիզմի կառուցման կարևորագույն բնագիծն է, որ մեր երկիրը պետք է գրավի ամբողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի ուժերով, սովետական կարգի ամբողջ հզորությամբ:

Պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծվել են լայն հնարավորություններ, որպեսզի գյուղատնտեսությունն առաջ ընթանա արագ թափով, ճիշտ ուղիով: Սովետական ժողովրդի, առաջին հերթին գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողների մարտական խնդիրն է՝ ճշտությամբ կենսագործել այդ միջոցառումները, որպեսզի հենց այս տարի, այնպես էլ առաջիկայում վճռական գործ կատարվի շեշտակիորեն ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Այս է պարտիայի և ողջ ժողովրդի առաջնակարգ խնդիրը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՊՐՈԳՐԵՍԻ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆ Է

### Բ. ՄՆՋՐԱԲՅԱՆ

Իրենց զարգացման ընթացքում ժողովուրդներն անցել են մեծ և անհարթ մի ճանապարհ: Մարդկության առաջընթացը չի եղել առանց խոչընդոտների: Հասարակական պատմության յուրաքանչյուր նոր աստիճանի նվաճումը ժողովուրդներից զգալի ջանքեր է պահանջել: Սակայն հասարակական առաջընթացն անկասելի է եղել: Այդ են վկայում հին աշխարհի հոյակապ բուրգերը, անտիկ արվեստի հրաշալի հուշարձանները, վերածնության գլուխգործոցները, միջնադարի մռայլ ամրոցների կործանման ժամանակաշրջանի ազատամտությունը: Բայց դրա ամենամեծ ու համոզիչ ապացույցը մարդկության համաշխարհային քաղաքակրթության հիմնական մայրուղու շրջադարձային կետին հասնելն է, երբ առաջ եկավ մարքսիստական աշխարհայացքը և սկսվեց պրոլետարիատի ռևոլյուցիոն բարեփոխիչ գործունեությունը: Ռևոլյուցիոն աշխարհայացքով զինված պրոլետարիատը երկրագնդի մի զգալի մասը ո՛չ միայն հասցրեց կոմունիզմի նախադռանը, այլև դաժան փորձությունների ժամին, երբ աշխարհի վրա կախվեց ոչնչացման սպառնալիքը, հնչեցրեց ջերմամիջուկային պատերազմի կանխման հնարավորության և անհրաժեշտության, համաշխարհային հակադիր սիստեմների խաղաղ գոյակցության ապահովման մարտական կոչը՝ հանուն հասարակական առաջադիմության: Իսկ հասարակական առաջադիմությունը դա բնության և հասարակական կյանքի կործանարար կույր ուժերի տիրապետությունից մարդկության ազատագրման օբյեկտիվ պրոցեսն է և մարդու վերածումը բնության տիրակալի:

***

Այսօր, պատմության որոշակի սահմաններում, հասարակության առաջադիմության ուղին ընկած է մի խումբ երկրներում առաջ եկող հասարական կառուցվածքի նոր և, մյուս երկրներում, իր դարն ապրող հին սիստեմների գոյակցության միջով: Ինչպես պատմական բոլոր նախորդ ժամանակաշրջաններում, այնպես էլ մեր օրերում, մարդկային հասարակության զարգացումը տեղի է ունենում մի կողմից նոր, վերընթաց և, մյուս կողմից, անկում ապրող, հնացած հասարակական-տնտեսական կացութաձևերի գոյակցության միջոցով: Սակայն սոցիալիզմի և կապիտալիզմի գոյակցության բնույթն ու նշանակությունը արմատապես տարբերվում են գոյակցության նախորդ տիպերից:

Տարբերությունը, նախ և առաջ, նրանում է, որ ներկայումս գոյություն ունեն իրենց տնտեսական բնույթով և դասակարգային բովանդակությամբ ո՛չ միայն տարբեր, այլև հակադիր հասարակական սիստեմներ։ Երկրորդ. ներկա ժամանակաշրջանում՝ գոյակցության նոր տիպի պայմաններում, հասարակական առաջադիմության կրողը անտագոնիստական հակասություններից ազատ սոցիալիստական կարգն է։ Այն ընդունակ է ո՛չ միայն ապահովելու հասարակական կյանքի չտեսնված ինտենսիվ զարգացումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի սահմաններում, այլև կարող է միջազգային մասշտաբով սահմանափակել իմպերիալիզմի օրենքների կործանարար ներգործությունը, մասնավորապես կանխել համաշխարհային պատերազմը, բացառել պատերազմը հասարակության կյանքից։

Այս բանը սկզբունքային նշանակություն ունի ամբողջ մարդկության պատմական ճակատագրի համար, քանի որ համաշխարհային պատերազմը ջերմամիջուկային զենքի կիրառմամբ կնշանակի, ինչպես պրոֆեսոր Ջոն Բեռնալն է ասում՝ «Քաղաքակրթության զարգացման կասեցում հարյուրավոր, և գուցե նաև հազարավոր տարիներ»։ Միջուկային ռումբերի առկայության պայմաններում, ռումբեր, որոնցից յուրաքանչյուրի ավերիչ ուժը շատ անգամ է գերազանցում երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ օգտագործված բոլոր ռումբերի ուժը միասին վերցրած, ոչ մի սոցիալական ուժ, զանգվածների շահերն արտահայտող ոչ մի քաղաքական պարտիա և ոչ մի ողջամիտ քաղաքական գործիչ չեն կարող ջերմամիջուկային պատերազմի կանխման խնդիրն իրենց գլխավոր հոգսի առարկան չդարձնել։

Ահա թե ինչու կոմունիստները, ստեղծագործ, աշխարհը վերափոխող և նորացնող ամենամեծ ուժը, որոնք թեպետև համոզված են, որ համաշխարհային նոր պատերազմն անխուսափելիորեն կհասցնի կապիտալի տիրապետության լիակատար կործանման, իրենց վերջնական նպատակին հասնելու համար, հնարավոր չեն համարում գնալ ջերմամիջուկային պատերազմի ուղիով։ Ընդհակառակը, կենսականորեն շահագրգռված լինելով հասարակական կյանքի վերընթաց զարգացմամբ, կոմունիստները և, ամենից առաջ, համաշխարհային կոմունիստական շարժման դրոշակակիրը՝ ՍՄԿՊ-ն արիաբար ու վճռականորեն գլխավորում են մեր ժամանակների հակապատերազմական շարժումը, խաղաղ գոյակցության համար մղվող շարժումը, որը հասարակական առաջադիմության պայմանն է։

Սակայն ո՛չ միայն պատերազմը, այլև նրա նախապատրաստությունը խանգարում է հասարակական առաջադիմությանը։ Այդ նախապատրաստությունը ժամանակակից մարդկության եռանդի զգալի մասի աննպատակ վատնում է նշանակում։ Բավական է հիշել, որ ամբողջ աշխարհում ռազմական նպատակների համար կատարվող տարեկան միջին ծախսերի ընդհանուր գումարը կազմում է 120 միլիարդ դոլար։ Իսկ ԱՄՆ-ում շարունակում են ավելացնել ռազմական հատկացումները։ Պաշտոնական վիճակագրության տվյալներով 1960 թվականին այդ հատկացումները հասան նրա բյուջեի 61,5 տոկոսին։ 1962—63 ֆինանսական տարում, որն սկսվել է 1962 թվականի հուլիսի 1-ից, նախատեսված էր ԱՄՆ-ի սպառազինության ծախսերը հասցնել 53,7 միլիարդ դոլարի, որոնք կլինեն երկրի պատմության մեջ ամենաբարձր հատկացումները։ Համեմատության համար բավական է հիշեցնել, որ երկրորդ համաշ-



խարհային պատերազմի ժամանակ ամերիկյան ռազմական ծախսերը միջին հաշվով տարեկան կազմեցին 49,8 միլիարդ դոլար։

Ռազմական հատկացումներն անզուսպ կերպով աճում են ո՛չ միայն ԱՄՆ-ում, այլև ամերիկյան իմպերիալիզմի ռազմակառքին լծված բոլոր երկրներում։ Եթե 1949 թվականին ՆԱՏՕ-ի երկրների ռազմական ծախսերը կազմում էին մոտ 18 միլիարդ դոլար, ապա 1960 թվականին այդ թիվն անցավ 62 միլիարդ դոլարից։ Ընդ որում, վերջին տարիներին արևմտաեվրոպական ռազմական խրախճանքում հատկապես աչքի է ընկնում Արևմտյան Գերմանիայի ֆինանսական օլիգարխիան։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանում ԳՖՌ-ի կառավարող շրջանները ռազմական կարիքների համար մսխել են ավելի քան 113 միլիարդ մարկ։ 1962 թվականի մարտին Բունդեստագի ընդունած բյուջեում ընթացիկ տարվա ռազմական հատկացումները նախատեսված են 16 միլիարդ մարկ (մոտավորապես 4 միլիարդ մարկով ավելի, քան 1961 թվականին)։

Այս տվյալները կասկածի տեղ չեն թողնում այն բանում, որ ռազմական արտադրությունը, այսինքն՝ հսկայական ուժի և միջոցների անարտադրողական վատնումը, իմպերիալիստական տերությունների ազգային էկոնոմիկայում ավելի ու ավելի նկատելիորեն է վերածվում, եթե չասենք վճռական, ապա գոնե կարևորագույն գործոններից մեկի։ Կապիտալի բնույթը պայմանավորում է նրա շահագրգռվածությունն այնպիսի արտադրության մեջ, որի նպատակը ոչնչացումն է։ Պատմականորեն իր դարն ապրած այդ հասարակական կարգը ծառայում է ոչ թե մարդկանց բարեկեցությանը, այլ՝ ոչնչացմանը։

Էկոնոմիկայի ռազմականացումն ուղեկցվում է համապատասխան տեղաշարժերով իմպերիալիզմի քաղաքականության մեջ։ Քաղաքականության ոլորտում պատերազմի նախապատրաստության պրոցեսն ուղեկցվում է ինչպես էական տեղաշարժերով իմպերիալիստական տերությունների ներքին կյանքում, այնպես էլ այդ տերությունների կառավարող շրջանների՝ ամբողջ աշխարհում սոցիալական զարգացումը կասեցնելու ձգտումով։

Միլիտարիզմն ու պատերազմի նախապատրաստությունն արագացրին մոնոպոլիստական կապիտալիզմի վերածումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի, որը մոնոպոլիաների ունեցած ուժը պետական ուժի հետ միասին միավորում է մեկ միասնական մեխանիզմի մեջ, այն օգտագործելով բանվորական շարժումը ճնշելու, կապիտալիստական կարգը փրկելու, մոնոպոլիաները հարստացնելու, ագրեսիվ պատերազմներ սանձազերծելու նպատակով։

Գլխավոր մոնոպոլիաների կամքը մյուս երկրներին, և առաջին հերթին սոցիալիստական լագերի երկրներին, պարտադրելու փորձերը, որոնք կատարվում են ագրեսիվ պատերազմների կամ դրանց նախապատրաստության միջոցով (այսպես կոչված, «ուժի դիրքերից» ելնող քաղաքականություն), կազմում է իմպերիալիզմի և, առաջին հերթին, միջազգային ռեակցիայի գլխավոր պատվար ԱՄՆ-ի մոնոպոլիստական բուրժուազիայի միջազգային քաղաքականության բովանդակությունը։ Անարտադրողական ու մարդկության համար վտանգավոր ռազմա-արդյունաբերական արտադրության և «ուժի դիրքերից» ելնող ռեակցիոն քաղաքականության իրականացումն իր արդարացումն է գտնում ժամանակակից մոնոպոլիստական կապիտալիզմի գաղափարախոսության մեջ։ Այն ծառայում է իր մայրամուտն ապրող իմպերիալիզմին։ Ժամանակակից կապիտալիզմի գաղափարախոսությունը կոչված է անելու

այն, ինչ չի հաջողվում մոնոպոլիստական բուրժուազիային, նույնիսկ միջուկային զենքի միջոցով՝ խույս տալ պատմական զարգացման անկասելի ընթացքից։

Իմպերիալիզմի գլխավոր գաղափարական-քաղաքական զենքը հակակոմունիզմն է, որի հիմնական բովանդակությունը սոցիալիստական կարգի զրպարտումն է, կոմունիստական պարտիաների քաղաքականության և նպատակների, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի կեղծումը։ Հակակոմունիզմի անվան տակ իմպերիալիստական ռեակցիան հետապնդում և հալածում է այն ամենը, ինչ առաջավոր ու ռևոլյուցիոն է, ձգտում է պառակտել աշխատավորների շարքերը, ջլատել պրոլետարների պայքարի ոգին։ Ներկայումս այդ սև դրոշի տակ միավորվել են սոցիալական առաջադիմության բոլոր թշնամիները, որոնք ճըգնում են խանգարել բնա-պատմական պրոցեսին։ Այդ միավորումը պայմանավորված է միջազգային հարաբերություններում իմպերիալիզմի երբեմնի իշխող դերը վերականգնելու, աշխարհի վրայով անցնող և մարդկության գարունը նշանավորող մեծ ու բարեբեր ամպրոպի տարածումը կանխելու ձգտմամբ։



Իմպերիալիզմի ռեակցիոն ու ագրեսիվ քաղաքականությանը հակադրելով երկու սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, կոմունիստները դրանում տեսնում են ո՛չ միայն հասարակական առաջադիմության նախապայմանը, այլև միջազգային ասպարեզում կապիտալիզմի դեմ սոցիալիզմի մղած դասակարգային պայքարի յուրահատուկ ձևը։ ՍՄԿՊ XX համագումարից հետո մեր պարտիան իր փաստաթղթերում և ղեկավարների ելույթներում բազմիցս ընդգծել է, որ խաղաղ գոյակցությունը սոցիալիզմի անընդհատ աճող քաղաքական, տնտեսական ու գաղափարական պայքարն է կապիտալիզմի դեմ, պայքար, որը բացառում է համաշխարհային հակադիր սիստեմների զինված ընդհարումը, համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը։

Խաղաղ գոյակցությունը, սակայն, չի նշանակում և չի էլ կարող նշանակել անտագոնիստական հասարակական-տնտեսական կացութաձևերի պայքարի դադարեցում։ Պայքարը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև անխուսափելի է և կշարունակվի մինչև կոմունիստական կացութաձևի լիակատար հաղթանակն ամբողջ աշխարհում։ Կոմունիզմի հաղթանակը համաշխարհային մասշտաբով կգա, բայց ոչ բոլորովին պատերազմի՝ զինված ընդհարման միջոցով։ Ժխտելով այս հանգամանքը, ՍՍՌՄ-ը և սոցիալիզմի մյուս երկրները վճռականորեն մերժում են պատերազմի՝ որպես միջազգային մասշտաբով սոցիալիզմի ու կապիտալիզմի պատմական վեճի լուծման միջոցի անխուսափելիության մասին Արևմուտքում եղած պատկերացումները։

Միջազգային ասպարեզում կապիտալիզմի դեմ սոցիալիզմի դասակարգային պայքարի բազմազան ձևի բովանդակությունը կազմում են սոցիալիզմի ջանքերը, որոնք զարգանում են երկու ուղղություններով. մի կողմից՝ իմպերիալիզմի քաղաքականության մեջ ագրեսիվ միտումների, դրանց կոնկրետ դրսևորումների մերկացում և ագրեսիայի կանխում, մյուս կողմից՝ միջազգային լայն համագործակցության ապահովում հօգուտ խաղաղության և հասարակական առաջադիմության։

Կոմունիստները երբեք չեն կասկածել և չեն կասկածում, որ ագրեսիվ



ուժերին միայն պայքարի միջոցով կարելի է խաղաղություն հակադրել։ Դրա համար էլ ամեն անգամ, երբ Արևմուտքի կառավարող շրջանների ջանքերով միջազգային լարվածություն է առաջանում, կոմունիստները ո՛չ միայն մերկացնում և դատապարտում են իմպերիալիստական տերությունների կոնկրետ գործողությունների ագրեսիվ էությունը, այլև վճռական դիմադրություն են կազմակերպում պատերազմի հրձիգներին։

Ինչպես Ջենովայի 1922 թվականի կոնֆերանսում, Ազգերի Լիգայի նախապատրաստական հանձնաժողովի աշխատանքում՝ 1927 թվականին և նրանից հետո մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը, իսկ հետպատերազմյան շրջանում՝ նաև ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի սեսիաներում, զինաթափման զանազան կոմիտեների և ենթահանձնաժողովների նիստերում, այնպես էլ այսօր Ժնևում, 18-ի կոմիտեի զինաթափման բանակցություններում Սովետական Միությունը եռանդով ու անզիջում մերկացնում է արևմտյան տերությունների մեքենայությունները զինաթափման իրականացման դեմ։ Սովետական կողմը ցույց է տալիս, որ արևմտյան տերությունների ջանքերը, ինչպես այդ երևում է 18-ի կոմիտեի բանակցությունների ընթացքից, 1962 թվականի ապրիլի 10-ի անգլո-ամերիկյան համատեղ հայտարարությունից և ամերիկյան «Ամբողջ աշխարհում խաղաղության պայմաններում ընդհանուր և լրիվ զինաթափման հիմնական դրույթների սխեմա» կոչվող փաստաթղթից, հանգում են սոցիալիստական երկրներին վերահսկողության այնպիսի սիստեմ պարտադրելուն, որն ապահովի լրտեսությունը ՍՍՌՄ-ի տերիտորիայում։ Միաժամանակ նրանք ցանկանում են այնպիսի որոշում ընդունել տալ, որը նրանց հնարավորություն ընձեռի մոտենալ ու ծանոթանալ միջմայրցամաքային և գլոբալ հրթիռներին՝ Սովետական Միության պաշտպանության և ագրեսորին հատուցելու ամենահզոր միջոցներին, որպիսիք ԱՄՆ-ը չունի։ Ընդ որում, ոչ ԱՄՆ-ը և ոչ էլ նրա դաշնակիցները չեն հիշատակում ուրիշի տերիտորիաներում, այդ թվում՝ Սովետական Միությանը և սոցիալիստական մյուս երկրներին հարող շրջաններում, ամերիկյան բազաների ճյուղավորված ցանցի լիկվիդացման մասին։

Այլ կերպ ասած, ԱՄՆ-ի դիրքը չի վկայում ո՛չ ընդհանուր և լրիվ զինաթափման վերաբերյալ անհապաղ պայմանագիր կնքելու և ոչ էլ, առավել ևս, այդ զինաթափումն իրագործելու ձգտման մասին։ Ընդհակառակը։ Առավելագույն վերահսկողություն-լրտեսություն և նվազագույն զինաթափում, ՍՍՌՄ-ի պաշտպանական հզորության քայքայում և ՆԱՏՕ-ի ռազմական ամուր բռունցքի պահպանում — ահա ԱՄՆ-ի կառավարող շրջանների քրեդոն։

Ղեկավարվելով վիճելի հարցերը բանակցությունների և փոխադարձ զիջումների ճանապարհով կարգավորելու մեթոդը լայնորեն կիրառելու անհրաժեշտության վերաբերյալ լենինյան ցուցումներով, Սովետական պետությունը ձգտում է համագործակցության հասնել բոլոր այն ուժերի ու երկրների հետ, որոնք պատրաստ են այդ բանին։ Կենսագործելով «պետությունների միջև վստահություն հաստատելու համար» պայքարի անհրաժեշտության մասին ՍՄԿՊ XX համագումարի որոշումը և ՍՄԿՊ XXII համագումարի այն պահանջը, թե հարկավոր է ամեն ինչ անել, «որպեսզի պահպանվի և ամրապնդվի խաղաղությունն ու բարեկամությունը ժողովուրդների միջև հանուն սոցիալական առաջադիմության բարձր իդեալների հաղթանակի», Սովետական պետությու-

նը գործում է երկու սիստեմների միջև փոխադարձ վստահությունն ու համագործակցությունն ապահովելու ուղղությամբ։

Այդ բանի վկայությունն է կապիտալիստական երկրների հետ Սովետական պետության փոխհարաբերությունների քառասունհինգամյա պատմությունը։

Հանդես գալով միջազգային խիստ վերահսկողության տակ ընդհանուր և լրիվ զինաթափման վերաբերյալ պայմանագրի նախագծով, որի մեջ, գրեթե մաթեմատիկական ճշտությամբ, որոշակիորեն շարադրված է զինաթափման ամբողջ պրոցեսը՝ ընդհուպ մինչև բոլոր զինվորական հաստատությունների՝ գլխավոր շտաբներից մինչև զինվորական կոմիսարիատների, պետությունների ողջ զինվորական ապարատի վերացումը, Սովետական կառավարությունը միաժամանակ հայտարարեց հանդիպակաց գործարար առաջարկությունները քննարկելու իր պատրաստակամության մասին։ Իսկ երբ 8 չեզոք երկրները հանդես եկան միջուկային փորձարկումների դադարեցման վերաբերյալ իրենց կոմպրոմիսային առաջարկություններով, Սովետական Միությունը ողջունեց այդ նախաձեռնությունը և համաձայնեց այդ պլանն ընդունել որպես հիմք՝ բոլոր միջուկային փորձարկումները դադարեցնելու վերաբերյալ պայմանավորվածության հասնելու համար։

Ամերիկյան հրատարակիչ Հ. Կոուլսի հետ ունեցած զրույցի ժամանակ Ն. Ս. Խրուշչովը, նշելով ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի միջև համագործակցությունն ապահովելու ռեալ հնարավորությունների առկայության մասին, ասաց. «Մեր շահերն անմիջականորեն ոչ մի տեղ չեն ընդհարվում՝ ոչ տերիտորիալ հարցում, ոչ էկոնոմիկայի ասպարեզում։ Ե՛վ Սովետական Միությունը և՛ Միացյալ Նահանգները բնական պաշարներով հիանալի ապահովված բազմամիլիոն բնակչություն, զարգացած արդյունաբերություն և գիտություն ունեցող երկրներ են։ Եվ, թվում է, որ մենք կարող ենք լիովին գոյակցել»։

Պայքարելով հանուն երկու համաշխարհային սիստեմների երկրների համագործակցության, Սովետական Միությունը վճռականորեն ձգտում է, որպեսզի հաղթանակեն խաղաղության, ժողովուրդների իրավահավասարության, ինքնորոշման, բոլոր երկրների անկախության և ինքնուրույնության հարգման սկզբունքները, որոնք ծառայելու են գլխավոր խնդրին՝ ջերմամիջուկային պատերազմի կանխմանը։ Իսկ այդ սովետական կառավարության խոր համոզմամբ, «ի վիճակի է իրականացնել մարդկանց ներկայիս սերունդը», դրանով իսկ նպաստելով հասարակական առաջադիմությանը, ժամանակակից մարդկության վերընթաց զարգացմանը։

Միջազգային ասպարեզում կապիտալիզմի դեմ սոցիալիզմի մղած դասակարգային պայքարի տնտեսական ձևի բովանդակությունը երկու սիստեմների մրցությունն է նյութական արժեքների ստեղծման բնագավառում։ Կոմունիստները պարզ տեսնում են, որ, նախ և առաջ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի տնտեսական պոտենցիալի անշեղ աճը խաղաղության պահպանման համար մղվող պայքարի հիմնական զենքն է։ Նրանք չեն կասկածում, որ հասել է հակադիր սիստեմների պատմական մրցության այնպիսի շրջան, երբ կապիտալիզմի նկատմամբ կոմունիզմի վերջնական հաղթանակի գործոն է դառնում բնակչության զանգվածների նյութական և հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումը։

Հանդես գալով որպես կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ տնտեսական մրցության համոզված պաշտպաններ, կոմունիստները պայքարում են



հօգուտ մարդկության ճնշող մեծամասնության շահերի։ Սպառազինությունների մրցավազքի դադարեցման, ընդհանուր և լրիվ զինաթափման մեջ նրանք տեսնում են ո՛չ միայն խաղաղության ապահովման, այլև ռազմական պատրաստությունների հսկայական քուրայում ազգային հարստությունների անընդհատ վատնումին վերջ տալու արմատական ուղին։ Կոմունիստները ցանկանում են օգնել երկու միլիարդ մարդկանց, որոնք այժմ չեն ստանում աշխատունակ կյանքի համար անհրաժեշտ ամենօրյա 2700 կալորիա սնունդը, նրանք ցանկանում են հրթիռների վրա ծախսվող գումարները (յուրաքանչյուր հրթիռի արժեքը հավասար է 500 ընտանիքների համար կառուցվելիք տների արժեքին) հատկացնել բնակարանային շինարարությանը, կամ նրանց կենսամակարդակի բարձրացմանը։

Վստահ լինելով կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի խաղաղ տնտեսական մրցության հաղթանակին, կոմունիստները ձգտում են հակադիր սիստեմների պայքարի ծանրության կենտրոնը տեղափոխել ստեղծագործության ասպարեզ։ Սակայն այդ բանին դիմադրում է կապիտալը, քանի որ օրըստօրե ակնհայտ է դառնում պատմականորեն իր դարն ապրած հասարակական կառուցվածքի պարտության հեռանկարը։ Այս բանը խոստովանում են նաև ժամանակակից կապիտալիզմի ջատագովները։ Այսպես, հենց ինքը՝ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջոն Քեննեդին է ասել, որ մարդկությունը կանգնած է «պատմության մեջ շրջադարձային կետ հանդիսացող սահմանագծում... Ուժերի գերակշռությունն աշխարհում աստիճանաբար տեղափոխվում է սովետա-չինական խմբավորման կողմը...»։

Խաղաղ տնտեսական մրցությունը կոմունիստները դիտում են որպես սոցիալիզմի առավելությունների խաղաղ ցուցադրման ճանապարհով ժողովուրդների վրա ներգործելու ժամանակաշրջան։ Աշխարհի ժողովուրդների տրամադրությունների վրա սոցիալիզմի ներգործության կարևորագույն ոլորտներից մեկը թույլ զարգացած երկրներին ցույց տրվող տնտեսական օգնությունն է։ Սոցիալիզմի կողմից ցույց տրվող արագ աճող օգնությունը, որը կենտրոնացված է նախկին գաղութների տնտեսական հետամնացությունը վերացնելու առավել էֆեկտավոր և անհրաժեշտ օբյեկտներում, ինտենսիվացնում է ավելի քան մեկ միլիարդ մարդկանց ազատագրման պատմական մեծ պրոցեսն իմպերիալիզմի ո՛չ միայն քաղաքական, այլև տնտեսական կախվածությունից։

Այլ կերպ ասած, հանդիսանալով երկու համաշխարհային սիստեմների դասակարգային պայքարի յուրահատուկ ձև, նրանց տնտեսական մրցությունը նպաստում է հակաիմպերիալիստական բոլոր ուժերի պոտենցիաների ծավալմանը, գիտա-տեխնիկական ռևոլյուցիայի նվաճումների ռացիոնալ օգտագործմանը, աջակցում է մարդկային հասարակության պրոգրեսին։



Միջազգային ասպարեզում կապիտալիզմի հետ սոցիալիզմի դասակարգային պայքարի գաղափարական ձևի էությունը չի նախատեսում պայքարի դադարեցում, քանի որ դասակարգի գաղափարախոսության մեջ մարմնավորվում է դասակարգի նպատակը։ Իսկ անտագոնիստական դասակարգերի նպատակները նույնպես անտագոնիստական են։ Դրանք հնարավոր չէ հաշտեցնել,

առավել ևս՝ համատեղել։ Կոմունիզմի լիակատար և վերջնական հաղթանակի անխուսափելիության գաղափարը չի կարելի հաշտեցնել կապիտալիզմի մշտնջենականության քարոզի հետ, ինչպես նաև չի կարելի խաղաղության, հումանիզմի և ժողովուրդների եղբայրության գաղափարները հաշտեցնել բռնության ու պատերազմի ջատագովների բարբաջանքների հետ։

Ներկայումս գաղափարական սուր պայքարի առարկա է դառնում հենց խաղաղ գոյակցության գաղափարի բովանդակությունը։ Իմպերիալիզմի սոցիոլոգները, հրապարակախոսները, հասարակական ու քաղաքական գործիչները տարբեր ձևով, տարբեր քողի տակ են աղավաղում այդ հարցը։ Ոմանք խաղաղ գոյակցության սկզբունքը ներկայացնում են որպես կոմունիստական գաղափարախոսության ընդունման անհրաժեշտություն։ Ոմանք էլ ճգնում են համոզել, որ խաղաղ գոյակցության սկզբունքն իբր հանդիսանում է Արևմուտքի դեմ Սովետական Միության պայքարի ուղղությունը, որն իրականացվում է «բոլոր հնարավոր՝ օրինական և անօրինական միջոցներով, ներառյալ նաև քայքայիչ գործունեությունն ու կառավարությունների տապալումը»։ Վերջապես, Արևմուտքում քիչ չեն նաև այնպիսիները, որոնք տրտնջում են «խաղաղ գոյակցության» հասկացության բովանդակության «անորոշությունից»։

Սակայն, այժմ, ինչպես նաև բազում անգամ պատմության մեջ, սոցիալական ռեակցիոն ուժերի նպատակադրումների և ձեռք բերված արդյունքների միջև առաջանում է հսկայական անհամապատասխանություն։ Խաղաղության և զինաթափման շարժումը, համակելով միլիոնավոր մարդկանց, վերածվում է վիթխարի նյութական ուժի, որը հարաճուն ազդեցություն է գործում համաշխարհային զարգացման ընթացքի վրա։ Դրա վառ և համոզիչ վկայությունը եղավ ընդհանուր զինաթափման և խաղաղության Համաշխարհային կոնգրեսը։ Նրա Ուղերձն աշխարհի ժողովուրդներին որպես ահազանգ դեռ երկար կհնչի պայքարի կոչելով նրանց՝ հասարակության կյանքից պատերազմները վերացնելու ամենաարմատական եղանակը գտնելու, միջազգային խիստ վերահսկողության տակ ընդհանուր և լրիվ զինաթափման հասնելու համար։

Խաղաղության այդ ամենամեծ ֆորումը, մեր մոլորակի 121 երկրներից եկած 2800 մասնակիցների անունից իր Ուղերձում ընդգծեց ժողովուրդների ամրապնդվող հավատը դեպի բանականության և խաղաղության հաղթանակը։ Կոնգրեսի մասնակիցները գրում են. «...Մենք համոզված ենք, որ կարելի է կանխել այն սպառնալիքը, որին այսօր ենթարկվում է յուրաքանչյուր երկիր և յուրաքանչյուր ժողովուրդ»։

Չնայած նրան, որ սպառազինությունների մրցավազքը ուժեղացնում է լարվածությունը և անվստահությունը պետությունների միջև, իսկ լարվածությունն ու անվստահությունը պետությունների միջև արագացնում են սպառազինությունների մրցավազքը, «...մենք հաստատապես հավատում ենք,— ընդգծվում է Ուղերձում,— որ զինաթափումը ո՛չ միայն կենսականորեն անհրաժեշտ է, այլ հնարավոր։ Երեկ նա մարդկության լավագույն մտածողների երազանքն էր։ Այսօր զինաթափումը դարձել է գործնական խնդիր, որի լուծման համար պետք է պայքարի մեզանից յուրաքանչյուրը»։

Այսօր բոլոր երկրների ժողովուրդները խաղաղ գոյակցությունն ավելի ու ավելի են ընկալում իբրև մարդկության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտություն, որպես նրա՝ դեպի հասարակական պատմության բարձրագույն աստիճան ընթացող վերելք։

---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՈՒՄՆ ՈՒ ԿՈՈՊԵՐԱՑՈՒՄԸ

**Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի նախագահի առաջին տեղակալ

Ինչպես ողջ Սովետական Միության, այնպես էլ Հայկական ՍՍՌ արդյունաբերությունը զարգանում է արագ տեմպերով։ Հաջողությամբ է կենսագործվում յոթնամյա պլանը. անցած երեք տարիներում՝ 1959—1961 թվականներին, ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացել է 39 տոկոսով, յոթնամյակի կոնտրոլ թվերով նախատեսված 32 տոկոսի դիմաց։ Ընթացիկ տարվա անցած վեց ամիսներում Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները արտադրական պլանը կատարեցին 103,5 տոկոսով, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ արտադրանքի ծավալն ավելացնելով 10,2 տոկոսով։

Այլ գործոնների հետ մեկտեղ դրանում արտահայտվում է արդյունաբերության և շինարարության կառավարման նոր ձևերի (ժողովրդական տնտեսության խորհուրդների միջոցով ըստ տնտեսական ադմինիստրատիվ շրջանների, ըստ տերիտորիայի) բարերար ներգործությունը։

Մի շարք այլ առավելությունների թվում ժողովրդական տնտեսության խորհուրդները նպաստավոր պայմաններ են ստեղծում, հատկապես, արդյունաբերության կոմպլեքսային զարգացման, մասնագիտացման ու ձեռնարկությունների լայն կոոպերացման համար, որոնք հանդիսանում են արտադրության կազմակերպման տնտեսապես ամենանպատակահարմար ձևերը։ Նրանց հետագա զարգացումը պարունակում է մեր արդյունաբերության հուժկու վերելքի վիթխարի ռեզերվներ։

Ուստի արդյունաբերության մեջ կոմպլեքսային զարգացման, մասնագիտացման և կոոպերացման հարցերը եղել են և մնում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։

ՍՄԿՊ պատմական XXII համագումարի որոշումներում, պարտիայի նոր Ծրագրում հատուկ ուշադրություն է հատկացվում արդյունաբերական արտադրանքի ռացիոնալ կազմակերպման հարցերին։ «Ձեռնարկությունների մասնագիտացման և կոոպերացման զարգացումը, ինչպես նաև համասեռ ձեռնարկությունների նպատակահարմար կոմբինացումը,— նշված է ՍՄԿՊ Ծրագրում,— տեխնիկական առաջադիմության և հանրային աշխատանքի ռացիոնալ կազմակերպման կարևորագույն պայմաններից մեկն է։ Նույնատիպ արտադրանքի

արտադրությունը պետք է առավելապես կենտրոնացնել խոշոր մասնագիտացված ձեռնարկություններում, նախատեսելով դրանց առավել ռացիոնալ տեղաբաշխումը»։

Արդյունաբերական ձեռնարկությունների մասնագիտացման գործում դանդաղկոտությունն ու թերությունները արգելակում են խոշոր սերիական ու մասսայական-հոսքային արտադրության զարգացումը։ Մասնագիտացումն ու կոոպերացումը նպաստում են տեխնիկայի զարգացմանը, առաջավոր տեխնոլոգիայի և բարձր արտադրողականություն ունեցող սարքավորումների, այդ թվում և ավտոմատ սարքերի մեծ մասշտաբներով կիրառմանը։ Թույլ են տալիս առավել ռացիոնալ օգտագործել արդյունաբերական ռեսուրսները տնտեսական շրջանի սահմաններում, կրճատել փոխադրական ծախսերը։ Ստեղծվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման, որակի բարելավման և ինքնարժեքի իջեցման հնարավորություններ։

Արտադրության ու աշխատանքի արտադրողականության բարձրացման արագ տեմպերն ապահովելու նպատակով ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, վերջին տարիներս մեծ աշխատանք կատարեցին մասնագիտացման, միջճյուղային և ներճյուղային կոոպերացման, ոչ ռացիոնալ տնտեսական կապերի վերացման ուղղությամբ։

Այդ բնագավառում գործադրվող միջոցառումների շնորհիվ վերանում է ձեռնարկություններում նույնանուն ապրանքների արտադրության աննպատակահարմար կրկնությունը, կրճատվում թողարկվող արտադրանքի բազմանուն նոմենկլատուրան, բարձրանում է հիմնական արտադրանքի սերիականությունը, արդյունաբերության տարբեր ճյուղերում զարգանում է դետալային տեխնոլոգիական ու առարկայական մասնագիտացումը։ Այդ աշխատանքները զուգակցվում են արտադրության լայն մեքենայացման ու ավտոմատացման, պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման հետ։

Այժմ արդեն մասնագիտացել են Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության խորհրդի տասնյակ գործարաններ ու ֆաբրիկաներ, նոր ձեռնարկությունները կառուցվում ու ստեղծվում են այդ կարևոր սկզբունքի հիման վրա։

Գործող ձեռնարկությունների մասնագիտացման պրոցեսում, այդ ձեռնարկություններում որոշ առարկաներ արտադրությունից հանելով, նոր վայրեր փոխադրելով ստեղծվում են շատ նոր արդյունաբերական ձեռնարկություններ։

Այսպես, Երևանի էլեկտրաշարժիչների գործարանում դադարեցվել է զոդման տրանսֆորմատորների արտադրությունը և հանձնվել Լենինականում նոր կազմակերպված էլեկտրատեխնիկական գործարանին։ Երևանի գործարանն ազատելով իրեն ոչ հատուկ արտադրանքից՝ ամբողջովին մասնագիտացվեց էլեկտրաշարժիչների արտադրության մեջ, որոնց թողարկումը 1961 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, ավելացավ երկու անգամ։ Մեծ չափով ավելացավ նաև զոդման տրանսֆորմատորների արտադրությունը Լենինականի նոր ձեռնարկությունում։

Լենինականի նախկին մեխանիկական գործարանը, որն այժմ վերանվանված է դարբնոցա-մամլիչային սարքավորման գործարան, առաջներում թողարկում էր բազմատեսակ արտադրանք՝ մահճակալներ, քարամշակման և փայտամշակման հաստոցներ, մուրճավոր ջարդիչներ ու հնացած կոնստրուկցիայի



մամլիչներ, այն մասնագիտացվել է նորագույն կոնստրուկցիայի էքսցենտրիկ մամլիչներ թողարկելու ուղղությամբ և 1957 թվականի համեմատությամբ խոշոր չափով ավելացրել է մամլիչների արտադրությունը։ Քարամշակման մեքենաների արտադրությունը հանձնվել է Լենինականի նորաստեղծ «Ստրոյմաշինա» մասնագիտացված գործարանին. մահճակալներ է թողարկում մի այլ մասնագիտացված ձեռնարկություն։

Երևանի հիդրոպոմպերի գործարանը մասնագիտացվել է կենտրոնախույս և մի այլ տեսակի պոմպեր թողարկելու ուղղությամբ։ Դրա շնորհիվ 1961 թվականին աշխատանքի արտադրողականությունը, 1959 թվականի համեմատությամբ, բարձրացել է 75 տոկոսով. մեծ չափով իջել է արտադրանքի ինքնարժեքը։

Հաստոցաշինական և սարքաշինական ձեռնարկությունների, պլաստմասսայի, մետաղյա, ամրակային և այլ առարկաների արտադրության մասնագիտացումը մեծ չափով իջեցրեց արտադրանքի ինքնարժեքը, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, արտադրական տարածություններն այժմ ավելի ռացիոնալ են օգտագործվում։

Լենինի անվան Հայէլեկտրագործարանի հետագա մասնագիտացման նպատակով այդ ձեռնարկությունից հանվում են մի շարք արտադրանքներ և փոխադրվում նոր ձեռնարկություններ։ Էլեկտրական հարթուկների արտադրությունը հանձնվում է Լենինականի էլեկտրակենցաղային սարքավորման նոր գործարանին. մագնիսային ուժեղարարներինը՝ Մարալիկի մասնագիտացված գործարանին. Նախատեսվում է շարժական էլեկտրակայանների արտադրությունը ևս այլ ձեռնարկություն փոխադրել։ Այսպիսով հնարավոր կլինի Հայէլեկտրագործարանը մասնագիտացնել առավել սահմանափակ նոմենկլատուրայի խոշոր էլեկտրական մեքենաների՝ գեներատորների, սինխրոնային և ասինխրոնային շարժիչների և տրանսֆորմատորների թողարկման ուղղությամբ։

Տեղական արդյունաբերությունից ժողովրդական տնտեսության խորհրդին հանձնվեց կարի և տրիկոտաժեղենի, կոշկի, կահույքի և ժողովրդական լայն սպառման այլ ապրանքների ողջ մասսայական արտադրությունը։ Դրա շնորհիվ վերացան արդյունաբերության նշված ճյուղերի մի շարք մանր ձեռնարկություններ, որոնք վատ էին սարքավորված և կարի, տրիկոտաժի ու կոշիկի խոշոր ֆաբրիկաների համեմատությամբ թողարկում էին ավելի ցածրորակ ու բարձր ինքնարժեքով արտադրանք։

Առարկայական մասնագիտացման հետ մեկտեղ ռեսպուբլիկայում որոշակի աշխատանք է կատարվել նաև արտադրության տեխնոլոգիական ու դետալային մասնագիտացման ուղղությամբ, որի շնորհիվ կարելի է առավել արդյունավետ օգտագործել տեղադրված սարքավորումն ու զգալիորեն ավելացնել արտադրական տարածության միավորից ստացվող արտադրանքը։ Այսպես, օրինակ, ընդհանուր արդյունաբերական օգտագործման հաստոցային նորմալների ու ամրակման իրերի արտադրությունը կենտրոնացվել է Երևանի հաստոցանորմալ և մետաղեղենի գործարանում։ Դրանից առաջ շատ ձեռնարկություններ արտադրում էին այդ իրերը յուրաքանչյուրն իր համար, փոքր քանակությամբ, պրիմիտիվ եղանակով և, բնականաբար, բարձր ինքնարժեքով ու ցածր որակով։ Կենտրոնացված արտադրության կազմակերպմամբ հնարավոր եղավ ո՛չ միայն կարգավորել և ապահովել ձեռնարկությունների մատակարարումը

մետաղյա ու ամրակման իրերով, այլև ինքնարժեքի իջեցումից տարեկան տնտեսել ավելի քան 200 հազար ռուբլի։

Բուռն կերպով զարգացել են սարքաշինությունն ու հաստոցաշինությունը, խիստ աճել է պահանջը պլաստմասսայե իրերի հանդեպ. այդ իսկ պատճառով կարևոր նշանակություն ունի Էջմիածնում պլաստմասսայե իրերի պատրաստման մասնագիտացված ձեռնարկություն ստեղծելը։ Մի շարք ձեռնարկություններ ազատվեցին պլաստմասսայե դետալներ արտադրելու հոգսից, արտադրական տարածություններն ազատվեցին և տրամադրվեցին հիմնական արտադրության ընդլայնմանը։

Ձեռնարկությունների մասնագիտացումը, կենտրոնացումը և խոշոր սերիական արտադրության ստեղծումը թույլ կտան տնտեսական մեծ արդյունավետությամբ կիրառել բարձր արտադրողական տեխնիկան։ Էջմիածնի պլաստմասսաների և Երևանի ռետինա-տեխնիկական իրերի գործարաններում արմատավորվել են էլեկտրոնային-կառավարման մեքենաներ, որոնք թույլ են տալիս ավտոմատացնել ջերմային ռեժիմի պրոցեսն ու տևականությունը բոլոր հիդրավլիկական մամլիչներում, որի շնորհիվ մեծ չափով բարձրանում են աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը։

Ռեսպուբլիկայի մեքենաշինական ու սարքաշինական շատ ձեռնարկություններում թողարկվող իրերի համասեռության և նրանց բազմաքանակության շնորհիվ լայնորեն կիրառվում են կոնվեյերային ու հոսքային գծերը։

Միանգամայն պարզ է, որ արդյունաբերական ձեռնարկությունների մասնագիտացումը, հատկապես ըստ դետալային և տեխնոլոգիական հատկանիշների կատարվող մասնագիտացումը, ենթադրում է արտադրական սերտ կոոպերացում։ Առանց կոոպերացման մասնագիտացում չի կարող լինել և հակառակը. այդ երկու միջոցառումներն անխզելիորեն կապված են արդյունաբերության զարգացման, նրա տեխնիկական պրոգրեսի հետ. ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում արդյունաբերական ձեռնարկությունների ռացիոնալ, խելացի կոոպերացումը ինչպես առանձին տնտեսական շրջանների ներսում, այնպես էլ նրանց սահմաններից դուրս։

Ռեսպուբլիկայի ժողտնտխորհը զգալի աշխատանք է կատարել այդ բնագավառում. միջճյուղային արտադրական կոոպերացիայի մեջ են ընդգրկվել ավելի քան 50 ձեռնարկություններ։ Ընթացիկ տարում նախատեսվում է 1961 թվականի համեմատությամբ 1,5 անգամ ավելացնել միջճյուղային կոոպերացման մեջ ընդգրկված ձեռնարկությունների թիվը, ընդլայնել մատակարարվող իրերի նոմենկլատուրան և 3,5—4 անգամ ավելացնել կոոպերացված մատակարարումները։

Ունենալով ամրակման իրերի հզոր մասնագիտացված արտադրություն՝ Հայէլեկտրագործարանը պատրաստում և արտադրական կոոպերացման կարգով էլեկտրատեխնիկական արդյունաբերության ու սարքաշինության 13 ձեռնարկությունների մատակարարում է հեղյուսներ, գամեր, պտուտակներ և պտուտակամերներ։ Դա, անտարակույս, թեթևացնում է այն ձեռնարկությունների վիճակը, որոնք հնարավորություն չունեն բարձր արտադրողական եղանակով ամրակման իրեր արտադրել։

Երևանի գործիքաշինական գործարանը ռեսպուբլիկայի շատ ձեռնարկությունների համար պատրաստում է հատուկ գործիքներ, կաղապարներ, տեխնոլոգիական սարքեր։ Ռետինա-տեխնիկական իրերի գործարանը կոմպլեկտա-



վորող մասեր է մատակարարում ռեսպուբլիկայի արդյունաբերության բոլոր ճյուղերի ձեռնարկություններին։ Կոոպերացված մատակարարումների ասպարեզում մեծ գործ են կատարում պլաստմասսայե իրերի ու մետաղեղենի գործարանները։

Միջճյուղային արտադրական կոոպերացման մեջ են ներքաշվում նաև այլ ճյուղերի ձեռնարկություններ. փայտամշակման (փայտյա տարբեր մասեր մատակարարելու գծով), գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային (պողպատե, չուգունե և գունավոր ձուլվածքներ պատրաստելու գծով), ապակու արդյունաբերությունը (ապակյա կոմպլեկտավորող մասերի մատակարարման գծով) և այլն։

Արտադրական կոոպերացման մեջ ավելի ու ավելի աճող դեր է խաղում վերջին տարիներս Երևանում ստեղծված մետաղակերամիկայի ու կիսահաղորդիչ իրերի գործարանը։ Այդ հնարավորություն ընձեռեց հրաժարվել սարքերի համար տնտեսական այլ շրջաններից մագնիս ներմուծելուց։ Ռեսպուբլիկայի ձեռնարկությունների թողարկած՝ մեքենաների կաղապարված ու ձուլածո շատ դետալներ և գունավոր մետաղյա սարքավորումներ փոխարինվեցին մետաղակերամիկականով։ Մետաղակերամիկական իրերը երկու անգամ թեթև են ձուլված ու կռած իրերից և մեխանիկական մշակում համարյա չեն պահանջում։

Մետաղակերամիկական եղանակով մեքենաների ու սարքերի մասերի արտադրությունը նոր երևույթ է և խիստ առաջադիմական. դրա միջոցով տնտեսվում է գունավոր մետաղների ավելի քան 50 տոկոսը։

Չնայած ձեռնարկությունների մասնագիտացման ու արտադրական կոոպերացման բնագավառում կատարված աշխատանքին, դեռևս էական թերություններ կան։ Բավարար չափով չեն ուսումնասիրված բոլոր ձեռնարկությունների արտադրատեխնիկական հնարավորությունները, որպեսզի ավելի հստակ, տնտեսապես նպատակահարմար ձևով մասնագիտացվեն ու կոոպերացվեն դրանք։ Շատ անելիքներ կան նաև ձեռնարկությունների տեխնոլոգիական ու դետալային մասնագիտացման և կոոպերացման ասպարեզում։

Վերցնենք, օրինակ, ձուլարանների վիճակը։ Ժողտնտխորհի սիստեմում կան չուգունի-ձուլման 23 ցեխեր, որոնց համարյա կեսն ունեն տարեկան ոչ ավելի, քան 600 տոննա ձուլելու կարողություն։ Մանր ձուլարանները վատ են սարքավորված, այնտեղ գերակշռում է ձեռքի աշխատանքը։ Ձուլարանների մեծ մասը մասնագիտացված չէ, թողարկվում են լայն ասորտիմենտի իրեր և, բնականորեն, ձուլվածքի ինքնարժեքն այդ պայմաններում խիստ բարձր է, իսկ որակը՝ ցածր։ Այդ վիճակից դուրս գալու միակ միջոցը խոշոր, շրջանային և միջճյուղային նշանակության մասնագիտացված ձուլարաններ ստեղծելն է։

Մասնագիտացման ու կոոպերացման գործին մեծ վնաս են հասցնում առանձին ղեկավարների պահպանողական ու հետամնաց հայացքները, ստանձնած կոոպերացված մատակարարումների նկատմամբ արհամարհական վերաբերմունքը։ Անհրաժեշտ է նաև հաղթահարել նեղ գերատեսչական մոտեցումն ու տեղական խոչընդոտները։ Մեզ մոտ դեռևս կան տնտեսական ղեկավարներ, որոնք կկամենային ունենալ ներփակ տնտեսություն, ձեռնարկություններում կազմակերպել բոլոր կոմպլեկտավորող իրերի թողարկումը, անկախ քանակից և այն բանից, թե ինչ է նստում ամեն մի դետալը։ Միայն դրանով կարելի է

բացատրել, որ Էջմիածնի պլաստմասսայի գործարանում բավարար կարողությունների առկայության պայմաններում Երևանի էլեկտրաճշգրիտ սարքերի, Կիրովականի մեքենաշինական և մի քանի այլ գործարաններ «կից» արտադրում են նաև կոմպլեկտավորող պլաստմասսայե իրեր, չնայած դրանց ինքնարժեքը բարձր է, իսկ որակը շատ ցածր։

Տնտեսությանը ոչ պակաս վնաս է հասցնում տարայի կենտրոնացված արտադրության բացակայությունը, որի հետևանքով շատ ձեռնարկություններ ունեն կամ ստեղծում են տարայի տնայնագործական ոչ մեծ ցեխեր։

Արդյունաբերության մեջ կոոպերացումը պահանջում է խիստ կարգապահություն, մատակարարման մեջ խախտումներն անթույլատրելի են։ Մինչդեռ Ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչությունը տարվա սկզբից վիժեցնում է Երևանի քաղսովետի գործկոմի Տեղական արդյունաբերության վարչության ձեռնարկություններին մսաղացների ցանցերի ու դանակների կոոպերացված մատակարարումը։

Անհրաժեշտ է, որ ժողովրդական տնտեսության խորհուրդը առավել վճռական միջոցներ ձեռնարկի թերությունների վերացման և արդյունաբերության մասնագիտացման ու կոոպերացման գործի ձգձգման պատճառները վերացնելու ուղղությամբ։

Արտադրության կազմակերպման պրոգրեսիվ ձևերից է նաև համանման արդյունաբերական ձեռնարկությունների նպատակահարմար կոմբինացումը։ Դրանում կարելի է համոզվել մեր ռեսպուբլիկայի օրինակով։ Կառավարման նոր ձևերի անցնելու շնորհիվ տեխնոլոգիական ցիկլով համանման մի շարք ձեռնարկություններ միավորվեցին, կազմելով կոմբինատներ։ Այսպես, Ալավերդու պղնձաձուլական և ծծմբաթթվի գործարանները, որոնք միմյանց հետ կապված են պղնձի տեղական կոնցենտրատների մշակման միասնական տեխնոլոգիական պրոցեսով, միավորվել են մեկ ձեռնարկության մեջ։ Արարատում գտնվող չորս ինքնուրույն ձեռնարկություններ՝ ցեմենտի, շիֆերի և կրի գործարանները, ինչպես նաև կրաքարի հանքերը, որոնք կրաքար են մատակարարում ռեսպուբլիկայի քիմիական ձեռնարկություններին, միավորվել են և նրանց բազայի վրա ստեղծվել է խոշոր կոմբինատ։ Միավորվել են նաև Երևանի բրդե նուրբ գործվածքեղենի կոմբինատը և մահուդի ֆաբրիկան, Լենինականի տեքստիլ կոմբինատն ու գործվածքային ֆաբրիկան և այլն։

Ձեռնարկությունների միավորումն ու կոմբինացումը պայմաններ ստեղծեցին արտադրական տարածությունների ու կարողությունների, օժանդակ ցեխերի առավել նպատակահարմար օգտագործման համար, հումքի խնայողաբար ու կոմպլեքսային օգտագործման, վարչա-կառավարչական անձնակազմի կրճատման և արտադրության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման համար։

Մասնագիտացման և, հատկապես, ներշրջանային կոոպերացման հարցերը սերտորեն կապված են տվյալ տնտեսական վարչական շրջանի արդյունաբերության կոմպլեքսային զարգացման, նրա ռացիոնալ կառուցվածքի հետ։ Արդյունաբերության կոմպլեքսային զարգացումը հսկայական առավելություններ ունի և տնտեսական մեծ օգուտ է բերում. այդ արտահայտվում է ինչպես բնական հարստությունների կոմպլեքսային օգտագործման, այնպես էլ հարևան, իրար լրացնող արդյունաբերական արտադրության ճյուղերի կոմպլեքսային զարգացման մեջ։



Հայկական ՍՍՌ-ում արտադրողական ուժերի կոմպլեքսային ու նպատակահարմար տեղաբաշխման օրինակ կարող է ծառայել էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, որը ռեսպուբլիկայի արդյունաբերության առավել արագ զարգացող ճյուղերից մեկն է։ Յոթնամյակի անցած երեք տարում էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքն ավելացավ երկու անգամ։ Այժմ Հայաստանը եղբայրական միութենական ռեսպուբլիկաների մեջ էլեկտրական մեքենաների ու սարքավորումների թողարկման գծով գրավում է երրորդ տեղը՝ ՌՍՖՍՌ-ից և Ուկրաինական ՍՍՌ-ից հետո։ Այստեղ թողարկվում են ուժային տրանսֆորմատորներ, գեներատորներ, կոմպլեքսային տրանսֆորմատորային ենթակայաններ, տարբեր կարողությունների ու գաբարիտների էլեկտրաշարժիչներ, ցածրավոլտ ու բարձրավոլտ ապարատուրա, լուսատեխնիկական իրեր, էլեկտրակենցաղային սարքեր, էլեկտրալամպեր և այլն։ Ռեսպուբլիկայում արդյունաբերության այդ կարևոր ճյուղի տեխնիկական բարձր մակարդակի արտահայտությունն է էլեկտրոնային հաշվիչ մաթեմատիկական մեքենաների արտադրությունը։

Այդ ամենը արդյունք են էլեկտրատեխնիկական արդյունաբերության բուռն աճման համար Հայաստանում ստեղծված բարենպաստ տնտեսական պայմանների, տնտեսական շրջանի ներսում այնպիսի կոոպերացվող ձեռնարկությունների կոմպլեքսի, որոնք հումք, նյութեր և կոմպլեկտավորման իրեր են մատակարարում իրար։ Գունավոր մետալուրգիան, որը զարգանում է տեղական հանքային հարստությունների բազայի վրա, մատակարարում է պղինձ ու ալյումին, կաբելի գործարանները դրանցից արտադրում են փաթաթման ու տեղակայման կաբելային իրեր էլեկտրատեխնիկական արդյունաբերության բոլոր ձեռնարկությունների համար։ Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները ապահովում են բարձրորակ մեկուսիչ նյութեր, պլաստմասսայե ու ռետինատեխնիկական իրեր, ռեսպուբլիկայի սարքաշինական գործարանները՝ ճշգրիտ չափիչ ու կառավարող սարքեր, մետաղակերամիկայի ու կիսահաղորդիչ իրերի գործարանը՝ համապատասխան դետալներ։

Հայաստանում կոմպլեքսային զարգացման բարենպաստ պայմաններ կան նաև սարքաշինության, հաստոցաշինության, ռադիոտեխնիկական արդյունաբերության համար։ Այդպիսի պայմաններ են ստեղծվում թեթև ու սննդի արդյունաբերության մի շարք ճյուղերի կոմպլեքսային զարգացման համար։

Խիստ կարևոր նշանակություն ունի հանքային հումքի կոմպլեքսային օգտագործումը, որին հատուկ ուշադրություն է նվիրում Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը։ Հանքային հումքի կոմպլեքսային օգտագործման տնտեսական արդյունավետությունը դժվար է գերագնահատել։ Նրա շնորհիվ կապիտալ ներդրումների փոքր ծավալով, աշխատանքի քիչ ծախսումներով և զգալիորեն ավելի ցածր ինքնարժեքով հնարավոր է դառնում կորզել հանքային և ոչ հանքային հումքի մեջ գտնվող բոլոր օգտակար տարրերը։

Ըստ տնտեսական վարչական շրջանների արդյունաբերության կառավարման նոր ձևերին անցնելը բարենպաստ պայմաններ ստեղծեց բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման համար։ Նախկին ճյուղային արդյունաբերական մինիստրություններին հետաքրքրում էին հանքային հումքի մեկ կամ մի քանի, բայց ոչ այն բոլոր օգտակար կոմպոնենտները, որպիսիք պարունակում էր հումքը։ Մինչդեռ ժողովրդական տնտեսության խորհուրդները չեն կարող թույլ տալ միակողմանի մոտեցում այս գործի նկատմամբ, և արդյու-

նահանելով ու մշակելով հանքային հարստությունները, դրանցից կորզում են ժողովրդական ամբողջ տնտեսության համար օգտակար բոլոր տարրերը։

Այսպես, Հայաստանում արդյունահանվող ու վերամշակվող գունավոր մետաղների հանքաքարերից մինչև վերջերս կորզվում էին միայն գլխավոր կոմպոնենտները՝ պղինձը, մոլիբդենը, կապարը և ցինկը, այնինչ այդ հանքաքարերը պարունակում են մեծ քանակությամբ բարձրարժեք այլ տարրեր՝ հազվագյուտ մետաղներ, կիսահաղորդիչներ, որոնք ունեն հարաճուն նշանակություն տեխնիկայի ու արդյունաբերության ասպարեզում։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհուրդը և գիտնականները. բավականին աշխատանք են կատարել հանքաքարից բոլոր արժեքավոր տարրերը կորզելու մեթոդների մշակման ուղղությամբ և այդ կարևոր պրոբլեմը ամենամոտ ժամանակներս լիովին կլուծվի։

Ժողովրդատնտեսական ոչ պակաս նշանակություն ունեն ռեսպուբլիկայում իրագործվող ալկալիական ապարների՝ մեծ քանակությամբ ալյումին ու ալկալի պարունակող նեֆելինային սիենիտների կոմպլեքսային օգտագործման միջոցառումները։ Գիտահետազոտական աշխատանքներով և կիսաարդյունաբերական մասշտաբի փորձերով ապացուցված է, որ այդ հումքից տնտեսական մեծ շահավետությամբ ո՛չ միայն կավահող է ստացվում (կիսաֆաբրիկատ՝ ալյումին ստանալու համար), այլև պորտլանդցեմենտ, նատրիումի և կալցիումի մետասիլիկատներ, պոտաշ, «Երևանիտ» նոր նյութը և մի շարք այլ արժեքավոր նյութեր։ Հայաստանում նեֆելինային սիենիտների արդյունաբերական օգտագործման պրոբլեմը հարուցվել է դեռևս արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումից առաջ, սակայն այն լայնորեն կենսագործվեց միայն ժողտնտխորհների կազմակերպումից, գերատեսչական արգելքների վերացումից հետո։ Հրազդանի շրջանում այժմ կառուցվում է խոշոր լեռնաքիմիական կոմբինատ, որը նեֆելինային սիենիտներն ու երկրորդ հումքային կոմպոնենտը՝ կրաքարը, կօգտագործի ամբողջովին, առանց մնացորդի, դրանցից ստանալով վերևում նշված բոլոր նյութերը։

Հումքի կոմպլեքսային օգտագործումը կապահովի կառուցվող ձեռնարկության բարձր եկամտաբերությունը՝ կավահողի, ցեմենտի և այլ արտադրանքների ինքնարժեքը կլինի երկրում ամենաէժանը։ Խիստ արդյունավետ կլինեն նաև կապիտալ ծախսումները թողարկվող արտադրանքի միավորի վրա։ Ներդրումները կհատուցվեն երեք տարում։ Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատում թողարկվող արտադրանքը, բացի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում անմիջականորեն կիրառվելուց, կհանդիսանա սկզբնահումք նորաստեղծ արդյունաբերական ձեռնարկությունների համար, որոնցից մի քանիսի նախագծերն արդեն կազմվում են։ Այսպես, օրինակ, Երևանիտի բազայի վրա նախատեսվում է սպիտակ ապակետարայի (շշերի ու պահածոների բանկաների), սորտային ամանեղենի ու բյուրեղապակու, ռադիոտեխնիկական, էլեկտրատեխնիկական, հայելու, քիմիական և ապակու այլ տեսակների, ընդ որում այնպիսի դեֆիցիտային ապակու արտադրությունը, ինչպիսին՝ բակտերիոցիդային ապակին է։ Ցեմենտի արտադրության ընդլայնումը հնարավորություն կտա ավելացնելու պեմզայից, հրաբխային խարամներից և տուֆի մնացուկներից շինարարական զանազան կոնստրուկցիաների թողարկումը՝ հավաքովի տնաշինարարության ու արդյունաբերական շինարարության համար։



Հիշատակենք հանքային հումքի կոմպլեքսային օգտագործման մի օրինակ ևս։ Մեր երկրաբաններն ու տեխնոլոգները մշակել են Սևանա լճի հյուսիս-արևելյան ափին գտնվող մագնեզիական և քրոմամագնեզիական ապարների կոմպլեքսային արդյունաբերական օգտագործման ուղիներ և նախապատրաստել այդ ապարներից ֆոստերիտային հրակայուն նյութերի, կերամիկական իրերի, մագնեզիումի օքսիդի արտադրության կազմակերպումը. միաժամանակ լեռնային զանգվածից կկորզվեն նրա պարունակած նիկելը, կոբալտը, քրոմը և պլատինի խմբի մինրալները։ Շուտով կսկսվեն ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունեցող այդ աշխատանքները։

Քննարկելով և լուծելով արդյունաբերության կոմպլեքսային զարգացման, ձեռնարկությունների մասնագիտացման ու կոոպերացման հարցերը, մենք չըպետք է պարփակվենք միայն մեկ առանձին տնտեսական շրջանում։ Ինչպես հայտնի է, միութենական ռեսպուբլիկաների, առանձին մարզերի ու վարչական միավորների սահմանները ոչ միշտ են համընկնում ժամանակակից տնտեսական շրջանների հետ, ժողովրդատնտեսական շատ կարևոր պրոբլեմներ պարզապես չեն պարփակվում տնտեսական վարչական շրջանների մասշտաբներում։ Ուստի արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխման, արդյունաբերության կոմպլեքսային զարգացման հարցերի ռացիոնալ լուծման, մասնագիտացման ու կոոպերացման համար անհրաժեշտ է հաշվի առնել տնտեսական գործոնները ո՛չ միայն տվյալ տնտեսական-վարչական շրջանի, այլ ավելի մեծ տնտեսական աշխարհագրական շրջանի շահերը, որի մեջ նա մտնում է։

Մեր ռեսպուբլիկայի համար այդպիսի խոշոր տնտեսական շրջան է Անդրկովկասի տնտեսական շրջանը։

Արդյունաբերության կոմպլեքսային զարգացման, մասնագիտացման և արտադրության կոոպերացման մեջ են սոցիալիստական արդյունաբերության հուժկու վերելքի վիթխարի ռեզերվները։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհրդի, պարտիական, սովետական ու արհմիութենական կազմակերպությունների, արդյունաբերության բոլոր աշխատողների մարտական խընդիրն է՝ ժողովրդական տնտեսությանն ի սպաս դնել այդ ռեզերվները, կենսագործել ՍՄԿԿ XXII համագումարի որոշումները։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ԷՏԱՊՈՒՄ

*Ս. ԱՄԻՐՅԱՆ*

Պատմական գիտությունների թեկնածու

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ծագումով առաջ եկավ ազատ ու սուվերեն երկրների սոցիալական, տնտեսական ու քաղաքական համագործակցությունը։ Նոր հասարակարգն ավելի հեշտ ու արագ կառուցելու և հին աշխարհի դեմ հաջող պայքարելու համար սոցիալիզմի ու կոմունիզմի ուղիով ընթացող, ընդհանուր շահերի ու նպատակների միասնությամբ համախմբված ժողովուրդները միավորել են իրենց ուժերը, փոխադարձաբար օգնում են իրար, եղբայրաբար համագործակցում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ «Մենք կամավոր կերպով համախմբվել ենք,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որպեսզի համատեղ ընթանանք դեպի միասնական նպատակը։ Ոչ ոք մեզ չի պարտադրել այդ դաշինքը։ Այն մեզ բոլորիս հարկավոր է ինչպես օդը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 11)։*

*Իր զարգացման նոր ու վճռական փուլն է մտել սոցիալիստական աշխարհը։ Սովետական Միությունում հաջողությամբ ընթանում է կոմունիզմի ծավալուն շինարարությունը։ Ամենակատարյալ հասարակարգի մասին սերունդների դարավոր երազանքը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը։*

*Զարգացման նոր էտապ են թևակոխել նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Նրանց մեծ մասում վերացել է էկոնոմիկայի բազմակացութաձևությունը և ավարտվում է սոցիալիզմի կառուցումը։ Պատմական ամենակարճ ժամանակամիջոցում իրականացված ռևոլյուցիոն վերափոխումները սոցիալիստական բոլոր երկրներում վերացրին կապիտալիզմի վերականգնման սոցիալ-տնտեսական հնարավորությունները։ Ազատ ժողովուրդների համագործակցության շրջանակներում արդեն ապահովված է սոցիալիզմի լիակատար հաղթանակը։*



*Ժողովրդական դեմոկրատիայի երկրների զարգացման նոր էտապը բնութագրվում է սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում ձեռք բերվող խոշոր հաջողություններով։ Սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակը լայն ասպարեզ է բացել արտադրողական ուժերի հզոր վերելքի համար։ Չնայած զարգացման արմատական գծերի ընդհանրությանը, սոցիալիստական երկրների առջև կանգնած հերթական խնդիրները, որոնք արտացոլվում են նրանց հնգամյա, վեցամյա և յոթնամյա պլաններում, բազմազան են ու չեն համընկնում իրար։ Դա բացատրվում է հին սիստեմից ժառանգած արտադրողական ուժերի զարգացման տարբեր մակարդակներով։ Այսպես, օրինակ, թե՛ Չեխոսլովակիայում և թե Կորեայի Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայում վերացել է տնտեսության բազմակացութաձևությունը, լիովին հաղթանակել են սոցիալիստական արտադրական հարաբերությունները։ Բայց Չեխոսլովակիայում, որը սոցիալիզմին անցնելիս արդեն առաջավոր ինդուստրիալ երկիր էր, սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակը համընկավ նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման ավարտին, և այսօր Չեխոսլովակիան արդեն թևակոխել է զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանը։ Մինչդեռ Կորեայում, որն անցյալում հետամնաց, ագրարային երկիր էր, սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսն ինտենսիվ կերպով սկսեց ընթանալ տնտեսության մեջ սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումից հետո և այն կավարտվի ընթացիկ յոթնամյակում (1961—1967 թթ.) միայն։*

*Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում էական տարբերություններ են նկատվում նաև սոցիալիստական ինդուստրացման պրոցեսում։ Մի շարք երկրներում գրեթե նոր է ստեղծվում ազգային արդյունաբերությունը, իսկ մյուսներում՝ սոցիալիստական ինդուստրացման գլխավոր խնդիրն արդյունաբերության ճյուղային կառուցվածքի արմատական վերակառուցումն է, արտադրողական ուժերի համաչափ տեղաբաշխումը երկրում։*

*Ժողովրդական դեմոկրատիայի երկրների մեծ մասում ավարտվել է գյուղատնտեսության արտադրական կոոպերացումը և այժմ ամրապնդվում են ստեղծված կոլեկտիվ տնտեսությունները։ Բոլոր միջոցները գործադրվում են դրանք վերածելու նորագույն տեխնիկայով հագեցած, բարձր եկամտաբեր տնտեսությունների։ Սակայն, դեռևս շատ տարբերություններ կան գյուղատնտեսական արտադրության հանրայնացման և գյուղում արտադրողական ուժերի զարգացման մակարդակների միջև։*

*Չնայած սոցիալիստական երկրների զարգացման տարբեր մակարդակներին, բուռն կերպով ծավալվում է նրանց եղբայրական սերտ համագործակցությունը։ Զարգացման պրակտիկան ցույց է տալիս, որ անցյալում տնտեսապես հետամնաց երկրները, հենվելով առաջավոր սոցիալիստական երկրների փորձի, համագործակցության ու եղբայրական օգնության վրա, արագորեն կրճատում, անցնում են բաց թողած ժամանակը, զարգացնում իրենց տնտեսությունն ու կուլտուրան։ Անցյալի ագրարային երկրները՝ Լեհաստանը, Չինաստանը, Հունգարիան, Բուլղարիան, Կորեան, Վիետնամը, Մոնղոլիան դարձել ու դառնում են ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկաներ։*

*Դրան զուգընթաց, առաջավոր սոցիալիստական երկրները ևս չեն դանդաղում, այլ արագ զարգանում են և բազմակողմանիորեն օգնում ետ մնացածներին՝ իրենց հասնելու։ Ժողովուրդների սոցիալ-տնտեսական ու կուլտու-*

րական զարգացման ընդհանուր մակարդակի հավասարման այս երևույթը դարձել է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջընթացի գլխավոր օրինաչափությունը, որը լայնորեն կգործի առաջիկա 20-ամյակում, Սովետական Միությունում կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Այդ օրինաչափությունից է բխում այն հետևությունը, որ «...սոցիալիզմի միասնական համաշխարհային սիստեմի կազմի մեջ սոցիալիստական պետությունների զարգացումը, այդ սիստեմի օրինաչափությունների և առավելությունների օգտագործումը նրանց համար ապահովում է սոցիալիզմի կառուցման ժամկետները կրճատելու հնարավորություն, բացում է նրանց ավելի կամ պակաս միաժամանակյա, պատմական մեկ դարաշրջանի շրջանակներում կոմունիզմին անցնելու հեռանկար» (Նույն տեղում, էջ 556)։

Սոցիալիզմի կառուցման ժամկետները կրճատելու հնարավորությունը բոլորովին չի ենթադրում, թե կարելի է թռչել զարգացման առանձին էտապների վրայով։ Խոսքն այդ էտապներն արագ անցնելու, սոցիալիստական շինարարության խնդիրների լուծման ժամկետները կրճատելու հնարավորության մասին է։ Օրինակ՝ ինդուստրացումն այսօր ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ավելի արագ է կատարվում, քան այն կատարվեց Սովետական Միությունում, որը միայնակ էր կառուցում նոր հասարակարգ։

Առաջիկա 20-ամյակում ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրները կավարտեն սոցիալիզմի կառուցումը և կսկսեն կոմունիզմի ծավալուն շինարարությունը։ Այդ մասին են խոսում մինչև 1980 թվականի զարգացման նրանց ծրագրերը, որ արդեն մշակում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների եղբայրական պարտիաներն ու կառավարությունները։ Նախնական տվյալները ցույց են տալիս զարգացման այն մեծ թռիչքը, որ 20-ամյակում պետք է ապրեն սոցիալիստական բոլոր երկրները։ Օրինակ, Լեհաստանի Միացյալ Բանվորական պարտիայի Կենտկոմի դիրեկտիվները նախատեսում են մինչև 1980 թվականը, այսօրվա համեմատությամբ, երկրի ազգային եկամուտը մեծացնել 4 անգամ, հինգ անգամ մեծացնելով արդյունաբերական արտադրանքը։ Կամ 20-ամյա պլանի իրագործմամբ սոցիալիստական Չեխոսլովակիայում հասարակական ընդհանուր արտադրանքը կաճի 4 անգամ։

Սոցիալիստական երկրների պրակտիկ ու հեռանկարային պլաններով նախատեսված համաշխարհային պատմական նվաճումները ձեռք կբերվեն համատեղ պայքարով, նոր հասարակարգ կառուցող ժողովուրդների քաղաքական-տնտեսական ու կուլտուրական աճող համագործակցության ճանապարհով։ «Մշակելով այդ հեռանկարները,— գրում է Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի ԿԿ-ի քարտուղար Իրժե Գենդրիխը,— մենք գիտակցում ենք, որ նրանց իրագործումը չի կարող լինել միայն մեր ազգային գործը. դա կլինի ոչ միայն մեր ջանքերի, այլև մնացած սոցիալիստական երկրների և, առաջին հերթին՝ Սովետական Միության հետ մեր համագործակցության արդյունքը»։

Մեր երկրում կոմունիզմի ծավալուն կառուցման վիթխարի ծրագրի իրագործումն ստեղծում է ավելի ու ավելի բարենպաստ պայմաններ, նորանոր հնարավորություններ՝ սոցիալիստական մյուս երկրների հետ ՍՍՌՄ-ի տնտեսական և կուլտուրական համագործակցությունը խորացնելու, այդ երկրներին առավել ինտենսիվ օգնություն ու աջակցություն ցույց տալու համար։





Զարգացման նոր էտապ է ապրում սոցիալիստական երկրների համագործակցությունը, որը ծառայում է նրանցից յուրաքանչյուրի և ամբողջ սիստեմի հետագա զարգացման շահերին։ Այն ամենից առաջ պահանջում է քաղաքականապես համախմբել սոցիալիստական պետությունները իմպերիալիստական ագրեսորների դեմ, ընդհանուր խաղաղության համար, կոմունիզմի լիակատար հաղթանակի համար համատեղ պայքարելու նպատակով։ Առաջիկայում, սոցիալիզմի հաղթանակներին զուգընթաց, ավելի կամրապնդվի ժողովուրդների աճող բարոյա-քաղաքական միասնությունը՝ ինչպես յուրաքանչյուր սոցիալիստական երկրի ներսում, այնպես էլ ամբողջ սիստեմի մասշտաբով։ Եվ «ինչպես խոր արմատներ գցած հզոր ծառի համար սարսափելի չէ ոչ մի փոթորիկ, այնպես էլ նոր, սոցիալիստական աշխարհի համար սարսափելի չեն ոչ մի փորձություն ու ցնցում» (Ն. Ս. Խրուշչով, նույն տեղում, էջ 14)։ Բայց այդ չի նշանակում, թե միջազգային իմպերիալիզմը դադարել է սոցիալիստական երկրների նկատմամբ ագրեսիվ դավեր նյութելուց։ Իմպերիալիստական որոշ տերություններ՝ հատկապես ԱՄՆ-ի կառավարող շրջանները, այդ նպատակով հարյուր միլիոնավոր դոլարներ են ծախսում։

Իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը պատերազմի միջոցով նորից ձգտում են հասնելու ամբողջ աշխարհում կապիտալիզմի տիրապետության, կամ, գոնե, սոցիալիզմի զարգացման արգելման։ Այսպիսի պայմաններում աշխարհավեր պատերազմի կանխումը դարձել է սոցիալիստական երկրների միջազգային գլխավոր պրոբլեմը, որի լուծման համար նրանք միավորել են իրենց ջանքերը։ Սոցիալիստական պետությունների արտաքին միասնական քաղաքականության հիմքում այսուհետև ևս կլինի սոցիալական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության գաղափարը։ Միաժամանակ կամրապնդվեն նրանց պաշտպանությունն ու ռազմական հզորությունը։ Սոցիալիստական աշխարհի ռազմաքաղաքական ուժերի միավորման և աշխարհում կայուն խաղաղության հաստատման մեծ գործոն է Վարշավայի պայմանագիրը։

Սոցիալիստական երկրների զարգացման արդի էտապում նրանց տնտեսական համագործակցությունը կընթանա գլխավորապես արտադրության բնագավառում ջանքերի միավորման ուղղությամբ։ Այդ է վկայում, օրինակ, այս տարվա հունիսին Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի մասնակից երկրների Կոմունիստական ու Բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունը, որը քննարկեց ու հաստատեց զարգացման նոր էտապում սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցության ձևերը, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիմնական սկզբունքները։ Հունիսյան խորհրդակցության որոշումները մեծ նշանակություն կունենան համաշխարհային սոցիալիստական տնտեսության կոմպլեքսային զարգացման գործում, որը սոցիալիստական երկրների ժողովուրդների հարաբերությունները կհասցնի նոր, է՛լ ավելի բարձր աստիճանի։

Վերջին տարիներին սոցիալիստական աշխարհում տնտեսական համագործակցության ծանրության կենտրոնը ապրանքաշրջանառության բնագավառից տեղափոխվել է արտադրության ասպարեզը։ Սոցիալիստական երկրների տնտեսական փոխհարաբերություններում գլխավոր օղակն արդեն ոչ թե շուկայական կապերն են, ինչպես մի քանի տարի առաջ էր, այլ ուղղակի համա-

գործակցությունն է նյութական արտադրության կարևոր տեղամասերում։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման խորացման պայմաններում զարգանում են համագործակցության այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը։

Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում սոցիալիստական արտադրահարաբերությունների հաղթանակով ամենուր կիրառվեց պլանաչափ համամասնական զարգացման օրենքը։ Օբյեկտիվ հնարավորություն է ստեղծվել խելացի ու նպատակասլաց կազմակերպելու ինչպես յուրաքանչյուր երկրի, այնպես էլ ամբողջ սոցիալիստական սիստեմի տնտեսական, գիտատեխնիկական ու կուլտուրական անշեղ վերելքը, ռացիոնալ տեղաբաշխելու և օգտագործելու ուժերը։ Այդ տեսակետից առաջիկայում մեծ դեր է վերապահվում Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդին, որի անդամներն են Սովետական Միությունը և ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրները։ Խորհրդի վերջին 16-րդ սեսիան Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկային ևս ընդունեց տնտեսական համագործակցության այդ մեծ կազմակերպության անդամ։ Սեսիան հավանություն տվեց խորհրդի կանոնադրության փոփոխություններին, որոնք հնարավորություն են ընձեռում Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի մեջ մտնելու նաև ոչ եվրոպական սոցիալիստական երկրներին։

Ճիշտ է, Տնտեսական փոխադարձ օգնության խորհուրդն ստեղծվել է դեռևս 1949 թվականին, բայց արտադրության բնագավառում սոցիալիստական երկրների ջանքերի միավորման ուղղությամբ նրա առավել ակտիվ գործունեությունը ծավալվում է, հատկապես, վերջին տարիներին, սկսած խորհրդի [illegible]-րդ սեսիայից, որը տեղի ունեցավ 1958 թվականին, Բեռլինում։ Բեռլինի սեսիայի հրաշխավորություններին համապատասխան համաձայնեցվեցին խորհրդի անդամ երկրների ժողովրդական տնտեսության մի շարք գլխավոր ճյուղերի զարգացման 1959—1965 թվականների պլանները։ Այստեղ տեղին է նշել, որ ժամկետների տեսակետից, սոցիալիստական պետությունների ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորման մեջ արդեն դրեթե միասնականություն է ստեղծվել և այն հիմնականում ընդգրկում է 1959—1965 թվականները, այսինքն՝ ՍՍՌՄ-ի յոթնամյա պլանի ժամանակաշրջանը։

Ժամկետների լիակատար միասնություն է ստեղծվում հեռանկարային զարգացման պլանավորման մեջ, որն ավելի է հեշտացնելու ջանքերի միավորման գործն արտադրության բնագավառում։ Սոցիալիստական յուրաքանչյուր երկրում կա պլանավորման միասնական կենտրոնացված կազմակերպություն՝ Պետպլանը։ Ընդ որում, պլանների կոորդինացման, ինչպես նաև միջազգային տնտեսական համագործակցության այլ ձևերի իրականացման ժամանակ հետևողականորեն կիրառվում են կամավորության, սուվերենության և հավասարության սկզբունքները։ Պլանների համաձայնեցումը կատարվում է հետևյալ կերպ. ներքին հնարավորությունների հաշվառման հիման վրա յուրաքանչյուր երկիր կազմում է իր էկոնոմիկայի զարգացման ինքնուրույն պլանը։ Այն մշակելիս առաջ քաշված կարևոր պրոբլեմների շուրջը Տնտեսական փոխօգնության խորհրդի օրգաններում կատարվում են փոխադարձ կոնսուլտացիաներ, որոնք օգնում են լավ հաշվի առնելու խորհրդի անդամ բոլոր երկրների հնարավորություններն ու պահանջները։ Դրա հիման վրա երկրների կոմպե-



տենտ օրգանները համապատասխան ուղղումներ, լրացումներ են մտցնում պլաններում։ Համատեղ քննարկման ենթակա հարցերի մասին Տնտեսական փոխօգնության խորհրդի օրգաններում մշակվում են համապատասխան երաշխավորագրեր։

Պրակտիկան արդեն ցույց է տալիս, որ սոցիալիստական երկրների ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացումը վիթխարի տնտեսական արդյունք է տալիս։ Ամենից առաջ, սոցիալիստական պետությունների արտադրական ջանքերի միավորումը հնարավորություն է տալիս տնտեսական ամենաբարդ խնդիրները լուծել ուժերի ու էներգիայի նվազագույն ծախսումով, այս կամ այն երկրի հումքային և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմամբ, ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառմամբ։ Այսպես, օրինակ, 1957 թվականին Լեհաստանի Լյուբլին-Գլոգուվյան շրջանում հայտնաբերվեց պղնձի հարուստ հանքավայր։ Պղնձի հանքերի և պղնձաձուլական գործարանների նյութական ֆինանսական մեծ ծախսեր պահանջող շինարարությունը Լեհաստանը կարող էր կատարել շատ երկար ժամանակում և մեծ դժվարությամբ։ Եվ ահա Լեհաստանին օգնության եկավ եղբայրական Չեխոսլովակիան, որը նրան տրամադրեց 112,5 միլիոն ռուբլու վարկ։ Լեհաստանն այժմ մեկ երրորդական չափով բավարարում է իր պահանջները սեփական պղնձով։ Իսկ երբ ամբողջությամբ շահագործման հանձնվեն Լյուբլին-Գլոգուվյան պղնձահանքերն ու գործարանները, Լեհաստանը Սովետական Միությունից հետո, պղնձի արտադրության գծով Եվրոպայում կդառնա ամենահզոր երկիրը։ Նա ոչ միայն կբավարարի պղնձի իր պահանջները, այլև հումք կմատակարարի սոցիալիստական մյուս երկրներին և, առաջին հերթին՝ Չեխոսլովակիային։ Տնտեսական կապերի նման օրինակները շատ-շատ են։

ԳԴՌ-ն, Չեխոսլովակիան, Լեհաստանն ու Ռումինիան համատեղ ֆինանսավորում են ցելյուլոզային կոմբինատի շինարարությունը, որը պետք է վերամշակի Դանուբի դելտայում աճող եղեգնի հսկայական պաշարները։ Այդ նպատակով Ռումինիային տրամադրվող վարկերը կփոխհատուցվեն պատրաստի ցելյուլոզի արտադրանքով։ Հունգարիան Ռումինիայի հետ միասին կառուցում է ացետիլենի գործարան, որը պետք է աշխատի Ռումինիայի բնական գազի վրա։ Համատեղ կապիտալ ներդրումներով մերձդանուբյան սոցիալիստական երկրները ձեռնարկել են Դանուբի էներգետիկ ռեսուրսների օգտագործմանը, կառուցվում են հզոր հիդրոէլեկտրակայաններ և ջրանցքներ։ Գործնական քայլեր են կատարվում նավթամուղների և գազամուղների միջազգային ցանց ստեղծելու ուղղությամբ։ Իր ավարտին է մոտենում «Դրուժբա» նավթամուղի շինարարությունը, որով Սովետական Միությունից նավթը կհոսի Լեհաստան, Չեխոսլովակիա, ԳԴՌ, Հունգարիա։ Մոտ 5 հազար կիլոմետր երկարություն ունեցող այդ նավթամուղի բազայի վրա նշված երկրներում կբարձրանան արդյունաբերական նոր օբյեկտներ, հատկապես քիմիական արդյունաբերության հսկաներ։ Վերջին տարիներին գազամուղներ են ստեղծվել ՍՍՌՄ-ի ու Լեհաստանի, Ռումինիայի և Հունգարիայի միջև։ Աշխատանքներ են կատարվում ՍՍՌՄ-ի, Լեհաստանի Ռումինիայի, ԳԴՌ-ի, Չեխոսլովակիայի և Հունգարիայի էներգետիկ սիստեմների միավորման նպատակով։ Արդեն Ուկրաինայից բարձր լարման էլեկտրական գծեր են գնում Հունգարիա։

Եվրոպական շատ սոցիալիստական երկրների, ինչպես նաև Չինաստանի ու ժողովրդական Կորեայի միջև կնքված են համաձայնագրեր՝ միմյանց էլեկ-

տրաէներգիա մատակարարելու մասին։ Սրանք սոցիալիստական երկրների միասնական էներգասիստեմ ստեղծելու ուղղությամբ կատարվող առաջին քայլերն են, որոնք նախատեսվում են 20-ամյա պլաններով։ Սոցիալիստական երկրների ջանքերի միավորումն ու համագործակցությունը հաջողությամբ են ընթանում նաև տրանսպորտի բնագավառում։ 1960 թվականին Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի անդամ պետությունների միջև կնքվեց համաձայնագիր՝ բեռների և ուղևորների միջազգային փոխադրումների մասին։

Հարկ չկա թվարկել համատեղ բոլոր գործերն ու դրանց նախագծերը, որոնք իրականացվում են և իրականացվելու են սոցիալիստական լագերի տարբեր երկրներում։ Սակայն արտադրության բնագավառում ջանքերի միավորումը, ժողովրդական տնտեսության պլանների կոորդինացումը չի սահմանափակվում միայն ձեռնարկությունների համատեղ կառուցմամբ և էկոնոմիկական պրոբլեմների լուծմամբ։ Այն առավել մեծ չափով դրսևորվում է աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման բարձրագույն ձևերի՝ մասնագիտացման և կոոպերացման զարգացման մեջ։



Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հիմնական սկզբունքներն ու նրանց կիրառման պրակտիկան ակնհայտորեն ցուցադրում են հասարակական աշխատանքի սոցիալիստական բաժանման արմատական տարբերությունը կապիտալիստականից։ Պատմության մեջ առաջին անգամ հասարակական աշխատանքի միջազգային բաժանումը դադարել է թույլերի և ուժեղների միջև, ինչպես նաև շուկայի համար մղվող պայքարի ասպարեզ լինելուց։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմում աշխատանքի հասարակական բաժանումը կատարվում է պլանային կարգով, իրավահավասար, սուվերեն ու բարեկամական երկրների միջև կնքված կամավոր համաձայնությունների հիման վրա։ Այն դարձել է սոցիալիստական բոլոր երկրների ուժերի ծաղկման և ինքնուրույնության ամրապնդման կարևոր աղբյուր։ Այդ է վկայում հենց պատմական այն մեծ իրողությունը, որ անցյալում հետամնաց և իմպերիալիստական խոշոր պետությունների հումքային կցորդ հանդիսացած երկրներն այսօր դարձել ու դառնում են զարգացած, ինդուստրիալ ռեսպուբլիկաներ։ Դա նշանակում է, որ աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը նպաստում է առանձին երկրների հետամնացության արագ հաղթահարմանը, սոցիալիստական երկրների տնտեսական-կուլտուրական զարգացման մակարդակների պատմականորեն գոյացած տարբերության վերացմանը։ Տնտեսապես հզոր Սովետական Միությունը հումքային և էներգետիկ ռեսուրսներ է մատակարարում դրանց կարիքն զգացող սոցիալիստական երկրներին, որպեսզի անարգել զարգանա նրանց արդյունաբերությունը։

Հայտնի է, որ սոցիալիստական երկրներից միայն ՍՍՌՄ-ը և Չինաստանն ունեն տնտեսական ու մարդկային այնպիսի վիթխարի ռեսուրսներ, որ լիովին կարող են իրենց մոտ զարգացնել արդյունաբերության բոլոր ճյուղերը։ Մնացած սոցիալիստական երկրների տնտեսական զարգացումը զգալի չափով կախված է հումքի հիմնական տեսակների ներմուծումից և արդյունաբերական արտադրանքի արտահանումից։ Այսպես, օրինակ, Չեխոսլովակիան ներմու-



ծում է իրեն անհրաժեշտ նավթի 90 տոկոսից ավելին, երկաթահանքի և գունավոր մետաղների երկու երրորդը։ Հունգարիան ներմուծում է երկաթահանքի և նավթի իր պահանջների 80 տոկոսը, գունավոր մետաղների, կոքսի, քարածխի 50 տոկոսը։ Ունենալով զարգացած մշակող արդյունաբերություն, ԳԴՌ-ն նույնպես չունի բավարար հումքային բազա։ Աշխատանքի միջազգային բաժանումը հնարավորություն է տալիս սոցիալիստական ամեն մի երկրի՝ հենվելու ամբողջ սոցիալիստական լագերի ռեսուրսների վրա։ Օրինակ, Չեխոսլովակիան, ԳԴՌ-ն և Հունգարիան իրենց արդյունաբերության համար կարևորագույն նշանակություն ունեցող հումքի մեծ մասն ստանում են Սովետական Միությունից։

Անցած մի քանի տարիների պրակտիկան ցույց է տալիս, որ աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, նրա բարձրագույն ձևերն անսպառ հնարավորություններ են բացում ամբողջ սիստեմի շրջանակներում մարդկային աշխատանքը տնտեսելու և արտադրանքի բոլոր տեսակների թողարկումն արագ ավելացնելու համար։ Յուրաքանչյուր սոցիալիստական երկիր առավելապես զարգացնում է արդյունաբերության և ընդհանրապես տնտեսության այն ճյուղերը, որոնց համար ունի նպաստավոր պայմաններ։ Հարկ չկա և նպատակահարմար էլ չէ, որ նա ավելորդ ժամանակ ու միջոցներ կորցնի՝ իր մոտ զարգացնելու արտադրության բոլոր տեսակները, ինչպես, հասկանալի պատճառներով, ժամանակին այդ արել է Սովետական Միությունը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյությունը վերացրել է այդ անհրաժեշտությունը։

Առաջիկա 20-ամյակում մեծ չափով կզարգանան արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը սոցիալիստական լագերի շրջանակներում։ Այդ արտահայտվում է սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ ու հեռանկարային պլաններում, որոնց հիման վրա փոխադարձ օգնության խորհուրդը որոշակի կոորդինացիոն աշխատանք է կատարում։ Այսպես, մեքենաշինության մասնագիտացման վերաբերյալ խորհրդի երաշխավորության համապատասխան, դոմենյան սարքավորումների արտադրությունը կենտրոնացվում է ՍՍՌՄ-ում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում և ԳԴՌ-ում, նավթամշակման սարքավորումներինը՝ ՍՍՌՄ-ում և Ռումինիայում, կարտոֆիլ հավաքող մեքենաներինը՝ ՍՍՌՄ-ում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, եգիպտացորեն հավաքող մեքենաներինը՝ Ռումինիայում, Հունգարիայում և ՍՍՌՄ-ում։

Անշուշտ, մասնագիտացման հետևանքով այս կամ այն երկիրը չպետք է միակողմանի զարգանա։ Աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը չի բացառում, այլ, ընդհակառակը, ենթադրում է յուրաքանչյուր սոցիալիստական երկրի տնտեսության կոմպլեքսային զարգացում, նրա բնական ռեսուրսների և արտադրական հնարավորությունների լիակատար օգտագործմամբ։ Այսպես, օրինակ, Լեհաստանը դառնում է բարձր զարգացած և բազմաճյուղ մեքենաշինության, գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության երկիր։ Բուլղարիան մասնագիտանում է մեքենաշինության, գունավոր և քիմիական արդյունաբերության ասպարեզում։ Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններն արտադրում են տրակտորներ, ավտոմոբիլներ, էլեկտրաքարշներ, հաս-

տոցներ, գեներատորներ, ռադիոընդունիչներ։ Յուրաքանչյուր սոցիալիստական երկրում ստեղծվել ու զարգանում է իր ներքին շահերի պահանջներից բխող հայրենական մեքենաշինությունը։



Սոցիալիստական երկրների առաջընթացի գործում ոչ պակաս կարևոր նշանակություն ունի նրանց գիտա-տեխնիկական համագործակցությունը, գիտության ու տեխնիկայի բնագավառում առաջավոր երկրների նվաճումների արմատավորումը։ Ահա թե ինչպիսի մասշտաբներ է ընդունել սոցիալիստական երկրների համագործակցությունն այս բնագավառում։ 1948—1960 թվականներին Սովետական Միությունը մյուս սոցիալիստական երկրներին ձրի տրամադրել է շուրջ 29 հազար կոմպլեկտ գիտա-տեխնիկական փաստաթղթեր՝ ժողովրդա-տնտեսական օբյեկտների կառուցման, տարբեր մեքենաների ու սարքավորումների արտադրման համար։ Միաժամանակ ՍՍՌՄ-ը սոցիալիստական երկրներից ստացել է ավելի քան յոթ հազար կոմպլեկտ նման փաստաթղթեր։ Այժմ ՍՍՌՄ-ի 330 գիտահետազոտական կազմակերպություններ համագործակցում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների 405 համասեռ կազմակերպությունների հետ։ Նրանք 3500 թեմաների շուրջ համատեղ հետազոտություններ են կատարում։

Ստեղծվել է միջուկային հետազոտությունների միացյալ ինստիտուտ, որը հսկայական ավանդ է մուծել ատոմային էներգիան սոցիալիստական երկրներում խաղաղ նպատակներով կիրառելու գործում։

Սոցիալիստական համագործակցության մեջ վերացված են ընդհանուր տեխնիկական առաջադիմությունն արգելակող խոչընդոտները։ Գիտա-տեխնիկական ինֆորմացիայի անխափան ու ընկերական փոխանակումն օգնում է նոր արտադրանքը յուրացնելիս տնտեսելու ժամանակն ու միջոցները։ Այսպես, օրինակ, սովետական գիտա-տեխնիկական օգնության շնորհիվ ԳԴՌ-ի արդյունաբերությունը պլանավորված ժամանակից մեկ տարի շուտ յուրացրեց կիսահաղորդիչների արտադրությունը, իսկ Ռոստոկի նավթային կայանի շինարարության ժամանակ տնտեսվեց 25 միլիոն մարկ։ Սովետական Միությունում բետոնային աշխատանքների արտադրության մեջ Չեխոսլովակիայի փորձի կիրառումը 3 անգամ բարձրացրեց արտադրողականությունը։ Նման օրինակները բազմաթիվ են։ Գիտա-տեխնիկական համագործակցությունը հնարավորություն է ընձեռում այսուհետև սոցիալիստական երկրների ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի գծով տեխնիկական ու տնտեսական շատ մեծ պրոբլեմների լուծման, արտադրության առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրական պրոցեսների ավտոմատացման և կոմպլեքսային մեքենայացման համար, նպաստում է՝ բարձրացնելու սոցիալիստական երկրների տնտեսության ընդհանուր-տեխնիկական մակարդակը, աշխատանքի արտադրողականությունը։

Սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցության մեջ կարևոր դեր է խաղում նաև արտաքին առևտուրը, որի ծավալն ամեն տարի ընդլայնվում է։ Օրինակ՝ 1959 թվականի համեմատությամբ, 1965 թվականին այն մեծանալու է մոտ 2 անգամ։ Համաշխարհային սոցիալիստական շուկայի



կարևոր առանձնահատկությունը սոցիալիստական լագերի երկրների արտաքին առևտրի պլանային բնույթն է։

Այսպիսով, սոցիալիստական երկրների տնտեսական համագործակցության նոր ձևերը դառնում են կարևորագույն օրինաչափություն, որոնց շնորհիվ առանձին ազգային տնտեսություններն ավելի են մոտենում իրար։ Եվ, ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, «...զարգանում են ապագայում համաշխարհային կոմունիստական տնտեսություն ստեղծելու տենդենցներ, տնտեսություն, որը միասնական պլանով կկարգավորի հաղթանակած աշխատավորությունը»։

Զարգացման նոր էտապում լայն ծավալ է ստացել սոցիալիստական երկրների կուլտուրական համագործակցությունը, որի շնորհիվ շատ ժողովուրդներ արագորեն հաղթահարում են իրենց կուլտուրական հետամնացությունը, կարճ ժամանակում յուրացնում քաղաքակրթության նվաճումները, հասնում առաջավոր ժողովուրդներին։ Կուլտուրական համագործակցությունը միաժամանակ ազգային կուլտուրաների փոխադարձ հարստացման, ժողովուրդների մերձեցման կարևոր միջոց է։

Գնալով աճում ու բազմազան են դառնում սոցիալիստական երկրների կուլտուրական կապերը, զարգանում են կուլտուրական կյանքի նվաճումների փոխանակման ձևերը, ստեղծագործական սերտ կապեր են ստեղծվում տարբեր կոլեկտիվների միջև։

Սոցիալիստական և կոմունիստական շինարարության հաջող կազմակերպման գործում կարևոր դեր է խաղում նաև փորձի փոխանակությունը։ «Զանազան երկրներում սոցիալիզմի կառուցման պրակտիկայի հիման վրա կուտակվել է սոցիալիստական ամբողջ լագերի կոլեկտիվ փորձը,— ասված է Կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թ. խորհրդակցության Հայտարարության մեջ։— Եղբայրական պարտիաների կողմից այդ փորձի համակողմանի ուսումնասիրությունը, կոնկրետ պայմանների և ազգային առանձնահատկությունների հաշվառմամբ նրա ստեղծագործական կիրառումն ու հարստացումը յուրաքանչյուր սոցիալիստական երկրի զարգացման անվերապահ օրենքն է»։

Մարքս-լենինյան պարտիաների կոլեկտիվ փորձը մեծ ուժ է սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում։ Այն նոր կյանքի ամենատարբեր կողմերի կառուցման պրակտիկայով ստուգված ու հաստատված գիտելիքների գանձարան է՝ տնտեսական, սոցիալ-քաղաքական, գիտա-տեխնիկական և կուլտուրական պրոգրեսի հզոր շարժիչ։ Այդ տեսակետից գնալով աճում է Սովետական Միության կոմունիստական շինարարության փորձի միջազգային նշանակությունը, որի փոխանակությունն էլ, վերջին հաշվով, նոր հասարակարգի կառուցման գործում սոցիալիստական երկրների սերտ համագործակցության ձևերից մեկն է։

Ազատ, սուվերեն ժողովուրդների այս մեծ համագործակցությունն այն տանող հրթիռն է, որը նրանցից յուրաքանչյուրին նույն դարաշրջանի տարբեր հատվածներում դուրս կբերի կոմունիզմի ուղեծիր։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾ ՈՒԺ Է

Սերյոժան, որի 15 տարին նոր է լրացել, պատասխանում է իր ընկերների հարցերին: Ուսուցիչներն էլ հուզված են, բայց արտաքուստ հանգիստ: Պատասխանի համար այսօր գնահատականներ չեն դնելու: Որքա՞ն կուզենար հինգի պատասխանել, հատկապես, այս անգամ:

—Ինչի՞ համար ես ուզում ընդունվել կոմերիտմիության շարքերը:

Սերյոժան զարմանում է: Ի՞նչ ասել է թե ինչու: Ինչո՞ւ են ընդունվում բոլորը, ինչի համար ընդունվեց Պավել Կորչագինը, ինչի՞ համար իրենց կյանքը զոհաբերեցին Ալեքսանդր Մատրոսովը, Սերգեյ Տյուլենինը...

—Ես ուզում եմ ընդունվել Լենինյան կոմերիտմիության շարքերը, որովհետև...

Սերյոժան, որի այտերը հուզմունքից շառագունել էին, անհամարձակ նայում է իր ընկերներին, նա շատ բան է ուզում ասել, բայց բառեր չի գտնում, իսկ ընկերներն սպասում են: Ուշադիր հետևում են Սերյոժային ուսուցիչները:

—Որովհետև, որովհետև... կմկմում է նա և ապա արդեն համարձակ,— որովհետև ուզում եմ լինել այնպիսին, ինչպիսին կոմերիտականներն են:

Ուսուցիչները մեղմ ժպտում են: Գլխով հավանության նշաններ են անում նաև ընկերները: Սերյոժան թեթևացած շփում է քրտնած ճակատը: Հենց այդ պահին հետևի նստարաններից լսվում է մեկի ձայնը.

— Իսկ ինչպիսի՞ն են կոմերիտականները...

—Ինչպես թե ինչպիսին,— հանկարծակի եկած զայրանում է Սերյոժան,— միթե՞ չգիտեք, ինչպիսին են նրանք:

Այլևս պատասխանելու հարկ չկա, բոլոր ժողովականները միաձայն հաստատում են, որ գիտեն:

Ժողովը վերջանում է: Տուն է գնում Սերյոժան, նույն կարմիր վզկապն է քամուց փողփողում նրա կրծքին, փողոցը, տները, ծառերը նույնպես նույնն են, փոխվել է միայն ինքը՝ Սերյոժան. նա արդեն կոմերիտական է:

Այսպես է լինում միլիոնավոր պատանիների ու աղջիկների հետ: Այսպես է եղել տասնյակ միլիոնավոր սովետական մարդկանց հետ, որոնք այսօր արդեն կոմերիտական չեն: Թեև ժամանակը ձյունով է ծածկել նրանցից շատերի գլուխը, բայց երբ նրանք հիշում են անցած-գնացած անկրկնելի տարիները, կոմերիտական առօրյան, նրանց աչքերում փայլում է նույն պատանեկան ավյունը:

Առաջին կոմերիտական հանձնարարությունը, առաջին անհամարձակ ելույթը ժողովում, քննադատության առաջին կիրքը, ինքնաքննադատության առաջին երկչոտ համարձակությունը: Իսկ այնուհետև... այնուհետև լենինյան կենսահորդ օրեր, տոկունություն և կամքի փորձություն, հաղթանակների անկոտրում ձգտում, հաղթանակներից հետո՝ ցնծություն, անհաջողությունների ժամանակ՝ վաղանցիկ տխրություն, զայրույթ...

Այնուհետև աստիճանաբար, հետևողականորեն ձևավորվում են մարդկային այն լավագույն հատկությունները, որոնք առաքինի, վսեմ, լենինյան են դարձնում մարդուն, որոնք օգնում են պայքարելու ու հաղթանակելու: Նրանք դառնում են հայրենասեր, պարտիայի գործին նվիրված, ուղղամիտ, ազնիվ, ուժեղ կամքի տեր...

Անցնում են տարիներ: Սերյոժան դառնում է Սերգեյ, որն իր էությամբ նոր մարդ է, կյանքի ակտիվ կառուցող:

***

Միշտ էլ պարտիան ուշադրության կենտրոնում է պահել երիտասարդների կոմունիստական դաստիարակության հարցերը: Մեծ Լենինը դեռևս ՌԿԵՄ Համառուսաստանյան III համագումարում իրեն հատուկ խորաթափանցությամբ բնորոշեց կոմերիտմիության վիթխարի դերը նոր հասարակարգի կառուցման գործում:

Մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության համար մղված պայքարի առաջին շարքերում միշտ էլ ընթացել ու ընթանում են փառապանծ կոմերիտմիությունը, սովետական միլիոնավոր պատանիներն ու աղջիկները: Արդեն պատմություն դարձած որքան սխրանքներ կան, որոնք արևավառ ջահերի պես փարոսում են կոմերիտմիության անցած ուղին: Որքա՞ն սխրանքներ են կատարվում այսօր:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարում Ն. Ս. Խրուշչովը խոսելով կոմերիտմիության մասին, ասաց. «Մեր հասարակության կյանքում մեծ նշանակություն ունի կոմերիտմիության՝ սովետական երիտասարդության մարտական կազմակերպության գործունեությունը: Երիտասարդությունը, ընկերնե՛ր, մեր փոխարինողն է, նա մեր երկրի ապագան է: Նա այն ակտիվ ստեղծագործական ուժն է, որ ընդունակ է լեռներ շրջել մեր իդեալների համար մղվող պայքարում: Հարկավոր է, որ մենք ամենօրյա, հիրավի հայրական ուշադրություն նվիրենք կոմերիտմիության դաստիարակությանը»:

Վերջերս Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը քննության առավ կոմերիտմիության նկատմամբ պարտիական ղեկավարության ուժեղացման հարցը:

Հանգամանորեն քննության առնելով ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը, պլենումը գոհունակությամբ նշեց Սովետական Հայաստանի հարյուր հազարավոր պատանիների ու աղջիկների ակտիվ մասնակցությունը պարտիայի առաջադրած խնդիրների իրականացման համար մղվող համաժողովրդական պայքարին:

Արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում, կառույցներում, գիտության, կուլտուրայի ու արվեստի բոլոր բնագավառներում կոմերիտականները, երիտասարդ բանվորները, կոլտնտեսականներն ու մասնագետները աշխատանքային արիության հիանալի օրինակ են ցույց տալիս: Ավելի քան հիսուն հազար պատանիներ ու աղջիկներ ընդգրկված են մեր ժամանակի հիանալի շարժման՝ կոմունիստական աշխատանքի

կոլեկտիվների և հարվածայինների մրցության մեջ։ Արդյունաբերության մեջ, տրանսպորտում և շինարարական օբյեկտներում ներկայումս 1340 կոլեկտիվ, ցեխ և բրիգադա պայքարում են այդ բարձր կոչմանն արժանանալու համար։ Նրանցից ավելի քան 250-ը արժանացել են այդ կոչմանը։

«Ապրել ու աշխատել կոմունիստաբար, մեկը բոլորի, բոլորը մեկի համար» թևավոր լոզունգը դարձել է ռեսպուբլիկայի տասնյակ հազարավոր պատանիների ու աղջիկների նշանաբանը, նրանց կյանքի իմաստը։ Վերցնենք, օրինակ, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի այն ցեխը, որը վերջերս կոչվեց ՀամԼԿԵՄ XIV համագումարի անվամբ։ Այդ ցեխում աշխատող բոլոր հիսուն բանվորներն էլ ունեն միջնակարգ կրթություն, 13-ը հեռակայում են բուհերում։ Արժանանալով կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման, նրանք հանդես են եկել բանվորական տեղում արտադրության կուլտուրայի բարձրացման նախաձեռնությամբ։ Ցեխն ունի կարմիր անկյուն, ստանում է յոթ անուն լրագիր ու ամսագիր, կազմակերպվել ու հաջող են գործում սպորտային մի քանի խմբակներ։ Ցեխի կոլեկտիվի բոլոր անդամները սիստեմատիկաբար գերակատարում են արտադրական պլանները։

Կոմունիստական աշխատանքի հիանալի օրինակ է ցույց տալիս Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի երկրորդ ցեխի մանածագործների բրիգադան, որի ղեկավարն է Շավարշ Ոսկանյանը։ Արդեն երեք տարի է, ինչ բրիգադայի բոլոր անդամները սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են արտադրական պլանները։ 1961 թվականին նրանք պլանից դուրս երկրին տվին տասը հազար մետր բարձրորակ կտոր։ Հանդես գալով դազգահների ռացիոնալ օգտագործման և տեխնոլոգիական պրոցեսների ճիշտ կիրառման նախաձեռնությամբ, բրիգադան մեկ դազգահի արտադրողականությունը ժամում բարձրացրել է ութ տոկոսով։ Բրիգադայի նախաձեռնությամբ կոմբինատում լայնորեն տարածվել է դազգահների միջվերանորոգման ժամկետը երեք ամսով երկարաձգելու շարժումը, որը մեծ չափով նպաստում է արտադրողականության բարձրացմանը։ Բրիգադայի 11 անդամներից ութը ունեն միջնակարգ կրթություն, երեքը սովորում են թեթև արդյունաբերության տեխնիկումի հեռակա բաժնում։ Նրանք բոլորն էլ կոմերիտականներ են, իսկ բրիգադավարը պարտիայի անդամության թեկնածու է. նրանք ակտիվ մասնակցում են հասարակական աշխատանքներին։ Մարի Քալանթարյանը կոմբինատի կոմերիտական կազմակերպության կոմիտեի անդամ է, Մարի Ջուլյանը՝ կոմերիտական խմբի կազմակերպիչ. վեցը կոմերիտական վերահսկիչ են, երկուսը՝ «Ձեզ համար կանայք» թերթի խմբկոլի անդամներ, իսկ Իսկուհի Քորմուսոյանը ղեկավարում է «Երիտասարդ մայրերի» ակումբի գործունեությունը։ Նրանք իսկական ընկերներ ու բարեկամներ են և՛ աշխատանքի ժամանակ, և՛ դրանից դուրս։ Խորապես մարդկային բարեկամությունն օգնում է նրանց գեղեցիկ ու հետաքրքրական ձևով անցկացնելու իրենց ազատ ժամանակը։ Բրիգադան վերցրել է №92 դպրոցի պիոներական դրուժինայի շեֆությունը։

Սխրանքով լի է գյուղական երիտասարդության առօրյան։ Ռեսպուբլիկայում լայնորեն տարածվել է Շամշադինի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսության երիտասարդ եգիպտացորենագործների, Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի խաղողագործների, Կալինինոյի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսության անասնաբույծների աշխատանքի առաջավոր փորձը։

Աշխատանքը գաղափարական դաստիարակության հիմնական գործոնն է։



Յուրաքանչյուր մարդու գործունեության գնահատման չափանիշը պետք է լինի նրա վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Նոր, կոմունիստական վերաբերմունք դեպի հանրօգուտ աշխատանքը, ահա մեր երիտասարդությանը բնորոշող հիմնական գիծը։ Միջնակարգ դպրոցների բազմահազար շրջանավարտներ հոժարակամ և ուրախությամբ գնում են աշխատելու արդյունաբերության, շինարարության, կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ։ Եվ դա արդեն մասսայական երևույթ է դարձել։ Կրթությունն օգնում է երիտասարդությանն արագ կերպով տիրապետելու նոր տեխնիկային, բարձրացնելու արտադրության կուլտուրան, միաժամանակ տիրապետելու մի քանի մասնագիտությունների։

1959 թվականին միջնակարգ դպրոցը մեդալով ավարտելուց հետո, կոմերիտական Իգոր Թումանյանը աշխատանքի ընդունվեց Երևանի շինարարական № 3 տրեստում որպես հյուսնի օգնական։ Եվ արդեն երեք տարի է, ինչ նա աշխատում է. զգալիորեն բարձրացել է նրա աշխատանքային որակավորումը. նա այժմ տրեստի կոմերիտական կազմակերպության կոմիտեի քարտուղարն է։ Անցյալ տարի Ղափանի միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո Քաջարանշինի երկրորդ տրեստի շինվարչությունում իր ընկերուհիների հետ աշխատանքի անցավ Բելա Սիմոնյանը։ Նա շուտով դարձավ ծեփագործ, իր գործի վարպետը և օրական առաջադրանքները կատարում է 115—125 տոկոսով։

Բազմաթիվ նման օրինակներ կարելի է բերել ռեսպուբլիկայի մյուս քաղաքներից ու գյուղերից։ Դժվար է գերագնահատել այս երևույթի նշանակությունը։ Աշխատանքը, ընդ որում, բանվորի և կոլտնտեսականի աշխատանքը դարձել են պատվի գործ։

Նշելով երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործում ձեռք բերված հաջողությունները, չի կարելի անտեսել այդ բնագավառում պարտիական և կոմերիտական կազմակերպությունների գործունեության մեջ տեղ գտած թերությունները։

Դեռևս ռեսպուբլիկայում և, մասնավորապես, Երևանում հանրօգուտ աշխատանք չեն կատարում շատ երիտասարդներ, ինչպես և կոմերիտականներ։ Երիտասարդներին աշխատանքով ապահովելու, նրանց աշխատանքային դաստիարակությունը կազմակերպելու հարցերը հաճախ դուրս են մնում պարտիական, սովետական և տնտեսական օրգանների տեսադաշտից, միշտ չէ, որ վերջիններս անհրաժեշտ պատասխանատվություն և հետևողականություն են հանդես բերում այդ գործում։ Դեռևս կան զգալի թվով պատանիներ ու աղջիկներ, որոնք այս կամ այն պատճառաբանությամբ խուսափում են շարքային, արտադրական «սև» աշխատանքից, ձգտելով «թեթև», «մաքուր» գործի։

Ահա Երևանի խոշոր գործարաններից մեկը։ Այստեղ աշխատողների բացարձակ մեծամասնությունը կոմերիտական հասակի երիտասարդներ են, համարյա բոլորն ունեն միջնակարգ և բարձրագույն կրթություն։ Ինչե՞ր ասես չէր կարելի անել այստեղ, եթե գործարանի ղեկավարությունը և պարտիական կազմակերպությունը անհրաժեշտ ուշադրություն դարձնեին երիտասարդ բանվորների դաստիարակության հարցերին, իսկական հոգատարություն հանդես բերեին նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման նկատմամբ։ Չէ որ ղեկավարի հմտությունից, նրանց վերաբերմունքից շատ բան է կախված։

Այդ գործարանի ղեկավարներին չի հետաքրքրել այն հարցը, թե ինչո՞ւ ամբողջ 1961 թվականի ընթացքում յուրաքանչյուր 60 երիտասարդ բանվորներից միայն մեկն է հանդես եկել ռացիոնալիզատորական առաջարկությամբ, երբ ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկություններում նորարար է յուրաքանչյուր չորսից կամ հինգից մեկը։ Լուրջ մտահոգության և անհանգստության տեղիք է տալիս բանվորական ուժի մեծ չափերի հասնող հոսունությունը։ Այստեղ երկու տարում երիտասարդ բանվորների համարյա կեսը ազատվել է աշխատանքից, փոխարինվել ուրիշներով։ Պատահակա՞ն է արդյոք այն, որ վերջին երկու տարիների ընթացքում գործարանում աշխատող ավելի քան 500 կոմերիտական հասակի երիտասարդ բանվորներից ՀամԼԿԵՄ շարքերն են ընդունվել միայն 18-ը։

Լուրջ թերություններ կան նաև գյուղական երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործում։ Այդ երիտասարդության մի մասի մոտ դեռևս նկատվում են գյուղից հեռանալու, քաղաքներում աշխատանքի անցնելու տրամադրություններ։ Կոլտնտեսությունների, սովխոզների առանձին աշխատողներ, փաստարկելով այդ, չեն փորձում խորանալ այդ երևույթի պատճառների մեջ, աններելի պասսիվություն են հանդես բերում, չեն նկատում մեր հասարակության կյանքում տեղի ունեցող արմատական փոփոխությունները։ Սովխոզներում և, հատկապես, կոլտնտեսություններում անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվում գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։

Ծանր ֆիզիկական և ցածր արտադրողական աշխատանքը, չնայած անհրաժեշտ բոլոր պայմանների առկայության, դեռևս դանդաղ է փոխարինվում մեքենայականով։ Կոնսերվատիզմը, հնի, իր դարն ապրածի նկատմամբ անքննադատ վերաբերմունքը արտահայտվում է, օրինակ, քառակուսի-բնային ցանքերի դանդաղ ընդարձակման, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, գյուղատնտեսական տեխնիկայի ոչ ռացիոնալ օգտագործման և այս բնույթի զանազան այլ ձևերով։ Մինչդեռ յոթնամյա և միջնակարգ կրթություն ստացած երիտասարդները, բնականաբար, ձգտում են բարձր արտադրողական աշխատանքի, դժվար են համաձայնում բահի և քեթմենի՝ դեռևս պահպանվող սովորույթի հետ։ Ավելին, մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտեսության ղեկավարները և պարտիական կազմակերպությունների քարտուղարները անհրաժեշտ հոգատարություն հանդես չեն բերում երիտասարդության պահանջների ու կարիքների նկատմամբ, չեն մտահոգվում նրա կուլտուրական հանգիստն ու ժամանցը խելացիորեն կազմակերպելու, արտադրական որակավորումը բարձրացնելու, լավագույն երիտասարդ աշխատողներին համարձակորեն առաջ քաշելու հարցերով։

Մի՞թե դրանով չպետք է բացատրել, որ, օրինակ, Կամոյի շրջանի Սարուխանի խոշոր կոլտնտեսությունից միայն անցյալ տարի հեռացել են մոտ հիսուն կոմերիտականներ։ Այդպիսին է վիճակը Ալավերդու շրջանի Ուզունլար, Հոկտեմբերյանի շրջանի Մրգաշատ գյուղերի կոլտնտեսություններում, Էջմիածնի շրջանի Վ. Ի. Լենինի անվան սովխոզում և մի շարք այլ տնտեսություններում։

Այս փաստերը լրջորեն պետք է անհանգստացնեն պարտիական կազմակերպություններին, պարտիայի քաղկոմներին ու շրջկոմներին։ Չպետք է մոռանալ, որ հանրօգուտ աշխատանքի ոլորտից, արտադրական կոլեկտիվնե-



րից դուրս մնացած երիտասարդների դաստիարակությունը կապված է լուրջ դժվարությունների հետ։

Որպես կանոն նրանք մասնակից չեն արվում կազմակերպվող քաղաքական-մասսայական միջոցառումներին, դուրս են մնում պարտիական և կոմերիտական կազմակերպությունների ազդեցությունից։ Նրանց մի մասը հեշտությամբ ենթարկվում է հակահասարակական տարրերի ազդեցությանը, բռնում է հանցագործության կործանարար ուղին։ Բոլորովին պատահական չէ, որ վերջին տարիներս զանազան հանցագործությունների համար դատապարտված երիտասարդների բացարձակ մեծամասնությունը ներգրավված չի եղել հանրօգուտ աշխատանքում։

Յուրաքանչյուր ձեռնարկությունում, կառույցում, կոլտնտեսությունում և սովխոզում, ակտիվ աշխատանքում ոչ միայն վճռվում է պլանի կատարման բախտը, այլև աշխատանքային պրոցեսում դաստիարակվում է մարդը, կոփվում նրա բնավորությունը։ Պարտիական կազմակերպությունը պատասխանատու է կոլեկտիվում աշխատող յուրաքանչյուր մարդու համար։ Նրա խնդիրն է քաղաքական-մասսայական և կազմակերպական աշխատանքով մոբիլիզացնել բոլորին, լավ իմանալ աշխատողների տրամադրությունները, զգայուն վերաբերվել նրանց աճող պահանջների ու կարիքների նկատմամբ։

Երիտասարդության աշխատանքային դաստիարակության գործը առավել կարևոր է դառնում կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Այժմ, երբ մեր երկրի բոլոր աշխատավորները քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվության պայմաններում իրականացնում են ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, սովետական երիտասարդության աշխատանքային դաստիարակության հարցերը պետք է մշտապես գտնվեն պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Ռեսպուբլիկայում կոմերիտական քաղաքական լուսավորության ցանցում ներգրավված են մեծ թվով կոմերիտականներ ու արտամիութենական երիտասարդներ։ Տարեցտարի ավելի է ընդարձակվում այդ ցանցը։ Վերջին ուսումնական տարում քաղաքական ուսուցման մեջ, նախորդ տարվա համեմատությամբ, ներգրավված էր տասը հազարով ավելի մարդ։ Պրոպագանդիստների բացարձակ մեծամասնությունը կոմունիստներ են։ Երիտասարդության համար հաճախակի կազմակերպվում են դասախոսություններ, զեկուցումներ, թեմատիկ երեկոներ, հանդիպումներ, որոնք նպաստում են նրա կոմունիստական դաստիարակությանը։

Սակայն կոմերիտականների և երիտասարդության շրջանում տարվող քաղաքական աշխատանքում մեզ մոտ դեռևս կան խոշոր թերություններ։

Դեռևս գաղափարական պատշաճ մակարդակի վրա չի գտնվում պրոպագանդիստական աշխատանքը։ Շատ հաճախ կոմերիտական քաղլուսցանցում առաջնությունը տրվում է ձևին և ոչ բովանդակությանը։ Պարտիական կազմակերպությունները, կոմերիտական օրգանները անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում այդ հարցին, մոռանալով, որ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքն ինքնանպատակ չէ, որ այն կոչված է հարստացնելու կոմերիտականների ու երիտասարդության քաղաքական գիտելիքները, զինելու նրանց մարքս-լենինյան գիտությամբ, ընդլայնելու պատանիների ու աղջիկների քաղաքական մտահորիզոնը։

Այնուհետև. Նորմալ չի գործում կազմակերպված քաղխմբակների զգալի

մասը. պարապմունքները հաճախակի ձախողվում են ունկնդիրների բացակայության հետևանքով կամ պրոպագանդիստի մեղքով։ Բազմաթիվ քաղխմբակների պարապմունքների ներկա է լինում ունկնդիրների 40—50 տոկոսը միայն։ Պարտիական կազմակերպություններին քիչ է անհանգստացնում այսպիսի վիճակը։ Նրանցից շատերին ավելի շատ հետաքրքրում է հարցի վիճակագրական կողմը. այսքան խմբակ է կազմակերպված, այսքան մարդ է ընդգրկված և այլն։ Ձևի և հաշվետվության համար երբեմն անդրադառնալով այդ հարցին, առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ չեն խորանում կատարվող աշխատանքի բովանդակության մեջ, բավարարվում են կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների հասցեին ուղղված կշտամբանքներով, անհրաժեշտ օգնություն չեն կազմակերպում նրանց աշխատանքը բարելավելու համար։

Այսպես, ընթացիկ տարվա փետրվար ամսին Աբովյանի շրջանի Արևշատ գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ս. Շամոյան) քննության առնելով երիտասարդության քաղաքական ուսուցման հարցը, արձանագրեց, որ կոմերիտական քաղխմբակի աշխատանքում կան թերություններ։ Կազմակերպությունն այդ առթիվ ընդունեց որոշում, որտեղ մի քանի անգամ ընդգծվում էր «վերակառուցել» բառը։ Եվ «վերակառուցվեց»։ Պարտիական կազմակերպության ժողովից հետո քաղխմբակը դադարեց գործելուց, կոլտնտեսության 33 կոմերիտականներ դուրս մնացին ուսուցումից։

Դեռևս նեղ են կոմերիտականների և երիտասարդության շրջանում տարվող քաղաքական-պրոպագանդիստական աշխատանքի շրջանակները։ Երիտասարդության մի զգալի մասը չի ներգրավվում քաղաքական-մասսայական միջոցառումներին։ Եվ ստացվում է այնպես, որ աշխատելով միևնույն, սահմանափակ թվով մարդկանց հետ, կոմերիտական կազմակերպությունները մոռացության են տալիս երիտասարդության լայն շրջանների վրա իրենց ազդեցությունը տարածելու և ուժեղացնելու անհրաժեշտությունը։ Հեշտ է, իհարկե, աշխատել ակտիվիստների, կազմակերպության հետ սերտորեն կապված երիտասարդների հետ։ Բայց չպետք է մոռանալ, որ քաղաքական դաստիարակության ավելի մեծ կարիք զգում են այն երիտասարդները, որոնք դուրս են պարտիական և կոմերիտական կազմակերպությունների ազդեցությունից։

Ներելի՞ է արդյոք այն փաստը, որ Կամոյի շրջանում կոմերիտականների կեսից ավելին ընդգրկված չէր կոմերիտական քաղուսցանցում, իսկ Երևանի շինարարական № 2 տրեստում աշխատող 450 երիտասարդներից միայն 19-ն էր ուսումնասիրում ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը։

Վերջապես մյուս թերությունն այն է, որ որոշ տեղերում անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում դասախոսական պրոպագանդային։ Օրինակ, էլեկտրասարքերի գործարանում վերջին երկու տարում կազմակերպվել է ընդամենը մեկ դասախոսություն, այն էլ փողոցային երթևեկության կանոնների մասին։

Հասկանալի է, որ երիտասարդության քաղաքական դաստիարակության նկատմամբ նման վերաբերմունքը չի կարող նպաստել պարտիայի առաջադրած խնդիրների հաջող լուծմանը։

Քաղաքական աշխատանքը պետք է նպատակամղվի նոր մարդու դաստիարակությանը, մարդ, որի գործունեության և ապրելակերպի հիմքում դրվում են բոլոր ժամանակների ամենահումանիստական օրենսգրքի՝ կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի ոգևորող սկզբունքները։



Կոմունիզմի մարդը մարդկային առաքինությունների մարմնացումն է։ Նա, ամենից առաջ, իր մեծ երկրի հայրենասերն է, անհունորեն նվիրված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի անմահ գործին։ Ինտերնացիոնալիստ է նա, որի սրտին հավասարապես մոտ են բոլոր ազգությունների աշխատավորները, նա Սովետական Միության ժողովուրդների անխախտ եղբայրության ջատագովն է։ Այդ մարդը աշխատասեր է, տքնող, նրա կյանքի գերագույն իմաստը իր ժողովրդին առավել չափով պիտանի լինելն է, նրան անշահախնդիր ծառայելը։ Նա չի ընկրկում դժվարությունների առաջ, համարձակորեն հաղթահարում է դրանք, չի հաշտվում թերությունների հետ, պայքարում է դրանք վերացնելու համար։ Նա բազմակողմանիորեն զարգացած է, կիրթ. ունի բարձր կուլտուրա։ Նրա նշանաբանն է՝ «Մարդը մարդուն ընկեր է, բարեկամ և եղբայր»։

Այս սկզբունքները պետք է դրվեն երիտասարդության շրջանում տարվող բազմաբնույթ ու բազմակողմանի դաստիարակչական աշխատանքի հիմքում, հանդիսանան կոմերիտական կազմակերպությունների գործունեության առանցքը։ Եվ, անկասկած, ռեսպուբլիկայի բազմաթիվ կոմերիտական կազմակերպություններ խոշոր գործ են կատարում այդ ուղղությամբ։

Անառարկելի է, որ լուրջ հաջողությունների կարող են հասնել այն սկզբնական կոմերիտական կազմակերպությունները, որոնք կազմակերպորեն ամուր են, որտեղ ներկոմերիտական աշխատանքը դրված է պահանջվող բարձրության վրա։ Սակայն ներկոմերիտական աշխատանքի բարելավման, կոմերիտական ժողովների բովանդակության բարձրացման, կարգապահության ամրապնդման հարցերը հաճախ վրիպում են պարտիական կազմակերպությունների ուշադրությունից։ Մեզ մոտ կան զգալի թվով ԼԿԵՄ սկզբնական կազմակերպություններ, որոնք ամիսներով միջոցառումներ չեն անցկացնում, խախտվում է կոմերիտական ժողովների հրավիրման սահմանված կարգը, կազմակերպության անդամների զգալի մասը պասսիվ մասնակցություն է ունենում կոմերիտական աշխատանքներին, պատասխանատվություն չի զգում գործերի վիճակի համար։

Մի շարք կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում այս կարգի թերությունների առկայությունը պետք է բացատրել ամենից առաջ նրանով, որ ինչպես պարտիական կազմակերպությունները, այնպես էլ կոմերիտմիության քաղկոմներն ու շրջկոմներն անհրաժեշտ կարևորություն չեն տալիս կոմերիտական միջոցառումների ընտրությանը, դրանց բովանդակությանը։ Հասկանալի է, որ միայն կոմերիտական կարգապահության ուժով հնարավոր չէ ապահովել ՀամԼԿԵՄ անդամների ակտիվ մասնակցությունը կազմակերպվող միջոցառումներին։ Վատ նախապատրաստված կոմերիտական ժողովները, ինչպես և անհետաքրքիր միջոցառումները, բացասաբար են անդրադառնում երիտասարդության քաղաքական ակտիվության բարձրացմանը, երբեմն էլ օգնելու փոխարեն, խոչընդոտում են կոմերիտականների դաստիարակության գործին։

Կոմերիտական ժողովները, թեմատիկ երեկոները, հավաքները, երիտասարդության համար կազմակերպվող դասախոսությունները, զեկուցումները պետք է լինեն այնքան հետաքրքրական, որպեսզի յուրաքանչյուր կոմերիտա-

կան ու երիտասարդ շտապի առաջինը ներկա լինել, տեղ բռնել առաջին շարքերում, ոչ մի բառ բաց չթողնել։ Իսկ դրա համար հեռու գնալ հարկավոր չէ։ Մեր կյանքը, կոմերիտական շինարարության առօրյան ամեն օր, ամեն ժամ ծնում են բոլորին հետաքրքրող և հուզող բազմաթիվ կենսական հարցեր։

Պետք է միայն ճիշտ ընտրել թեմատիկան, խնամքով ու բազմակողմանիորեն նախապատրաստել միջոցառումը, շնորհքով ղեկավարել այն։ Պատահում է և այսպես. կոմերիտական կազմակերպությունը կոնկրետ որոշում է ընդունում, շեֆական պարտավորություններ ստանձնում, բայց ԼԿԵՄ կոմիտեի անհետևողականության պատճառով այդ ամենը մնում է թղթի վրա։ Կոմերիտականը, որն ակտիվ մասնակցել է այդ որոշման կամ պարտավորության ընդունմանը, այդպիսի դեպքերում աստիճանաբար կորցնում է հետաքրքրությունը հարցերի քննարկման նկատմամբ, այլևս կարևորություն չի տալիս ընդունված որոշումներին։

Պարտիական կազմակերպությունները, ԼԿԵՄ քաղկոմներն ու շրջկոմները, ինչպես նաև Հայաստանի կոմերիտմիության Կենտկոմը պետք է լրջորեն մտահոգվեն կոմերիտականների քաղաքական ակտիվության բարձրացման, ներկոմերիտական աշխատանքի բարելավման հարցերով։

Պետք է միշտ հիշել, որ կազմակերպորեն ամրակուռ սկզբնական կոմերիտական կազմակերպությունն է միայն ունակ հաջողությամբ իրագործելու երիտասարդության կոմունիստական դաստիարակության պատվավոր ու պատասխանատու խնդիրը։

Կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկը ՀամԼԿԵՄ շարքերի սիստեմատիկ համալրումն է։ Կոմերիտմիության շարքերի աճի հարցով պետք է պարբերաբար զբաղվեն ԼԿԵՄ կոմիտեները և պարտիական կազմակերպությունները։

Կոմերիտմիության գործունեության հաջողությունը պայմանավորված է պարտիական ղեկավարությամբ։ Կյանքը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր պարտիական կազմակերպությունները հմտորեն են իրականացնում ղեկավարությունը կոմերիտմիության նկատմամբ, այդ գործը համարում են իրենց կարևորագույն պարտականություններից մեկը, այդտեղ կոմերիտական կազմակերպությունները հաջողությամբ են լուծում իրենց առջև դրված խնդիրները։

Կարելի է բերել դրական շատ օրինակներ ՀԿՊ Կիրովականի քաղաքային կոմիտեի գործունեությունից։ Ահավասիկ մեկը։ Քաղաքի կոմերիտական կազմակերպությունը լուրջ դժվարությունների էր հանդիպում կոմերիտական հարվածային կառույցները որոշակի թվով երիտասարդներ գործուղելիս։ Կոմերիտականները և երիտասարդները հաճախ հրաժարվում էին աշխատել այդ կառույցներում, որովհետև այնտեղ չէին ստեղծված նույնիսկ տարրական անհրաժեշտ պայմաններ, մանավորապես երիտասարդության հանգստի կազմակերպման համար։ Չէին լուծվում նաև մի շարք այլ կենսական հարցեր։ Պարտիայի քաղաքային կոմիտեն ժամանակին նկատեց այդ։ Հարցը, ինչպես հարկն է, նախապատրաստելուց հետո քաղկոմում հրավիրվեց տնտեսական ղեկավարների և սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների խորհրդակցություն՝ նվիրված կոմերիտականների շեֆական պարտավորության կատարմանը։ Շուտով վերացան տեղ գտած թերությունները, շտկվեցին սխալները։ Իրականացվեցին մի շարք այլ միջոցառումներ։ Եվ մոտ 1250 պատանիներ ու աղջիկներ, այդ թվում՝ միջնակարգ դպրոցների հարյուրավոր շրջանավարտներ, մեկնեցին կառույցները, ուր և հաջողությամբ աշխատում են հիմա։



Բայց այդպես չի վիճակը մի շարք ուրիշ պարտիական կազմակերպություններում։ Կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի հարցերը հազվադեպ են քննարկվում, աշխատանքի այդ բնագավառը երբեմն անուշադրության է մատնվում։

Հաճախ կոմերիտական հարցերը օրակարգում նախատեսվում են ձևականության համար, չեն նախապատրաստվում ինչպես հարկն է, այդ առթիվ ընդունում են գործին ոչնչով չօգնող որոշումներ։ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի գլխավոր էներգետիկի բաժնում, ուր աշխատում են մոտ 50 կոմերիտականներ, կոմերիտական կազմակերպությունը վատ էր աշխատում։ Բաժնի պարտբյուրոն անցյալ տարվա հոկտեմբերին լսեց կոմերիտական կազմակերպության բյուրոյի քարտուղարի հաղորդումը՝ գործերի վիճակի մասին և ընդունեց հետևյալ որոշումը. «...բաժնի ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար ընկ. Զուխաջյանը ինքնահոսի մատնելով գործը, ձախողել է կոմերիտական աշխատանքը։ Բյուրոն հանձնարարում է ընկ. Զուխաջյանին, որպեսզի նա վերակառուցի և թարմացնի աշխատանքը»։ Բնական է, որ այդպիսի որոշումը գործին օգնել չէր կարող և այդ որոշումից հետո կոմերիտական կազմակերպության գործունեության մեջ էական տեղաշարժեր չկատարվեցին։

ՀԿՊ Թալինի, Աշտարակի և մի քանի այլ շրջկոմներում հաճախակի քննության է առնվում կոմերիտմիության նկատմամբ պարտիական ղեկավարության հարցերը, ընդունվում են ծավալուն որոշումներ, որոնց կատարմանը, սակայն, ոչ ոք չի հետևում, որի հետևանքով էլ դրանք մնում են թղթի վրա։ Վերջերս կատարված ուսումնասիրությունները ցույց տվին, որ այդ շրջաններում պարտիայի շրջկոմների որոշումներից մի քանիսը նույնիսկ քննության չեն դրվել այն սկզբնական պարտիական կազմակերպություններում, որոնց աշխատանքին վերաբերում են դրանք։ Որոշումների ընդունումից հետո էլ համարյա ոչինչ չի արվում երիտասարդության դաստիարակության գործում հայտաբերված և արձանագրված թերությունների վերացման ուղղությամբ։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը ՀԿՊ քաղկոմների ու շրջկոմների և բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց այդ գործում տեղ գտած թերությունների անհապաղ վերացման վրա, մշակեց անհրաժեշտ միջոցառումներ երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործը արմատապես բարելավելու համար։

ՍՏ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական օրգանների
բաժնի վարիչի տեղակալ

---

## ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Արտադրության կոմպլեքսային ավտոմատացումը և մեքենայացումը սոցիալիստական աշխատանքը աստիճանաբար կոմունիստական աշխատանքի վերածելու նյութական հիմքն են և խոշոր նշանակություն ունեն աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի և արտադրության կուլտուրայի բարձրացման համար։

Այդ լավ են ըմբռնել Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի կոմունիստները, որոնք համառ ջանքեր են գործադրում՝ անընդհատ կատարելագործելու և տեխնիկապես վերազինելու արտադրությունը։ Անցած մեկ և կես տարում շահագործման են հանձնվել արտադրական նոր կարողություններ (յուրացվել է դիցիանդիամիդի, կորունդի ալեքսանդրիտ տեսակի արտադրանքը, կենտրոնական քիմիական լաբորատորիայում հաջողությամբ ստացվում է ցիկլոհեքսանի լուսաքիմիական նիտրոզացմամբ կապրոլակտամ), նշանակալից գործ է կատարված նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման, գործող սարքավորումների մոդեռնացման, աշխատատար առանձին պրոցեսներն ու հանգույցները ավտոմատացնելու և մեքենայացնելու ուղղությամբ։ Մեր ձեռնարկության կյանքում մեծ իրադարձություն էր բնական գազի օգտագործումը։ Դրա շնորհիվ առանձին ցեխերում (կարբիդի, չրի գոլորշու) զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, իջել արտադրական ծախսերը, զգալի չափով պակասել ձեռքի աշխատանքը։

Անցյալ տարի կոմբինատի կոլեկտիվը պատվով կատարեց իր սոցիալիստական պարտավորությունները, կոլտնտեսություններն ու սովխոզներն ստացան մեծ քանակությամբ պարարտանյութեր և քիմիկատներ։

Արտադրության տեխնիկական առաջադիմության հարցերը մշտապես գտնվում են կոմբինատի պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնում։

Գործի հաջողությունը մեծ չափով պայմանավորված է նրանով, թե ինչպես է կազմված տեխնիկական-կազմակերպական միջոցառումների պլանը։ Որպես կանոն, այդ պլանի մշակմանը մենք լայնորեն մասնակից ենք դարձնում ինժեներա-տեխնիկական աշխատողներին, առաջավոր բանվորներին, պարտիական-տնտեսական ակտիվին։ Ապա պլանի նախագիծը հանգամանորեն քննարկվում է ցեխերում, կոմբինատի տեխնիկական խորհրդում, պարտիական կոմիտեում, հաշվի են առնվում կոլեկտիվի անդամների արած խելամիտ դիտողություններն ու առաջարկությունները։ Տեխնիկական-կազմակերպական միջոցառումների պլանը հաստատվելուց, օրենքի ուժ ստանալուց հետո պարտիական կազմակերպությունը հասարակական լայն կարծիք է ստեղծում դրա շուրջ։ Որպեսզի կոլեկտիվի ամեն մի անդամ լավ իրազեկ լինի, թե ինքը կոնկրետ ինչ է անելու արտադրության տեխնիկական վերազինման բնագավառում, կազմակերպվում են զրույցներ, զեկուցումներ. այդ պլանը մասսայականացվում է նորարարների հավաքում, ցեխային ժողովներում։



Սակայն այդ գործի սկիզբն է միայն։ Գլխավորը նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման գծով մշակված միջոցառումների իրականացումն է, որի նկատմամբ սահմանված է մշտական վերահսկողություն։ Պարտիական, արհմիութենական և կոմերիտական ժողովներում, կոմբինատի պարտիական կոմիտեի և ցեխային բյուրոների նիստերում, արտադրական խորհրդակցություններում պարբերաբար քննության են առնվում արտադրության տեխնիկական առաջադիմության հարցերը և գործնական միջոցների են դիմում եղած թերություններն արագ վերացնելու համար։

Ակտիվ գործունեություն է ծավալել ավտոմատացման ու մեքենայացման գծով ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող պարտիական հանձնաժողովը (նախագահ՝ Մ. Թումանյան)։ Հանձնաժողովի կազմում ընդգրկված են ձեռներեց, արտադրության տեխնիկան լավ իմացող մարդիկ, որոնք ամեն օր վերահսկում են տեխնիկական-կազմակերպական միջոցառումների իրականացմանը։ Այսպես. ձգձգվում էր գործող № 3 ցեխի և նոր կառուցվող մեյամինի և դիցիանդիամիդի ցեխերի համար մի շարք սարքավորումների մատակարարումը՝ վտանգելով պետական պլանի կատարումը։ Այդ հարցով հանձնաժողովը հանգամանորեն զբաղվեց և իր կոնկրետ առաջարկությունները ներկայացրեց պարտիական կոմիտե։ Պարտիական հանձնաժողովի ակտիվ միջամտությամբ արագացվեցին № 3 ցեխի առանձին հանգույցների ավտոմատացման աշխատանքները, կարգավորվեցին ամիակի ծախսումները և այլն։

Անցյալ տարվա չորրորդ եռամսյակում կոմբինատում մեծ չափերի էր հասնում էլեկտրաէներգիայի գերածախսը։ Պարտիական կոմիտեի հանձնարարությամբ էլեկտրական էներգիայի տնտեսման գծով ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովը (նախագահ՝ Ս. Խանգելդյան) խոր վերլուծության ենթարկեց գերածախսի պատճառները. պարզվեց, որ աշխատանքային առանձին տեղամասերում և, հատկապես, կարբիդի ցեխում, խախտվում են տեխնոլոգիական ռեժիմները, անկանոն են աշխատում էլեկտրաշարժիչները և ժամանակին չեն կատարվում սարքավորումների պրոֆիլակտիկ աշխատանքները։ Հանձնաժողովի ներկայացրած առաջարկությունների հիման վրա պարտկոմը և ցեխային բյուրոները դիմեցին գործնական քայլերի։ Սակայն դրանով չավարտվեց հանձնաժողովի գործունեությունը։ Նրա ամենօրյա վերահսկողության և պրակտիկ օգնության շնորհիվ զգալիորեն կանխվեցին էլեկտրաէներգիայի կորուստները. 1962 թվականի առաջին եռամսյակում կոմբինատում տնտեսվեց 521 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Հանձնաժողովի առանձին անդամներ (Ս. Խանգելդյան, Ի. Ալեքսեևա, Ն. Գեւորգյան, Ս. Մարտիրոսյան) ակտիվորեն մասնակցեցին կարբիդի № 3 վառարանի տրանսֆորմատորի վերափոխման, նրա հզորությունը ռացիոնալ կերպով օգտագործելու նպատակով ձեռնարկած աշխատանքներին։

Կոմբինատի պարտիական կազմակերպությունը և նրա կոմիտեն, ցեխային պարտբյուրոները և պարտխմբակները քաղաքական-մասսայական և կազմակերպական աշխատանքի միջոցով ջանում են բարձրացնել ամեն մի կոմու-

նիստի, ամեն մի բանվորի և մասնագետի պատասխանատվությունը արտադրության տեխնիկական կատարելագործման, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման նկատմամբ, որպեսզի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ աշխատի ուժերի մաքսիմալ լարումով:

«Պայքարը տեխնիկական պրոգրեսի համար, պայքար է կոմունիզմի համար»— այս նշանաբանով է գործում № 1 ցեխի կոլեկտիվը, որն արժանացել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման: Կոմունիստական շարժման մասնակիցները նորի, տեխնիկական պրոգրեսի առաջամարտիկներ են և իրենց պրակտիկ գործունեությամբ օրինակ են ծառայում կոմբինատի մյուս աշխատողներին: Ցեխի պարտիական կազմակերպության (պարտբյուրոյի քարտուղար Ն. Սարգսյան) նախաձեռնությամբ և կոմունիստների ակտիվ մասնակցությամբ կոլեկտիվի անդամները անընդհատ կատարելագործում են արտադրության պրոցեսը և տեխնոլոգիան, հետևում, որ ագրեգատներն ու մեխանիզմները գտնվեն տեխնոլոգիական նորմալ վիճակում:

Անցյալ տարի այստեղ ավտոմատացվեց ազոտաջրածնային խառնուրդում թթվածնի պարունակությունը որոշելու պրոցեսը, իսկ ընթացիկ տարում համանման սարքավորում դրվեց նաև ազոտի գծի վրա:

Առաջներում սինթեզի կոլոնաների կատալիզատորները, որպես կանոն, մեկ ու կես տարուց հետո փոխում էին և հանձնում որպես լոմ: Ցեխի պետի՝ կոմունիստ Մ. Թումանյանի նախաձեռնությամբ որոշվեց փոխել ոչ թե ամբողջ կատալիզատորը, այլ միայն նրա մի մասը՝ գլխադիրը: Եղան և թերահավատներ, որոնք գտնում էին, որ դա արդյունք չի տա: Սակայն կյանքը փարատեց նրանց կասկածները. վերականգնված երկու կոլոնաներն աշխատում են անխափան և տալիս բարձրորակ արտադրանք:

Օդի բաժանման № 1 բաժանմունքի հերթափոխի պետեր, կոմունիստներ Մկրտումյանը և Գուրասարյանը, ապարատավարների հետ միասին, սիստեմատիկաբար կատարելագործում են արտադրական առանձին հանգույցները, պահպանում տեխնոլոգիական ռեժիմը, որի շնորհիվ օդաբաժան ագրեգատների վազքի ժամկետները երկարացվել են՝ նախատեսված երկու-երեքի փոխարեն հասցնելով վեց ամսվա. այժմ նրանք ջանում են այդ ժամկետը երկարացնել երեք ամսով ևս:

Ահա և նույն ցեխի օդի բաժանման № 2 բաժանմունքը, որի կոլեկտիվը մշտապես գերակատարում է իր արտադրական պլանները: Այստեղ չկա ետ մնացող և ոչ մի աշխատող: Բաժանմունքի բանվորներն ու մասնագետները, գործի վերածելով իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, պայքարում են տարեկան պլանը կատարել մինչև նոյեմբերի յոթը, արտապլանային կարգով թողարկել 250 հազար խորանարդ մետր թթվածին:

Կոմունիստների անձնական օրինակով բաժանմունքի աշխատողները ձգտում են բարելավել աշխատանքի կազմակերպումը, կատարելագործել տեխնոլոգիան և բարձրացնել իրենց որակավորումը. բանվորների կեսը տիրապետել է 2—4 մասնագիտության: Բաժանմունքի պետ Ս. Աֆոնենկոն և պարտխմբակի կազմակերպիչ Վ. Ասատրյանը կոլեկտիվի ակտիվ մասնակցությամբ իրականացրել են մի շարք տեխնիկական միջոցառումներ, որոնց շնորհիվ 30 տոկոսով ավելացել է թթվածնի արտադրությունը, կրճատվել են հումքի կորուստները: 1962 թվականի առաջին կիսամյակում, համեմատած 1961 թվականի



նույն ժամանակաշրջանի հետ, թթվածնի արտադրությունն ավելացել է 30 տոկոսով:

Արտադրական պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման բնագավառում մեծ գործ են կատարում № 3—5 ցեխի կոմունիստները (պարտբյուրոյի քարտուղար՝ Ե. Պետրոսյան): Այսպես, նրանց երկար ժամանակ մտահոգում էր արտադրական մի քանի հանգույցների ավտոմատացման խնդիրը. պարտբյուրոյի կողմից տվյալ հարցը բազմակողմանիորեն ուսումնասիրվելուց հետո քննարկվեց ցեխի պարտիական ժողովում. որոշվեց սեփական ուժերով կատարել այդ գործը:

Սկսվեցին ստեղծագործական աշխատանքի լարված օրեր: Կոլեկտիվ ուժերով կատարվում էին զանազան հաշվարկումներ, մշակվում էին սխեմաներ: Կոմունիստները, որոնք ագրեգատների ավտոմատացման նախաձեռնողներն էին, աշխատում էին մեծ ավյունով, պարտքի բարձր գիտակցությամբ: Այդ օրերին աշխատանքային ընդմիջման կամ երեկոյան ժամերին փորձնական ագրեգատների մոտ հաճախ կարելի էր տեսնել, օրինակ, կոմունիստներ Ս. Բաղդասարյանին (հերթափոխի պետ), Խ. Ազարյանին, Վ. Աբրահամյանին (ապարատավարներ) և այլոց, որոնք քննարկում էին սխեմաները, ծրագրերը: Կոմունիստ Հ. Փուլյանը, իր նախաձեռնությամբ բարձրացնում էր 17 ապարատավարների մասնագիտական որակավորումը ապագա ավտոմատ ագրեգատների վրա աշխատելու համար:

Վերջապես ագրեգատները պատրաստ էին: Աշխատանքային մի շարք պրոցեսներ, որոնք անցյալում կատարվում էին ձեռքով, ավտոմատացվեցին: Ո՛չ միայն թեթևացավ բանվորների աշխատանքը, այլև նկատելիորեն լավացավ արտադրանքի որակը, կանխվեցին հնարավոր պարապուրդները, վթարները, ամոնիակի կորուստները: Ավտոմատացման շնորհիվ տեխնոլոգիական պրոցեսը դարձավ համաչափ:

Կոմբինատի պարտիական կազմակերպությունը մեծ ուշադրություն է հատկացնում ռացիոնալիզատորական և գյուտարարական շարժմանը, բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական միտքն ուղղելով արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, հնացած սարքավորումների մոդեռնացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արդյունավետ օգտագործման վրա:

Ապարդյուն չեն անցել կոմունիստների գործադրած ջանքերը: Անցյալ տարի բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից արվել է 1270 նորարարական առաջարկություն, որոնցից ընդունվել են 694-ը, արտադրության մեջ ներդրվել է 519-ը, տարեկան մոտ 350 հազար ռուբլու տնտեսական օգուտով: 1962 թվականի առաջին կիսամյակում ստացված 560 ռացիոնալիզատորական առաջարկություններից ընդունվել ու արմատավորվել են 320-ը՝ տարեկան 150500 ռուբլու տնտեսական օգուտով: Բավական է ասել, որ այդ առաջարկությունների ներդրմամբ միայն մեկ տարում տնտեսվել են 3893 կգ կապար, 878 կգ բաբիտ, 1,5 տոննա պղինձ: Իր լավագույն աշխատանքի համար 1961 թվականին կոմբինատն արժանացավ «Հայկ. ՍՍՌ ժողտնտխորհրդի լավագույն ձեռնարկություն՝ ռացիոնալիզացիայի և գյուտարարության գծով» պատվավոր կոչմանը, տնտեսական շրջանի ձեռնարկությունների մեջ գրավելով առաջին տեղը:

Մեզ մոտ լայնորեն ծավալվել են ռացիոնալիզատորական ու գյուտարա-

րական շարժման կոլեկտիվ ձևերը. աշխատատար պրոցեսների մեքենայացման, տեխնոլոգիայի կատարելագործման աշխատանքներին մասնակցում են տարբեր մասնագիտությունների տեր մի խումբ մարդիկ, կամ առանձին բաժանմունքների ու ցեխերի կոլեկտիվներ։ Դա հնարավորություն է ընձեռում՝ ավելի արդյունավետ ու կոմպլեքսային ձևով լուծելու աշխատողների բարձրացրած հարցերը, նրանց խելացի առաջարկությունները։

Այսպես, ցեխի պետ, կոմունիստ ինժեներ Մ. Թումանյանի, մեխանիկներ Ն. Սարդսյանի, Վ. Խանինի և Ա. Ռուսկինի համատեղ ջանքերով հնարավոր դարձավ գազային կոմպրեսորների սառնարանների փափուկ ձուլվածքի (կապար, բաբիտ) լիցքը փոխարինել ռետինե քողով՝ տնտեսելով մեծ քանակությամբ արժեքավոր մետաղներ։ Այդ նույն ցեխում կոլեկտիվ ուժերով զոդման միջոցով վերականգնվեց «Սիմակ» կոմպրեսորի վեցերորդ աստիճանի գլանի առաջացած ճեղքվածքը։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանացած էլեկտրավերանորոգման ցեխի բոլոր աշխատողների միացյալ ուժերով հաջողվեց երկրորդ անգամ օգտագործել փաթաթվող էլեկտրալարը, խնայելով պղինձը։ Կամ՝ կոմունիստ ինժեներներ Ա. Ջարչյանի, Ս. Աղաբաբյանի և Կ. Բարսեղյանի ռացիոնալիզատորական առաջարկության ներդրման շնորհիվ հարկ չեղավ կարբիդի վառարանների գազերի արտածծման ու արտամղման համար կառուցել էլեկտրական ենթակայան. օգտագործվեց № 3 ցիկլի պոմպային № 12 կայանը. դրանով իսկ ձեռնարկությունը տարեկան տնտեսեց ավելի քան 36 հազար ռուբլի և այլն։

Նորարարական շարժումը ծավալելու նպատակով պարտիական կազմակերպությունը, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և մասնագետների ակտիվ մասնակցությամբ, իրականացնում է բազմապիսի գործնական միջոցառումներ։ Կոմբինատում հաճախակի անց են կացվում ռացիոնալիզատորական առաջարկությունների թեմատիկ մրցանակաբաշխություններ. տրադիցիա են դարձել նորարարների հավաքները, որտեղ, հանրագումարի են բերվում կատարված աշխատանքի արդյունքները, տեղի է ունենում փորձի փոխանակում։ Լավագույն ռացիոնալիզատորների գործունեությունը պրոպագանդվում է ագիտատորների, բազմատիրաժ ու պատի թերթերի, տեղական ռադիոհանգույցի միջոցով, կազմակերպված է առաջավոր ռացիոնալիզատորների ցուցափեղկ և այլն։ Միաժամանակ կիրառվում են նյութական ու բարոյական խրախուսանքի բազմաթիվ ձևեր։

Ձեռնարկության տեխնիկական-կազմակերպական միջոցառումների պլանի համապատասխան մշակվել է արտադրության «նեղ տեղերի» թեմատիկ ցուցակ, որին ծանոթ են կոլեկտիվի բոլոր անդամները։ Դա օգնում է մեր նորարարների ուշադրությունը կենտրոնացնել առավել հրատապ հարցերի լուծման վրա։

Ռացիոնալիզատորական շարժման ավանգարդում են կոմունիստներն ու կոմերիտականները։ Մեր կոլեկտիվի պարծանքն են՝ կոմունիստներ, վաստակավոր ռացիոնալիզատորներ Ա. Առաքելյանը, Ա. Օհանյանը, «Հայկ. ՍՍՌ ժողտնտխորհրդի լավագույն ռացիոնալիզատորի» կոչմանն արժանացած Հ. Խաչատրյանը, Ս. Թամրազյանը և ուրիշներ։

Պարտիական կազմակերպությունը հետամուտ է լինում, որպեսզի ժամանակին ներդրվեն նորարարների արժեքավոր առաջարկությունները, ռացիոնալիզատորներին ցույց տրվի տեխնիկական անհրաժեշտ օգնություն։ Այդ հարցերը պարբերաբար քննարկվում են պարտկոմիտեի նիստերում, ցեխային պարտկազմակերպությունների ժողովներում և գործնական միջոցառումներ են մշակվում այդ գործում նկատված թերությունները արագ վերացնելու համար։



Մի քանի ամիս առաջ կոմբինատի պարտկոմիտեում քննության առնվեց ռացիոնալիզատորների հետ տարվող աշխատանքի վիճակը։ Բացահայտված թերությունները վերացնելու նպատակով մշակված միջոցառումներն արդեն տալիս են լավ արդյունք։ Նորարարների համար սիստեմատիկաբար հրավիրվում են սեմինար պարապմունքներ։ Գործում է պարտիական հանձնաժողովը, որը վերահսկում է ռացիոնալիզատորական ու գյուտարարական աշխատանքների գծով ադմինիստրացիայի գործունեությանը։ Միաժամանակ կոմիտեն հարց է բարձրացրել վերադաս օրգանների առաջ՝ նորարարների համար կոմբինատում ստեղծել փորձնական հատուկ բազա, քանի որ դրա բացակայությունը խիստ բացասաբար է անդրադառնում ընդունված առաջարկությունները արտադրության մեջ ժամանակին արմատավորելու վրա։

Պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ ձեռնարկության բազմաթիվ ցեխերում ու տեղամասերում կազմակերպվել են «ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման խմբեր»։ Օրինակ, օգտակար գործ է կատարում կարբիդի ցեխի փականագործների բաժնի պարտխմբակը (կազմակերպիչն է անվանի ռացիոնալիզատոր Ս. Մեհրաբյանը), որի նախաձեռնությամբ ստեղծված «ներդրման խումբը» ուշի-ուշով հետևում է ընդունված առաջարկությունների արմատավորման ընթացքին։

Արտադրության տեխնիկական առաջադիմության ասպարեզում վճռական նշանակություն ունեն կադրերի հանրակրթական ու տեխնիկական ուսուցումը, գիտատեխնիկական պրոպագանդան։ Կոմբինատի պարտիական կազմակերպությունը՝ հենվելով ինժեներա-տեխնիկական աշխատողների վրա և նրանց ակտիվ մասնակցությամբ նկատելի գործ է կատարում այդ ուղղությամբ։

Մենք հետևում ենք, որպեսզի առաջիկա տարիներին, առանց արտադրությունից կտրվելու, մեր երիտասարդները ձեռք բերեն հանրակրթական մասնագիտական միջնակարգ կրթություն։ Միայն անցյալ ուսումնական տարում կոմբինատի 106 աշխատողներ սովորում էին հերթափոխային բանվոր երիտասարդության դպրոցներում, 20-ը՝ տեխնիկումներում և 96-ը՝ Պոլիտեխնիկական ինստիտուտի երեկոյան բաժնում և հեռակա ուսումնական զանազան հաստատություններում։

Արտադրական ուսուցումը կազմակերպելու, բանվորների որակավորումը բարձրացնելու նպատակով ստեղծվել են խմբակներ, դասընթացներ։ Բայց գործն այնպես է կազմակերպված, որ այդ ուսուցումը չսահմանափակվի տեխմինիմումի ծրագրով, այլ իր մեջ պարունակի ինժեներատեխնիկական պատրաստության տարրեր։ Միայն մեկ տարում պատրաստվել ու որակավորվել են 735 մարդ, երկրորդ մասնագիտությունն են ձեռք բերել 92 բանվոր։ Բնական գազին անցնելու կապակցությամբ կորունդի ցեխում բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների համար կազմակերպվեցին դասընթացներ. պարապմունքներն անցան արդյունավետ և ունկնդիրները քննությունները հանձնեցին լավ և գերազանց գնահատականներով։ Մելամինի ցեխը շահագործման հանձնելու կապակցությամբ դասընթացների միջոցով նոր մասնագիտություն

ձեռք բերին շատ աշխատողներ. ուսանելու նպատակով երկրի համանման ձեռնարկություններն ուղարկվեցին 25 մարդ։

Տեխնիկական գիտելիքների հարստացման և առաջավոր փորձի փոխանակման համար պլանավորված կարգով Միության գործարաններն են ուղարկվում կոլեկտիվի առանձին անդամներ. միայն վերջին 8—9 ամսում գործուղվել են 20 մարդ (Բաքու, Խարկով, Լենինգրադ, Սլավյանսկ, Ձերժինսկ և այլուր)։ Վերադառնալով գործուղումից, արտադրության հրամանատարները և բանվորները հաշիվ են տալիս իրենց կոլեկտիվի անդամներին, պատմում վերոհիշյալ ձեռնարկություններում արտադրության տեխնիկական պրոգրեսի բնագավառում կիրառվող խելացի ձեռնարկումների մասին և նշում, թե ինչ կարելի է նրանցից ընդօրինակել։

Մեր ձեռնարկության կոմունիստներն իրենց առօրյա գործունեության ընթացքում խոշոր տեղ են հատկացնում գիտատեխնիկական պրոպագանդային, ջանալով, որ այն նպաստի յուրաքանչյուր աշխատողի գիտելիքների հարստացմանը և գործնական որակավորման բարձրացմանը։ Քիմիական արդյունաբերության գիտատեխնիկական նվաճումների, արտադրության նորագույն տեխնիկայի ու տեխնոլոգիայի հարցերի շուրջ անցած մեկ տարում կարդացվել են 83 զեկուցում, դասախոսություն։ Օգտակար գործ են կատարում տեխնիկական կաբինետը և գրադարանը, գիտության ու տեխնիկայի նորարարներին նվիրված ցուցափեղկերը, կինոֆեստիվալները, «տեխնիկական գրքերի շաբաթները» և այլն։ Մենք ունենք բավականին հարուստ տեխնիկական գրադարան, որի գրքային ֆոնդից օգտվում են 280 բանվոր և 180 ինժեներա-տեխնիկական աշխատող։

Սակայն մեր աշխատանքում կան և լուրջ թերություններ։ Դեռևս ցածր է արտադրության կուլտուրան, միշտ չէ, որ ժամանակին է իրականացվում նախատեսված այս կամ այն տեխնիկական միջոցառումը, դեռևս արտադրության մեջ դանդաղ են ներդրվում նորարարական առաջարկությունները։ Կոմբինատի առանձին աշխատամասերում, օրինակ՝ կորունդի ցեխում, երբեմն թերակատարվում են արտադրական պլանները, թողարկվում է ցածրորակ արտադրանք։ Շինարարական-մոնտաժային կազմակերպությունների մեղքով ձգձգվում են մելամինի ցեխի սարքավորումների մոնտաժային, ջերմաէլեկտրակայանի, կարբիդի ցեխի հում նյութերի պահեստի շինարարական-մոնտաժային աշխատանքները։

Քիմիագործների ինտերնացիոնալ կոլեկտիվը, ոգևորված ՍՄԿԿ XXII համագումարի որոշումներով, եռանդուն ջանքեր է գործադրում արտադրության տեխնիկական վերազինման ճանապարհով բարձր արտադրողականության հասնելու, յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Վ. ՊՈՂՈՍՅԱՆ

Կիրովականի քիմիական կոմբինատի
պարտկոմիտեի քարտուղար

---

# ՀԿԿ ԿԱԶՄԸ ԹՎԵՐՈՎ

(1954—1962 թթ.)

Սովետական Միության լենինյան մեծ պարտիայի հավատարիմ ու մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի Կոմունիստական պարտիան, իր XVII համագումարից (1954 թ. փետրվար) հետո ընկած ժամանակաշրջանում մեծ չափով աճել է, ավելի ամրապնդել իր շարքերի միասնությունը և աշխատավորական լայն մասսաների հետ ունեցած կապերը։

Ստորև տպագրվող վիճակագրական տվյալները տալիս են անցած տարիներին (1954-ից մինչև 1962 թ. ապրիլի 1-ը) Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմում տեղի ունեցած քանակական ու որակական փոփոխությունների ընդհանուր պատկերը։

## ՀԿԿ ՔԱՆԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԸ

| Առ 1-ը հունվարի | ՍՄԿԿ անդամներ | ՍՄԿԿ անդամության թեկնածուներ | Ընդամենը կոմունիստներ |
|---|---|---|---|
| 1954 թ. | 63406 | 2109 | 65515 |
| 1955 թ. | 65280 | 2161 | 67441 |
| 1956 թ. | 67018 | 2245 | 69263 |
| 1957 թ. | 69443 | 2551 | 71994 |
| 1958 թ. | 71581 | 2820 | 74401 |
| 1959 թ. | 73855 | 3217 | 77072 |
| 1960 թ. | 76835 | 3515 | 80350 |
| 1961 թ. | 80395 | 4667 | 85062 |
| 1962 թ. | 84727 | 4436 | 89163 |
| առ 1/IV 1962 թ. | 85798 | 4549 | 90347 |

Այսպիսով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների անդամների թիվը անցած ինը տարիների ընթացքում, այսինքն՝ ՀԿԿ XVII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում ավելացել է 24832 մարդով, ընդ որում պարտիայի շարքերի ընդունելության հաշվին՝ 21235-ով։ 1962 թ. ապրիլի 1-ի դրությամբ Երևանի պարտիական կազմակերպությունն իր շարքերում ուներ 32599 կոմունիստ, Լենինականինը՝ 6355, Կիրովականի քաղաքային կազմակերպությունը՝ 3274, Ալավերդու շրջանային պարտիական կազմակերպությունը՝ 2901, Էջմիածնինը՝ 2391, Ղափանինը՝ 2832, Հոկտեմբերյանինը՝ 2092, Արտաշատինը՝ 2038 և այլն։

**ՍՄԿԿ շարքերի ընդունելությունը:** Պարտիայի շարքերի աճը և նրա կազմի մշտական բարելավումը գտնվել է ռեսպուբլիկայի պարտիական կազմա-

կերպությունների ուշադրության կենտրոնում. բարձրացել է նրանց պահանջկոտությունը պարտիայի մեջ ընդունվողների նկատմամբ։ Անշեղորեն կիրառելով պարտիայի անդամների անհատական ընտրության լենինյան սկզբունքը, պարտիական կազմակերպությունները 1954 թ. մինչև 1962 թ. ապրիլի 1-ը ՍՄԿՊ շարքերը որպես անդամ ընդունել են 21244 և անդամության թեկնածու 21235 մարդ։ Պարտիայի շարքերի աճման վերաբերյալ տվյալներն ակնառու երևում են հետևյալ աղյուսակից.

| | Ընդունվել են | |
|---|---|---|
| | ՍՄԿՊ անդամ | ՍՄԿՊ անդամության թեկնածու |
| 1954 թվականի ընթացքում | 1750 | 1681 |
| 1955 » » | 1657 | 1622 |
| 1956 » » | 1930 | 2086 |
| 1957 » » | 2106 | 2184 |
| 1958 » » | 2371 | 2411 |
| 1959 » » | 2901 | 2840 |
| 1960 » » | 3296 | 3962 |
| 1961 » » | 4244 | 3581 |
| 1962 թ. 1 եռամսյակում | 1006 | 868 |

ՍՄԿՊ շարքերն են ընդունվել երիտասարդ, կոմունիզմի կառուցման ակտիվ մարտիկներ, արտադրության, շինարարության, գյուղատնտեսության առաջավորներ, ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ։ Բնորոշն այն է, որ անցած տարիներին մեծ չափով ավելացել է պարտիայի մեջ նյութական արտադրության ոլորտում աշխատողների ընդունելությունը, որի մասին վկայում են ստորև բերված տվյալները (տոկոսներով).

| | 1954 թ. ընթացքում | 1961 թ. ընթացքում |
|---|---|---|
| Ընդունված է ընդամենը ՍՄԿՊ անդամության թեկնածու | 100 | 100 |
| նրանցից՝ | | |
| բանվորներ | 23,6 | 33,2 |
| կոլտնտեսականներ | 15,8 | 19,3 |
| ծառայողներ | 54,3 | 45,2 |
| այդ թվում՝ | | |
| ինժեներա-տեխնիկական աշխատողներ | 52,0 | 69,3 |
| սովորողներ և մնացածները | 6,3 | 2,3 |

Ինչպես երևում է աղյուսակից, պարտիայի անդամության թեկնածու ընդունվածների մեջ բանվորների թիվը 1954 թ. 23,6 տոկոսից հասել է 33,2-ի, կոլտնտեսականներինը՝ 15,8-ից 19,3-ի. 1962 թ. առաջին եռամսյակում բանվորների թիվը հասել է 35 տոկոսի։ Բասարգեչարի, Թալինի, Շամշադինի, Վեդու և այլ շրջաններում պարտիայի շարքերն ընդունվածների երկու երրորդից ավելին կազմել են բանվորներն ու կոլտնտեսականները։ Ղափանի շրջանում եթե 1955 թ. ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունվածների մեջ բանվորները կազմել են 17,2 տոկոս, ապա 1959 թ.՝ 38,2, 1961 թ.՝ 41,4 տոկոս. Նոյեմ-



բերյանի շրջանում կոմունիստ բանվորների թիվը 1955 թ. 15,8 տոկոսից 1961 թ. հասել է 43,7-ի. Բասարգեչարի շրջանում 1953 և 1954 թվականներին ընդհանուր ընդունելության մեջ կոլտնտեսականները կազմում էին համապատասխանորեն 6,3 և 17,6, 1960 թ.՝ 54, 1961 թ.՝ 65 տոկոս և այլն։

Վերջին տարիներին ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունված բանվորների մեծամասնությունը աշխատում է ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերում։ Այսպես, 1961 թ. ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունված բանվորների 61 տոկոսն աշխատում էր արդյունաբերության մեջ, 18-ը՝ տրանսպորտում և շինարարությունում, 11,3-ը՝ սովխոզներում, իսկ 9,7 տոկոսը՝ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։

Ավելացել է ինժեներա-տեխնիկական աշխատողների և մասնագետների հոսքը պարտիայի մեջ։ Այսպես, եթե 1954 թ. պարտիայի շարքերն ընդունված ծառայողների կազմում ինժեներները, գյուղատնտեսները, զոոտեխնիկները, ուսուցիչները, բժիշկները, տնտեսագետները և այլ մասնագետներ կազմում էին 52,0 տոկոս, ապա 1961 թ. այն հասավ 69,3-ի։ Երևանի քաղաքային պարտիական կազմակերպության Լենինյան շրջանում պարտիայի անդամության թեկնածու ընդունված ծառայողների ընդհանուր թվում ինժեներա-տեխնիկական աշխատողները 1954 թ. կազմել են 57, 1959, 1960, 1961 թվականներին՝ ավելի քան 80, իսկ 1962 թ. առաջին եռամսյակում՝ 92,1 տոկոս։

1961 թ. 2,5 անգամ ավելի շատ կոլտնտեսականներ են ընդունվել ՍՄԿՊ անդամության թեկնածուներ, քան 1954 թվականին։ Նրանցից շատերն անմիջականորեն աշխատում են ֆերմաներում ու դաշտերում։ Այդ են ցույց տալիս հետևյալ թվերը.

| | Ընդունվել են ՍՄԿՊ շարքերը | |
|---|---|---|
| | 1959 թ. | 1961 թ. |
| Գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ և գյուղատնտեսության այլ մասնագետներ | 77 | 58 |
| Տրակտորիստներ, կոմբայնավարներ և այլ մեխանիզատորներ | 22 | 101 |
| Անասնաբուծության մեջ աշխատողներ | 126 | 165 |
| Դաշտավարության, այգեգործության, բանջարաբուծության մեջ աշխատողներ | 357 | 317 |

ՍՄԿՊ XXII համագումարին նախորդած ինը տարիների ընթացքում պարտիայի շարքերը մեծապես համալրվել են առաջավոր կոմերիտականների հաշվին։ 1954 թ. հունվարի մեկից մինչև 1962 թ. ապրիլի մեկը ՍՄԿՊ անդամության թեկնածու են ընդունվել 10806 կոմերիտականներ, այսինքն՝ բոլոր ընդունվածների կեսից ավելին։

Համապատասխանորեն աճել է նաև պարտիայի շարքերը որպես անդամ ընդունվածների թիվը. միայն վերջին երկու տարիներին (1960—1961 թթ.) պարտիայի շարքերը որպես անդամ ընդունվել են 7520 հոգի, 1954—1955 թթ. 3407 հոգու դիմաց։ ՀԿՊ կազմում բավականին ավելացել է վերջին տարիներս ընդունված ՍՄԿՊ երիտասարդ անդամների թիվը, որը երևում է ներքոհիշյալ աղյուսակից.

| | Մինչև 3 տարվա ստաժ ունեցող ՍՄԿՊ անդամների թիվը | ՍՄԿՊ անդամության թեկնածուների թիվը | Ընդամենը տոկոսներով ընդհանուր կազմի նկատմամբ |
|---|---|---|---|
| Առ 1-ը հունվարի 1957 թ. | 5230 | 2551 | 10,8 |
| » 1960 թ. | 7334 | 3515 | 13,5 |
| » 1961 թ. | 8707 | 4667 | 15,7 |
| » 1962 թ. | 10650 | 4436 | 16,9 |

Մինչև երեք տարվա ստաժ ունեցող ՍՄԿՊ անդամների, ինչպես և թեկնածուների թիվը պրոգրեսիվ կերպով աճել և աճում է։ Վերջին հինգ տարում այն կրկնապատկվել է։ 1962 թ. հունվարի մեկի դրությամբ այն կազմում է ռեսպուբլիկայի կոմունիստների ընդհանուր թվի 16,9 տոկոսը, իսկ առանձին կազմակերպություններում ավելի բարձր է։ Այսպես, Լենինականի պարտիական կազմակերպությունում երիտասարդ կոմունիստների թիվը կազմում է 16,2 տոկոս, Ղափանում՝ 18,8, Հրազդանի, Արտաշատի շրջաններում՝ 22,8, իսկ Մարտունիում՝ 28,1 տոկոս։

Պարտիայի շարքերը նոր ընդունվածների գերակշռող մասը երիտասարդներ են։ 1962 թ. հունվարի մեկի տվյալներով ռեսպուբլիկայում կային մինչև 25 տարեկան 3432 կոմունիստ, մինչև 30 տարեկան՝ ավելի քան 7400 կոմունիստ։

Եթե ներկայումս ժամկետանց թեկնածուների թիվը 822 է, կամ 18,1 տոկոս, ապա 1960 թ. այն կազմում էր 24,6, 1958 թ.՝ 27,8, իսկ 1956 թ.՝ հունվարի 1-ի դրությամբ՝ ավելի քան 30 տոկոս։

ՍՄԿՊ շարքերից վտարումը. Հայաստանի Կոմունիստական պարտիան լավագույն մարդկանց իր կազմում ընդունելու հետ մեկտեղ սիստեմատիկաբար իր շարքերը մաքրել է և մաքրում է պարտիայի անդամի բարձր կոչումը չարդարացնող մարդկանցից։ Վերջին վեց տարիների ընթացքում զանազան պատճառներով պարտիայի անդամությունից և անդամության թեկնածությունից վտարվել կամ մեխանիկորեն դուրս են մնացել 1406 մարդ։

Պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնումը, պարտկազմակերպությունների աշխատանքում դեմոկրատական հիմունքների զարգացումը, կոմունիստների մարքսիստական-լենինյան դաստիարակության ուժեղացումը իրենց բարերար ազդեցությունն ունեցան պարտիայի անդամ-թեկնածուների գիտակցականության բարձրացման, պարտիական կարգապահության ամրապնդման վրա։ Դրանով պետք է բացատրել, որ վերջերս պարտիական տույժ ստացողների և պարտիայի շարքերից վտարվածների թիվը նվազել է։ 1961 թ. պարտիայից վտարվել և մեխանիկորեն դուրս են մնացել 234 մարդ։

## ՀԿՊ ԿԱԶՄԸ ԸՍՏ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԶԲԱՂՄՈՒՆՔԻ

Քանակական աճի հետ միասին պարտիան սիստեմատիկորեն բարելավում է նաև իր որակական կազմը։

Կոմունիստների բաշխումն ըստ հասարակական խմբերի (սոցիալական դրության), սկսած 1956 թ. հունվարից մինչև 1962 թ. հունվարը փոփոխվել է հետևյալ կերպ (արտահայտված տոկոսներով).



| | 1956 թ. | 1962 թ. |
|---|---|---|
| Ընդամենը կոմունիստներ . . . . . . . | 100 | 100 |
| Այդ թվում՝ | | |
| բանվորներ . . . . . . . . . . | 24,3 | 26,4 |
| գյուղացիներ (կոլտնտեսականներ) . . . . . | 30,1 | 28,6 |
| ծառայողներ և մնացած բոլորը . . . . . . | 45,6 | 45,0 |

Այսպիսով, ներկայումս կոմունիստների մեծ մասը (55 տոկոս) բանվորներ ու գյուղացիներ են, իսկ ծառայողների կազմում գերակշռում են մտավոր աշխատանքի մարդիկ, գիտության տարբեր ճյուղերի մասնագետներ, որը երևում է հետևյալ տվյալներից (տոկոսներով).

| | 1956 թ. | 1962 թ. |
|---|---|---|
| Ընդամենը ծառայող-կոմունիստներ . . . . . . | 100 | 100 |
| որից՝ | | |
| կազմակերպությունների, հիմնարկ-ձեռնարկությունների, տրանսպորտի, կառույցների, սովխոզների, ՆՏԿ-ների և նրանց կառուցվածքային ստորաբաժանման ղեկավարներ | 15,5 | 11,8 |
| ինժեներա-տեխնիկական աշխատողներ, տնտեսագետներ, գյուղատնտեսության մասնագետներ . . . . . | 11,3 | 19,7 |
| գիտության, առողջապահության, լուսավորության, գրականության և արվեստի աշխատողներ . . . . . | 31,8 | 31,4 |
| առևտրի և հասարակական սննդի աշխատողներ . . . | 5,0 | 6,5 |
| վերահսկողության, հաշվառման և գործավարության աշխատողներ . . . . . . . . . | 11,7 | 12,8 |
| մնացած ծառայողները . . . . . . . . | 24,7 | 18,3 |

Ռեսպուբլիկայի բնակչության կրթական մակարդակը տարեցտարի բարձրանում է, որը և բնականաբար իր արտացոլումն է գտնում ՀԿՊ-ում։ Ստորև բերված տվյալները ցույց են տալիս կոմունիստների մասնագիտական ու հանրակրթական պատրաստության բնագավառում տեղի ունեցած փոփոխությունները։

| | Առ 1-ը հունվարի 1955 թ. | | Առ 1-ը հունվարի 1962 թ. | |
|---|---|---|---|---|
| | բացարձակ տվյալներով | %-ներով | բացարձակ տվյալներով | %-ներով |
| Ընդամենը ՍՄԿՊ անդամներ և թեկնածուներ . . . . . | 67441 | 100 | 89163 | 100 |
| որից՝ | | | | |
| ունեն բարձրագույն կրթություն . . | 10,999 | 16,3 | 18,623 | 20,9 |
| թերի բարձրագույն կրթություն . . | 3387 | 5,0 | 3538 | 4,0 |
| միջնակարգ կրթություն . . . | 16925 | 25,0 | 24713 | 27,7 |
| ոչ լրիվ միջնակարգ կրթություն . . | 16285 | 24,1 | 21513 | 24,1 |

Բարձրագույն մասնագիտական կրթությամբ կոմունիստների թիվը վերջին յոթ տարիների ընթացքում մոտ չորս տոկոսով ավելացել է և 1962 թ. հունվարի

1-ի տվյալներով կազմում էր 18623 մարդ։ Միջնակարգ կրթությամբ մասնագետ կոմունիստների թիվն ավելացել է 7788 մարդով, կամ 2,7 տոկոսով։ Ներկայումս Հայաստանում երեք կոմունիստներից մեկն ունի մասնագիտական կրթություն։

Հայաստանի գիտական աշխատողների զգալի մասը կոմունիստներ են։ 110 կոմունիստներ գիտության դոկտորներ են և 1013-ը՝ գիտության թեկնածուներ։

Զգալի փոփոխություններ են տեղի ունեցել ՀԿՊ-ում ըստ պարտիական ստաժի. այդ մասին է վկայում ստորև բերված աղյուսակը (տոկոսներով).

| | Առ 1-ը հունվարի 1962 թ. դրությամբ |
|---|---|
| Բոլոր կոմունիստները | 100 |
| այդ թվում՝ | |
| մինչև 1921 թ. պարտիական ստաժ ունեցողներ | 0,6 |
| 1921—1940 թթ. » » » | 19,2 |
| 1941—1945 թթ. » » » | 24,2 |
| 1946—1960 թթ. » » » | 47,5 |
| 1961 թ. հետո | 8,5 |

Հայաստանի Կոմպարտիան 1962 թ. հունվարի մեկի դրությամբ իր շարքերում ուներ 32 ազգությունների ներկայացուցիչներ, այդ թվում հայեր՝ 82253, ռուսներ՝ 1711, ուկրաինացիներ՝ 250, բելոռուսներ՝ 28, վրացիներ՝ 39, ադրբեջանցիներ՝ 3888, ասորիներ՝ 128, հույներ՝ 284, հրեաներ՝ 112, քրդեր՝ 352 և այլն։

## ԿԱՆԱՅՔ ՀԿՊ ԿԱԶՄՈՒՄ

Սովետական կանայք կոմունիզմի կառուցման ակտիվ շինարարներն են։ Նրանցից ամենաառաջավորները ՍՄԿՊ անդամ են և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կատարում են բեղմնավոր աշխատանք։

Կանանց թիվը ՀԿՊ կազմում անընդհատ ավելանում է։ ՀԿՊ XVII և XXII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կոմունիստ կանանց թիվը 14631-ից հասել է 17210-ի, որը կազմում է բոլոր կոմունիստների ընդհանուր թվի 19,3 տոկոսը։ Որոշ պարտիական կազմակերպություններում կանանց թիվը ավելի բարձր է, քան միջին ռեսպուբլիկականը։ Այսպես, օրինակ, Սպանդարյանի և Մեղրիի շրջաններում կազմում է 27,4 տոկոս, Լենինականում, Դիլիջանում՝ 25,0, 26 կոմիսարների անվան շրջանում՝ 23,0, Շահումյանի, Գորիսի, Իջևանի, Աբովյանի, Ստեփանավանի շրջանային պարտիական կազմակերպություններում՝ ավելի քան 21 տոկոս։

Պարտիայի շարքերն ընդունվող կանանց թվի ավելացման մասին է վկայում նաև հետևյալը. եթե 1956 թ. ՍՄԿՊ անդամության թեկնածու են ընդունվել 227 կին (10 տոկոս), ապա 1961 թվականին՝ 636 (16,3 տոկոս), իսկ 1962 թ. առաջին եռամսյակում՝ 154, որը կազմում է ընդհանուր ընդունելության 17,7 տոկոսը։



## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պարտիական կազմակերպություններից պահանջում է այնպես անել, որ կոմունիստների հիմնական մասը տեղաբաշխված լինի նյութական արտադրության ոլորտում և մըշտապես բարելավվի պարտիական ուժերի տեղաբաշխումը ժողովրդական տընտեսության բոլոր ճյուղերում։ Թե ինչպես է իրագործվում պարտիայի այդ ցուցումը մեր ռեսպուբլիկայում, ցույց են տալիս հետևյալ տվյալները.

Կոմունիստների տեղաբաշխումն ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի (տոկոսային արտահայտությամբ).

| | Առ 1-ը հունվարի 1962 թ. |
|---|---|
| Ընդամենը կոմունիստներ | 100 |
| որից՝ | |
| աշխատում են նյութական արտադրության ճյուղերում | 59,2 |
| այդ թվում՝ | |
| արդյունաբերության մեջ | 18,1 |
| շինարարության մեջ | 3.9 |
| գյուղատնտեսության մեջ | 25,3 |
| կապի և տրանսպորտի ձեռնարկություններում | 6,6 |
| մթերումների, նյութատեխնիկական մատակարարման, առևտրի և հասարակական սննդի օբյեկտներում | 5,8 |
| Ոչ արտադրական ճյուղերում | 40,8 |
| այդ թվում՝ | |
| լուսավորության, գիտության, առողջապահության բնագավառում | 18,7 |
| պետական օրգաններում, վարչատնտեսական ապարատներում, պարտիական և հասարակական կազմակերպություններում | 10,4 |
| կոմունալ տնտեսություններում և այլ ճյուղերում աշխատողներ, թոշակառուներ, տնային տնտեսուհիներ | 11,8 |

Վերոհիշյալ տվյալները ցույց են տալիս, որ կոմունիստների ճնշող մեծամասնությունն զբաղված է նյութական արտադրության ոլորտում։ Միայն վերջին չորս տարում նրանց թիվը ռեսպուբլիկայում ավելացել է մոտ 6000 մարդով։ Կրկնապատկվել է մեքենաշինության մեջ աշխատող կոմունիստների թիվը, ավելի մեծ չափով աճել է կոմունիստների թիվը հատկապես էլեկտրատեխնիկական, քիմիական, դազգահաշինական, սարքաշինական, ռադիոտեխնիկական արդյունաբերության ճյուղերում։

Կոմունիստ բանվորների թիվը վերջին չորս տարիների ընթացքում ավելացել է 5525-ով. այդ աճն ավելի մեծ է սև և գունավոր մետալուրգիայի, քիմիական, փայտամշակման, թեթև արդյունաբերության և այլ ճյուղերում։

Զգալիորեն փոխվել է կոլտնտեսություններում աշխատող ՍՄԿՊ անդամ թեկնածուների որակական կազմը։ ՄՏԿ-ների և ՆՏԿ-ների վերակազմման կապակցությամբ կոլտնտեսությունները փոխադրվեցին շատ կոմունիստ մեխանիզատորներ, որոնց թիվն այժմ ռեսպուբլիկայում հասնում է 1452-ի, կամ ընդհանուր կոլտնտեսական-կոմունիստների 8,7 տոկոսին։ Կոմունիստ-կոլտընտեսականների հիմնական ուժերը կենտրոնացված են արտադրության վճռական տեղամասերում, որը երևում է հետևյալ տվյալներից.

## Կոմունիստ-կոլտնտեսականների տեղաբաշխումը ըստ նրանց աշխատանքի բնույթի (տոկոսներով)

| | Առ 1-ը հունվարի 1959 թ. | Առ 1-ը հունվարի 1962 թ. |
|---|---|---|
| Ընդամենը կոմունիստ-կոլտնտեսականներ | 100 | 100 |
| այդ թվում՝ | | |
| դաշտավարության, բանջարաբուծության, այգեգործության ու անասնաբուծության բնագավառում աշխատողներ, մեխանիզատորներ, մասնագետներ | 79,7 | 87,1 |
| վարչա-կառավարչական պաշտոններում զբաղված և այլ կոլտնտեսականներ (թոշակառուներ, տնային տնտեսուհիներ և չաշխատողներ) | 20,3 | 12,9 |

## ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտիայի հիմքն են, որոնք բանվորներին, գյուղացիներին և ինտելիգենցիային կապում են պարտիայի ղեկավար օրգանների հետ, մոբիլիզացնում ու կազմակերպում նրանց ուժերը՝ հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության խնդիրները։*

*1954 թ. հունվարի 1-ից մինչև 1962 թ. հունվարի 1-ը սկզբնական պարտկազմակերպությունների թիվն ավելացել է 269-ով, ընդ որում արդյունաբերական, կապի, տրանսպորտի և շինարարական պարտիական կազմակերպությունների ավելացել են 88-ով, սովխոզներինը՝ 77-ով. միաժամանակ կոլտնտեսությունների խոշորացման կապակցությամբ 153-ով պակասել է կոլտնտեսային սկզբնական կազմակերպությունների թիվը։*

*Մինչև 1962 թ. հունվարի 1-ի տվյալներով սկզբնական պարտիական կազմակերպությունների ցանցը ըստ տնտեսության ու կուլտուրայի առանձին ճյուղերի ներկայացնում է հետևյալ պատկերը.*

| | Առ 1-ը հունվարի 1962 թ. | | |
|---|---|---|---|
| | սկզբնական պարտկազմակերպություններ | ցեխային պարտկազմակերպություններ | պարտիական խմբեր |
| Ընդամենը | 3593 | 978 | 1584 |
| այդ թվում՝ | | | |
| արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտում, կապում և շինարարությունում | 790 | 648 | 375 |
| կոլտնտեսություններում | 648 | 51 | 834 |
| սովխոզներում | 127 | 71 | 183 |
| ուսումնական հաստատություններում, գիտական, կուլտուր-լուսավորական և բուժհիմնարկներում | 920 | 84 | 39 |
| հիմնարկներում, կազմակերպություններում և տնտեսական օրգաններում (ռեսպուբլիկականից մինչև շրջանայինը) | 625 | 111 | 149 |
| առևտրական և հասարակական սննդի ձեռնարկություններում | 190 | 13 | 4 |
| գյուղական տերիտորիալ և այլ կազմակերպություններ | 293 | — | — |



*Ցեխային պարտիական կազմակերպությունների թիվը 1956 թվականի 484-ից 1962 թ. հասել է 978-ի, իսկ պարտիական խմբերինը՝ 1356-ից՝ 1584-ի։ Միաժամանակ զգալիորեն պակասել է սակավանդամ պարտիական կազմակերպությունների թիվը։*

## Սկզբնական պարտիական կազմակերպությունների բաշխումը ըստ կոմունիստների թվի (տոկոսներով)

| | Առ 1-ը հունվարի 1956 թ. | Առ 1-ը հունվարի 1962 թ. |
|---|---|---|
| Ընդամենը սկզբնական պարտկազմակերպություններ | 100 | 100 |
| որից մինչև 5 կոմունիստ ունեցողներ | 8,3 | 7,7 |
| մինչև 14 » » | 42,9 | 38,5 |
| 15—25 » » | 29,6 | 26,1 |
| 26—100 » » | 17,6 | 25,3 |
| 101-ից ավելի » » | 1,5 | 2,4 |

*Խոշոր պարտիական կազմակերպությունների տեսակարար կշիռը զգալիորեն աճել և աճում է, իսկ դրան հակառակ նվազել են սակավանդամ պարտիական կազմակերպությունները։*

*Այժմ ավելի քան 15.000 կոմունիստներ ընդգրկված են պարտիական կազմակերպությունների ղեկավար կազմում. աշխատում են որպես կազմակերպության քարտուղարներ, պարտիական կոմիտեի և սկզբնական պարտիական կազմակերպությունների բյուրոյի անդամներ։*

---

Պարտիայի ու ժողովրդի անխզելի կապը վառ կերպով դրսևորվում է պարտիական շարքերի աճի մեջ, պարտիայի շարքերը թարմ ուժերի մշտական ներհոսման մեջ։ Հաշվետու ժամանակաշրջանում պարտիայի թվական կազմը ավելացել է երկուս ու կես միլիոն մարդով և այժմ կազմում է գրեթե տասը միլիոն կոմունիստ։

XXII համագումարը Կենտրոնական Կոմիտեին հանձնարարում է այսուհետև ևս ամրապնդել պարտիայի միասնությունը, պայքարել նրա մարքս-լենինյան աշխարհայացքի անաղարտության համար, պարտիայի շարքերն ուժեղացնել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի առաջավոր մարդկանցով, էլ ավելի բարձրացնել կոմունիստի կոչումը, որպես ժողովրդի երջանկության համար, կոմունիզմի համար ակտիվ, տոկուն ու գիտակից մարտնչողի։

ՍՄԿԿ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԺՈՂՈՎՆԵՐՈՒՄ

Վերջերս տեղի ունեցան ռեսպուբլիկայի կոլտնտեսային-սովխոզա- յին տերիտորիալ-արտադրական վարչությունների պարտիական ակտիվի ժողովներ: Ժողովներում քննության առնվեցին բերքահավաքի նախա- պատրաստման ու անցկացման և գյուղատնտեսական մթերքների արտա- դրության ավելացման գործում կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունների խնդիրները, որոնց առթիվ ըն- դունվեցին համապատասխան որոշումներ:

Ստորև ինֆորմացիա ենք տպագրում պարտիական ակտիվի երկու ժողովի մասին:

## ԱՇՏԱՐԱԿՈՒՄ

Հուլիսի 7-ին տեղի ունեցավ Աշտարակի տերիտորիալ-արտադրական վարչության պարտիական ակտիվի ժողովը: Այն քննարկեց պարտիական կազ- մակերպությունների խնդիրները բերքահավաքի նախապատրաստման ու հա- ջող անցկացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում: Այդ առթիվ զեկուցումով հանդես եկավ ՀԿՊ Կենտկոմի պարտկազ- մակերպիչ Լ. Գևորգյանը:

Նա երկար չխոսեց հաջողությունների մասին: Գուցե՞ նրա համար, որ դը- րանք քիչ են կամ չկան: Ո՛չ: Արտադրական վարչության ստեղծումից հետո գյուղատնտեսության մեջ զգալի տեղաշարժ է կատարվել: Ճիշտ ըմբռնելով պարտիայի պահանջը, պայքար ծավալելով Մարտյան պլենումի որոշումների կենսագործման համար, Ապարանի և Թալինի շրջանների կոլտնտեսությունները զգալի չափով ավելացրել են հացահատիկային և շարահերկ կուլտուրաների ցանքատարածությունները: Աշտարակի և Թալինի շրջաններում նոր յուրաց- վող հողերի հաշվին տնկվել են հարյուրավոր հեկտար խաղողի և պտղատու այգիներ: Կոլտնտեսությունները գերակատարել են կաթի, բրդի, ձվի վաճառքի կիսամյակի պլանները: Լայն պայքար է ծավալվել կերի կուտակումը և հացա- հատիկի բերքահավաքը կազմակերպված անցկացնելու ուղղությամբ: Այդ գործում առանձնապես խրախուսելի է Աշտարակի շրջանի Օշականի, Ոսկեվա- զի, Օհանավանի, Թալինի շրջանի Ցամաքասարի, Սուսերի, Ապարանի շրջանի Ջրվեժի և շատ այլ կոլտնտեսությունների աշխատանքը:

Բայց պարտիայի առաջադրած նոր խնդիրները հաջողությամբ կենսագոր- ծելու, գյուղատնտեսական արտադրությունն առավել զարգացնելու, ամենա- կարճ ժամանակում երկրում մթերքների առատություն ստեղծելու համար ան- հրաժեշտ են մեծ ջանքեր: Իսկ դրա համար պետք է վերացնել եղած թերու-



թյունները, հայտաբերել և գործադրել չօգտագործված ռեզերվները, ետ մնա- ցող տնտեսությունները հասցնել առաջավորներին: Հենց այդ հարցերի շուրջն էլ ավելի հանգամանորեն խոսեցին զեկուցողն ու ելույթ ունեցողները, դրանց վրա էլ իր ուշադրությունը բևեռեց պարտիական ակտիվի ժողովը:

Աշտարակի տերիտորիալ-արտադրական վարչության մեջ մտնող Աշտա- րակի, Թալինի, Ապարանի շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները չնայած մոտ են միմյանց, բայց ունեն խիստ տարբեր կլիմայական պայման- ներ: Աշտարակի շրջանի շատ կոլտնտեսություններում, օրինակ, հացահատի- կի և խոտի հունձն արդեն ավարտվում է, իսկ Թալինի, հատկապես Ապարանի շրջանների կոլտնտեսություններում այդ աշխատանքները նոր են սկսվում: Բայց կարևորն այն չէ, թե խոտհունձը կամ հացահատիկի բերքահավաքը որ- տեղ երբ է սկսվում: Պարտիական ակտիվի ժողովը իրավացիորեն քննադատեց այդ աշխատանքների կազմակերպման գործում նկատվող անհանդուրժելի դանդաղկոտությունը:

Աշտարակի շրջանում հացահատիկի բերքահավաքը վաղուց է սկսվել, բայց 41 կոմբայնից 33-ն են աշխատում: Դրանք էլ պահեստամասեր չլինելու պատճառով հաճախ պարապուրդներ են տալիս: Կոմբայնների արտադրողա- կանությունը խիստ ցածր է, չի կազմակերպվում երկհերթ աշխատանք. հատ- կապես գործը վատ է կազմակերպված Զորափի, Ոսկեհատի, Փարպիի կոլ- տնտեսություններում, ուր ցանքերը գերհասունանում են և նոր հնձվում:

Իր ելույթում վարչության ինժեներ Ս. Հակոբյանը խիստ քննադատեց «Հայգյուղտեխնիկայի» շրջանային բաժանմունքներին, որոնք կոլտնտեսու- թյունները ժամանակին չեն ապահովում անհրաժեշտ պահեստամասերով:

—Ապարանի շրջանում բերքահավաքի նախօրեին 6 կոմբայնից միայն մեկն է պատրաստ աշխատանքի,— ասում է նա,— յուրաքանչյուր կոմբայն մի ինչ-որ մաս չունի, առանց որի մեքենան գործի գցել հնարավոր չէ: Իսկ խոտ- հնձիչները դանակներ չունեն:

Ակտիվի ժողովում առանձնակի սրությամբ դրվեց աշխատանքային կար- գապահության հարցը մի շարք կոլտնտեսություններում: Այդ տեսակետից դրությունը չափազանց վատ է Աշտարակի շրջանի Ոսկեհատ և Ագարակ գյու- ղերի կոլտնտեսություններում: Հացահատիկի բերքահավաքի, խոտհնձի, եգիպ- տացորենի, ծխախոտի և մյուս կուլտուրաների մշակության ամենապատաս- խանատու շրջանում այդ տնտեսություններում օրական դաշտ է դուրս գալիս աշխատավոր ձեռքերի 20—30 տոկոսը: Ագարակի կոլտնտեսության նախա- գահ Ս. Մուրադյանը փոխանակ ընդունելու իրենց տնտեսության հասցեին ուղղված քննադատությունը, ինչ-որ «օբյեկտիվ» պատճառաբանություններ էր փնտրում այդ երևույթը արդարացնելու համար: Նա համարձակություն չու- նեցավ մի խոսք անգամ ասելու «Արագած» թերթի № 6-ում իրենց կոլտնտեսու- թյան մասին տպագրված հոդվածի մասին, ուր նշված է, թե ինչպես նախա- գահի, կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղարի և մյուս ղե- կավար աշխատողների ընտանիքների անդամներն ու բարեկամները կոլտնտե- սությունում չեն աշխատում: Չէ՞ որ դրանց թիվը փոքր չէ:

Պարտիական ակտիվի ժողովում ելույթ ունեցող ընկերներն առաջ քաշե- ցին մի շարք կարևոր հարցեր, որոնց արագ լուծումը վճռական դեր կխաղա գյուղատնտեսական աշխատանքների բարելավման գործում: Թալինի շրջանի Կարմրաշենի սովխոզի դիրեկտոր Գ. Հովհաննիսյանը և Աշտարակի շրջանի

Արայի սովխոզի դիրեկտոր Վ. Իսկանդարյանը սրությամբ դրեցին աշխատատար պրոցեսների մեքենայացման հարցը։ Նրանք նշեցին, որ վերջին տարիների ընթացքում Թալինի և Աշտարակի ռևրում հիմնվել են մոտ 10 նոր սովխոզ, որոնք յուրացրել են հազարավոր հեկտար խոպան հողեր, վերածել դրանք այգեստանների։ Ամայի հողեր դեռ շատ կան, հետագայում աստիճանաբար դրանք կոռոգվեն, այդ տարածություններում կհիմնվեն տասնյակ հազարավոր հեկտար խաղողի ու պտղատու այգիներ։ Բայց այդ աշխատանքների մեծ մասը կատարվում է ձեռքով, որը նյութական շատ միջոցներ է խլում։ Մյուս կողմից նոր կազմակերպվող տնտեսություններում, որտեղ առանց այն էլ բանվորական ուժի պակաս է զգացվում, հարյուրավոր մարդիկ զբաղվում են այնպիսի գործերով, որոնք հեշտությամբ կարելի է մեքենայացնել։ Բայց մինչև հիմա մեզ մոտ չկան խոտ հավաքող, բարձող, տեղափոխող մեքենաներ։ Գիտնականները, հատկապես Արտաշատի մեխանիզացիայի-էլեկտրիֆիկացիայի ինստիտուտի ընկերները դեռևս շատ քիչ բան են արել այդ ուղղությամբ։

Վարչության զոոտեխնիկ Հ. Նավասարդյանը, Օշականի կոլտնտեսության նախագահ Գ. Ղուկասյանը ակտիվի ուշադրությունը հրավիրեցին անասունների ցեղի բարելավման, անասնապահական մթերքների արտադրության ավելացման և ինքնարժեքի իջեցման վրա։ Նրանք նշեցին, որ Մխչյանի սերմնավորման կայանը չի կարողանում ժամանակին ապահովել մեր բոլոր ֆերմաների պահանջը, որի հետևանքով կովերի ստերջությունը մեծ տոկոս է կազմում։ Նրանք Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունից պահանջեցին Աշտարակի տերիտորիալ-արտադրական վարչությունում կազմակերպել առանձին սերմնաբուծական կայան, որը շատ կօգնի գործին։

Պարտիական ակտիվի ժողովում ելույթ ունեցան նաև Ապարանի շրջանի Վարդենուտի կոլտնտեսության նախագահ Ա. Հարությունյանը, Թալինի շրջանի Ճղարշիկ գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղար Ջ. Առաքելյանը, ՀԿՊ Թալինի շրջկոմի քարտուղար Ս. Մելքոնյանը և ուրիշներ։

Ակտիվի ժողովին մասնակցում էր և ընդարձակ ելույթ ունեցավ ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Մելքոնյանը։

Նա նշեց, որ ինչպես ռեսպուբլիկայի, այնպես էլ Աշտարակի տերիտորիալ-արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները հաջող պայքար են ծավալել ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների կենսագործման համար և հասել են որոշակի հաջողությունների։

Սակայն ակտիվի ժողովը ցույց տվեց,— ասում է ընկ. Մելքոնյանը,— որ աշխատանքի կազմակերպման և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում դեռևս կան լուրջ թերություններ, պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսությունների վարչությունները դեռ ամբողջապես չեն հրաժարվել աշխատանքի կազմակերպման հին մեթոդներից ու ձևերից, ինչպես հարկն է չեն բարձրացրել կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Այդ և մյուս թերություններով պետք է բացատրել այն, որ մսի արտադրությունը, նախորդ տարվա համեմատությամբ, ոչ միայն չի ավելացել, այլև նվազել է։ Անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կրճատվել է 350 գլխով, մանրինը՝ 15.000 գլխով։ Վատ է կազմակերպված անասունների արոտային բուժումը։ Կամ վերցնենք ցանքերի մշակությունը Թալինի շրջանում.



650 հեկտար եգիպտացորենից 150-ն է մշակվել, այն էլ մեկ անգամ։ Նույնը կարելի է ասել ծխախոտի, շաքարի ճակնդեղի և մյուս կուլտուրաների մշակության մասին։ Գործերը լավ չեն նաև խոտհնձի ու սիլոսացման գործում։ Դրանք թերություններ են, որոնց առկայության դեպքում հնարավոր չէ լուրջ հաջողությունների հասնել։

Ընկ. Մելքոնյանն ընդգծեց, որ գյուղատնտեսական աշխատանքներում դեռևս մոբիլիզացիոն վիճակ չի նկատվում և այդ ուղղությամբ ինչպես արտադրական վարչությունը, այնպես էլ պարտիական կազմակերպությունները շատ անելիքներ ունեն։ Հարկավոր է բարձրացնել մարդկանց պատասխանատվությունը գյուղատնտեսության ղեկավարման նկատմամբ, խոշոր տեղաշարժ ստեղծել արտադրության բոլոր տեղամասերում։

Իր ելույթի վերջում ընկ. Մելքոնյանը հույս հայտնեց, որ Աշտարակի տերիտորիալ արտադրական վարչության աշխատողները, բոլոր մասնագետները, տնտեսությունների ղեկավարները և պարտիական կազմակերպությունները կանեն ամեն ինչ՝ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։

## ԱՐՏԱՇԱՏՈՒՄ

Տեղի ունեցավ Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչության պարտիական ակտիվի ժողովը։

Ցանքերի մշակության, բերքահավաքի նախապատրաստման ու անցկացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի գործում կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին ժողովում զեկուցումով հանդես եկավ արտադրական վարչության պետ ընկ. Յ. Խաչատրյանը։

Զեկուցողը նշեց, որ վարչության մեջ մտնող կոլտնտեսություններն ու սովխոզները այս տարվա գարնան-գյուղատնտեսական աշխատանքները կատարեցին ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում և բարձր որակով։ Պլանավորված 9951 հեկտար գարնանացանի դիմաց ցանվեց 10101 հեկտար։ Գերակատարվել է հացահատիկի, ծխախոտի, կերի արմատապտուղների, բոստանային կուլտուրաների ցանքերի պլանները։ Այս տարի ցանվել է 256 հեկտարով ավելի եգիպտացորեն և 110 հեկտարով ավելի շաքարի ճակնդեղ, քան անցած տարի։ Արտաշատի և Վեդու բամբակագործները 2758 հեկտարի ցանքը կատարել են քառակուսի-բնային եղանակով։ Շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում հաջողությամբ է ընթանում բամբակի ցանքի ու խաղողի այգիների մշակությունը։

Վարչության գոտու կոլտնտեսություններում ու սովխոզներում զգալի տեղ է գրավում պտղաբուծությունը։ Կիրովի անվան սովխոզի, Փոքր Վեդու, Մեղրու շրջկենտրոնի, Արտաշատի շրջանի Շահումյանի, Ծաղկաշենի, Մրգավանի, Կաչնաշուտի և մի շարք կոլտնտեսություններ հեկտարից արդեն ստացել են 64—145 ցենտներ պտուղ։

Զեկուցողը Արտաշատի շրջանի Աղատավանի, Այգեստանի, Ոստանի, Արևշատի, Լուսակերտի և ուրիշ կոլտնտեսությունների քննադատեց այն բանի համար, որ, չնայած իրենց հնարավորություններին, այս տարի զգալիորեն պակասեցրել են եգիպտացորենի ցանքատարածությունները։ Իսկ Արտաշատի

շրջանի Մրգանուշի, Բամբակավանի, Վեդու շրջանի Ենգիջայի, Շաղափլուի կոլտնտեսությունները և «Արարատի» (Արտաշատ) ու Սովետաշենի (Վեդի) սովխոզները չեն կատարել կերի արմատապտուղների ցանքի պլանը։

Արտաշատի շրջանի Մրգանուշի, Ազատավանի, Ոստանի, Կանաչուտի Ջրաշովտի, Վեդու շրջանի Ղարալարի և մի շարք այլ կոլտնտեսություններում խիստ ձգձգվում է բամբակենու մշակությունը. պլանտացիաների մեծ մասը պատված են մոլախոտերով։ Հաճախ ոռոգումը կատարվում է առանց բույսերի պահանջը հաշվի առնելու, այն չի զուգակցվում սնուցման և մշակության մյուս աշխատանքների հետ, որի հետևանքով ձգձգվում է բամբակենու վեգետացիան։ Այգիների մշակման բնագավառում անբավարար են աշխատում Արտաշատի շրջանի Դիմիտրովի, Կանաչուտի, Լուսակերտի, Մխչյանի, Արարատի, Ենգիջայի կոլտնտեսությունները և «Դվին» սովխոզը։

Անասնապահության բնագավառում վարչության առջև դրված խնդիրները կատարելու համար վճռական նշանակություն ունի կերի կայուն բազայի ստեղծումը։ Սակայն մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում լուրջ ուշադրություն չի նվիրվում կերի կուլտուրաների և, հատկապես, եգիպտացորենի մշակության ու խնամքի վրա։

«Հայգյուղտեխնիկա»-ի շրջանային բաժանմունքների ինժեներա-տեխնիկական անձնակազմի և կոլտնտեսությունների ղեկավարների ու մեխանիզատորների կողմից աչքաթող է արվում տեխնիկայի պահպանման գործը, վատ է կազմակերպված դաշտում աշխատող մեքենաների տեխնիկական սպասարկումը։ Ռեսպուբլիկայի մատակարարող կազմակերպությունները կոլտնտեսություններին ու սովխոզներին ժամանակին չեն ապահովում մեքենաների պահեստամասերով, որի հետևանքով մեքենաները լրիվ կարողությամբ չեն գործում։

Այնուհետև զեկուցողը հանգամանորեն կանգ առավ անասնաբուծական մթերքների արտադրության և վաճառքի ուղղությամբ առաջին կիսամյակում ձեռք բերած հաջողությունների ու դեռևս գոյություն ունեցող թերությունների վրա։ Արտադրական վարչության մեջ ընդգրկված կոլտնտեսություններն ու սովխոզները մինչև հուլիսի 1-ը պետությանը վաճառել են 5097 տոննա կաթ կամ պլանը կատարել են 110,5 տոկոսով։ Արտաշատի շրջանը կաթի վաճառքի կիսամյա պլանը կատարել է 95,9 տոկոսով, Վեդու շրջանը՝ 129,6 տոկոսով, Մեղրու շրջանը՝ 135 տոկոսով։

Վատ է վիճակը մսի վաճառքի գործում։ Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները մսի վաճառքի կիսամյա պլանը կատարել են 56,1 տոկոսով։ Մեղրու շրջանը 129 տոննայի դիմաց պետությանը վաճառել է 39,9 տոննա միս կամ պլանը կատարել է միայն 31 տոկոսով, Արտաշատի շրջանը՝ 42,7 տոկոսով, Վեդու շրջանը՝ 85,4 տոկոսով։ Մեղրու շրջանի Լեհվազի, Վարդանաձորի, Մարալզամիի կոլտնտեսությունները մսի վաճառքի կիսամյա պլանը կատարել են 13—23 տոկոսով, Արտաշատի շրջանի Մուղանի, Լուսակերտի, Դիտակի, Ջրաշովտի, Ն. Դվինի, Նովրզլուի և Բերքանուշի կոլտնտեսությունները՝ 8—20 տոկոսով, Վեդու շրջանի Թայթանի, Այգևանի, Արարատի, Ղարալարի կոլտնտեսությունները՝ 55—70 տոկոսով։ Դա գլխավորապես անասունների բտումը վատ կազմակերպելու հետևանք է։ Ամառային արոտավայրերում (առանձին ֆերմաներ) չեն առանձնացրել գիրացվող անասունների խմբեր, չեն



կազմակերպել գիշերային արոտ, որի պատճառով անասունների մեծ մասը
միջակից ցածր գիրություն ունի։
Ջեկուցողը սուր քննադատության ենթարկեց Արտաշատի և Վեդու շրջան-
ների մի շարք կոլտնտեսությունների ղեկավարների, որոնք անհիմն պատճառ-
ներով լիկվիդացրել են խոզաբուծական ֆերմաները։ Առանձին շրջանների մի
շարք կոլտնտեսություններում դեռևս վատ են խնամում ու պահպանում անա-
սուններին, որի հետևանքով էլ կորուստներ են լինում։ Անցած վեց ամսում
Մեղրու շրջանում տեղի են ունեցել 190 գլուխ խոշոր եղջերավոր անասունների,
563 գլուխ խոզերի և 1188 գլուխ ոչխարների անկումներ։
Միանգամայն անբավարար է աշխատում Մխչյանի տոհմաբուծարանը,
որը արոտավայրերում վատ է կազմակերպել անասունների արհեստական
սերմնավորումը։
Իր զեկուցման վերջում ընկ. Յ. Խաչատրյանը վերլուծեց արտադրական
վարչության տեսուչ-կազմակերպիչների և մասնագետների աշխատանքը, նշեց
այդ ուղղությամբ նկատվող թերությունները։
Զեկուցման շուրջը ծավալվեց մտքերի լայն փոխանակություն, որին մաս-
նակցեցին 11 ընկեր։
Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի կոլտնտեսության վարչության նա-
խագահ Վ. Հովսեփյանը պատմեց, թե իրենց մոտ ինչ են արել ՍՄԿՊ Կենտ-
կոմի Մարտյան պլենումի որոշումները կենսագործելու համար։ Նա միաժա-
մանակ քննադատեց Հայկոոպին և «Հայգյուղտեխնիկայի» բաժանմունքին,
որոնք կոլտնտեսություններին ու սովխոզներին չեն ապահովում գյուղատնտե-
սական մեքենաների պահեստային մասերով և գործիքներով։
Խոսելով նոր կազմակերպված «Դվին» (Վեդի) սովխոզի գործերի վիճա-
կի մասին, սովխոզի դիրեկտոր Ա. Գրիգորյանը նշեց, որ անհրաժեշտ է տնտե-
սությունն ապահովել բանվորական ուժով և միջոցներ հատկացնել բնակարա-
նային շինարարության համար, որը սովխոզի նեղ տեղերից մեկն է։
Մեղրու շրջկենտրոնի կոլտնտեսության վարչության նախագահ Կ. Պողոս-
յանը իր ելույթում նշեց, որ իրենց կոլտնտեսությունում ստեղծել են բո-
լոր պայմանները՝ հեկտարից 200 ցենտներ խաղող, 150—160 ցենտներ ծառա-
պտուղ ստանալու և գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վա-
ճառքի գծով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները պատվով
կատարելու համար։ Նա միաժամանակ ընդգծեց, որ վատ է ընթանում արտա-
դրության աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Երկու-երեք ամիս է,
ինչ տեղադրվել է կթի ագրեգատը, բայց այն չի գործում տեխնիկական թե-
րությունների պատճառով։ Այդ թերությունները վերացնելու գործում իրենց ոչ
ոք մասնագիտական օգնություն ցույց չի տալիս։
Ն. Ջրաշենի կոլտնտեսության (Արտաշատ) վարչության նախագահ Ջ.
Նիկողոսյանը առաջ քաշեց գյուղատնտեսական աշխատանքների (հատկապես,
քարքարոտ, խոպան հողերի յուրացման) մեքենայացման հարցը։ Նա քննադա-
տեց գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման Արտաշատի
գիտահետազոտական ինստիտուտին, որը այդ գործում անբավարար է օգնում
կոլտնտեսություններին և սովխոզներին։ Երկար փորձարկումներից հետո ար-
տադրության մեջ չեն երևում քար հավաքող, այգիները փոշոտող մեքենա-
ները։
Վարչության տեսուչ-կազմակերպիչ Ս. Վարդանյանը պատմեց Վեդու շըր-

ջանի Մեծ Վեդի, Գոռավան, Թայթան, Զիման գյուղերի կոլտնտեսություններում կատարած իր աշխատանքի փորձի մասին։

Վեդու շրջանի Նոր Կյանք գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Հ. Գրիգորյանը պատմելով, թե իրենց կոլտնտեսականները ինչ բնագծեր են նվաճել ՍՄԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները կենսագործելու ճանապարհին, նշեց, որ անբավարար ջրամատակարարման հետևանքով ձըգձըգվում է ցանքերի, հատկապես բամբակենու ոռոգումը։

Անդրադառնալով մթերող կազմակերպությունների աշխատանքին, Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Խ. Մանասարյանը քննադատական խոսք ասաց Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրության հասցեին, որը չի ճկունացրել իր ապարատի աշխատանքը։ Նա միաժամանակ նշեց, որ ամառային արոտավայրերում անհրաժեշտ պայմաններ չեն ստեղծվել կաթի ընդունման ու վերամշակման, կոլտնտեսությունների կողմից ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։

Պարտիական ակտիվի ժողովում ելույթ ունեցան նաև Աղամզալու գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Իսագյուլյանը, Արմաշի սովխոզի պարտկազմակերպության քարտուղար Հ. Հովհաննիսյանը և ուրիշներ։ Ընկ. Իսագյուլյանը նշեց, որ ՀԿՊ Արտաշատի շրջկոմը և շրջսովետի գործկոմը անհրաժեշտ օգնություն չեն կազմակերպում համեմատաբար թույլ կոլտնտեսություններին, անբավարար է ծավալվում շինարարական աշխատանքը։

Ակտիվի ժողովին մասնակցում էր և ելույթ ունեցավ ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Մելքոնյանը։

Քննարկված հարցի մասին ակտիվի ժողովն ընդունեց բանաձև։

---

**ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1960-1980թ.թ.**

ՍՊԱՌՄԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ
ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ „Բ" ԽՈՒՄԲ
ՄԻԼԻԱՐԴ ՌՈՒԲԼԻ

250-260
121
50
1960թ
1970թ
1980թ

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԸ ԵՎ ՆՐԱ ԻՋԵՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Ա. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Արտադրանքի ինքնարժեքի հետևողական իջեցումը ներարտադրական կուտակումների անընդհատ ավելացման գլխավոր աղբյուրն է։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում այդ խնդիրը առաջին պլանի վրա է մղվում։ Նյութական արտադրության աննախընթաց ընդլայնումն ու կատարելագործումը առաջիկա երկու տասնամյակների ընթացքում և դրա հիման վրա մեր երկրում բարիքների առատության ստեղծումը կպահանջեն կուտակման լրացուցիչ հսկայական միջոցներ։ Դրանք պետք է ստեղծվեն հասարակական աշխատանքի խնայողության, այդ աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ, որը, վերջին հաշվով, իր արտահայտությունը կգտնի արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկաբար իջեցման մեջ։

Առաջիկայում «...տնտեսության ղեկավարման բոլոր օղակներում գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացվի նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների, բնական հարստությունների առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործման և ավելորդ ծախսերի ու կորուստների վերացման վրա։ Հանուն հասարակության շահերի, առավելագույն արդյունքների հասնել նվազագույն ծախսերով՝ այս է տնտեսական շինարարության անվեհրապարահ օրենքը» (ՍՄԿԿ Ծրագիր, Հայպետհրատ, էջ 102—103)։

Արտադրության ինքնարժեքը սոցիալիստական արտադրահեղանակին հատուկ տնտեսական կատեգորիա է։ Արտադրանքի ինքնարժեքը դրամական արտահայտությամբ ցույց է տալիս այն ծախսումների մեծությունը, որոնք կապված են տվյալ արտադրանքի պատրաստման ու իրացման հետ։ Ինքնարժեքն ընդգրկում է արտադրանքի պատրաստման վրա ծախսած արտադրամիջոցների արժեքը, բանվորների կատարած աշխատանքի վարձատրությունը, այլ ձեռնարկությունների ծառայությունների արժեքը, վերջապես, արտադրանքի իրացման, ինչպես նաև արտադրության կառավարման ու սպասարկման հետ կապված ծախքը։

Արտադրանքի ինքնարժեքը ձեռնարկության աշխատանքի որակի ամենակարևոր ցուցանիշներից մեկն է։ Նրա մեջ խտացած ձևով դրսևորվում են

այդ ձեռնարկության գործունեության բոլոր կողմերը։ Տեղին է ասված՝ ինքնարժեքը արտադրական ձեռնարկության գործունեության հայելին է։

Ինքնարժեքը ապրանքի արժեքի մի մասն է։ Ապրանքի արժեքի և ինքնարժեքի տարբերությունը կազմում է հավելյալ արդյունքը։ Արդյունաբերական ձեռնարկություններում այն հանդես է գալիս զուտ եկամտի, առաջին հերթին՝ շրջանառության հարկի և օգուտների ձևով։ Հետևաբար, որքան նվազի արտադրանքի ինքնարժեքը, այնքան հավելյալ արդյունքը կմեծանա։ Վերջինիս ավելացմամբ շահագրգռված է ինչպես սովետական հասարակությունն ամբողջությամբ վերցրած, այնպես էլ յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկություն և նրանում աշխատող ամեն մի բանվոր-ծառայող։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ ձեռք բերված հավելյալ արդյունքը սոցիալիզմի պայմաններում ի սպաս է դրվում ընդլայնած վերարտադրության և, վերջին հաշվով, իրենց՝ աշխատավորների նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարմանը։ Այդ իմաստով ինքնարժեքի կատեգորիան արմատապես տարբերվում է կապիտալիստական արտադրության ծախքերի հասկացությունից, որոնք սոսկ շահագործողական հարաբերություններ են արտահայտում։ Կապիտալիստական արտադրության ծախքերի իջեցումն ուղղված է աշխատավորների շահերի դեմ. այդ ծախքերի իջեցումից օգտվում են ոչ թե աշխատավորները, այլ միայն կապիտալիստները։ Բազմապատկելով իրենց հարստությունը, նրանք այդպիսով ընդլայնում, ուժեղացնում են աշխատավոր մասսաների շահագործումը։

Արտադրության ինքնարժեքի՝ որպես սոցիալիստական տնտեսության ուրույն կատեգորիայի առանձնահատկություններից մեկն այն է, որ, հատկապես, կենտրոնացված զուտ եկամտի ստեղծման և օգտագործման գծով, այն յուրաքանչյուր ձեռնարկության գործունեությունը (բյուջեի հետ ունեցած հարաբերությունների միջոցով) կապում է համապետական, ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունեցող խնդիրների լուծման հետ։ Տնտեսական գործնական աշխատանքում այդ կապի ըմբռնումը և պահպանումը իմաստավորում, արժեքավորում է ամեն մի սովետական տնտեսվարի, ձեռնարկության ինժեներատեխնիկական ղեկավար անձնակազմի և ողջ բանվորական կոլեկտիվի գործունեությունը, գործի նկատմամբ նրանք ցուցաբերում են պետական մոտեցում։ Իրոք, ձեռնարկությունների կողմից բյուջեի նկատմամբ ունեցած պարտավորությունների ժամանակին կատարումը (որը հնարավոր է, եթե կատարվում են ինքնարժեքի և կուտակումների պլանները) բարենպաստ պայմաններ է ստեղծում ժողովրդական տնտեսության անխափան ֆինանսավորման և դրանով իսկ նրա առաջընթացն ապահովելու համար։

Ցավոք սրտի պետք է նշել, որ այդ գործում ռեսպուբլիկայի ոչ բոլոր արդյունաբերական ձեռնարկություններն են, որ գտնվում են իրենց կոչման բարձրության վրա։ Անցյալ, 1961 թվականին, արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքի պլանը ռեսպուբլիկան, ամբողջությամբ վերցրած, կատարեց։ Բայց ավելի քան վաթսուն ձեռնարկություն թերակատարեցին ինքնարժեքի առաջադրանքները։ Մինչդեռ արդյունաբերության որոշ ճյուղերում ապրանքային արտադրանքի մի ռուբլուն ընկնող ծախսերը 1961 թվականին, համեմատած 1960 թվականի հետ, զգալի չափով նվազեցին (գունավոր մետալուրգիայի ճյուղում՝ 7,8, ցեմենտի արտադրության մեջ 2,9 տոկոսով և այլն), մի շարք այլ ճյուղերում ընդհակառակը, այդ ծախսերը չարդարացված



կերպով ավելացան (շինանյութերի արդյունաբերության մեջ 0,4, թեթև արդյունաբերության մեջ 1,5 տոկոսով)։

Հաճախ լավ աշխատող ձեռնարկությունների քողի տակ թաքնվում են իրենց ինքնարժեքի պլանը ձախողած, վատ աշխատող ձեռնարկությունները։

Խայտառակ են ո՛չ միայն տարբեր ձեռնարկությունների արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքների կատարման ցուցանիշները, այլև ինքնարժեքի վրա ազդող առանձին գործոնները։ Այդ վերաբերում է ինչպես բավարար կամ անբավարար աշխատող ձեռնարկություններին և արդյունաբերության առանձին ճյուղերին, այնպես էլ արդյունաբերությանն ամբողջությամբ վերցրած։ Այդ երևույթի հետևանքն այն է, որ մի բնագավառի նվաճումները հաճախ ի չիք են դառնում մի այլ բնագավառի թերությունների պատճառով։ Այսպես, 1961 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ նյութերի, դնովի շինվածքների, կիսաֆաբրիկատների և կոոպերացված կարգով կատարված սպասարկումների խնայողությունը կազմել է 1197 հազար ռուբլի, բայց դրա դիմաց խոտանի պատճառով թույլ է տրվել 1601 հազար ռուբլու կորուստ։ Ցեխային, ընդհանուր գործարանային, ինչպես նաև սարքավորումների պահպանման ու շահագործման ծախսերի գերածախսը կազմել է 521 հազար, իսկ ոչ արտադրական ծախսերը՝ 394 հազար ռուբլի։ Այս կարգի խոշոր թերություններով հանդերձ, որոնք, ի դեպ, ամենից շատ նկատվում են ժողտնտխորհի ձեռնարկություններում, ամբողջ արդյունաբերության գծով, ինքնարժեքի պլանը 1961 թվականին կատարվեց։ Այստեղից դժվար չէ եզրակացնել, որ արտադրանքի ինքնարժեքի իջեցման բնագավառում շատ խոշոր ռեզերվներ կան։

Ինքնարժեքի պլանի կատարման վիճակը բավարար չէր նաև ընթացիկ տարվա առաջին եռամսյակում։ Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը, պլանի համեմատությամբ, բարձրացել է 431 հազար ռուբլով։ Առաջին եռամսյակում ժողտնտխորհի 252 ձեռնարկություններից 61-ը ապրանքային արտադրանքի մի ռուբլուն ընկնող պլանով սահմանված ծախքաչափը չեն պահպանել, այսինքն՝ ինքնարժեքի իջեցման առաջադրանքը թերակատարվել է։ Թեթև արդյունաբերության ճյուղում գործող 48 ձեռնարկություններից 21-ը չեն կատարել ինքնարժեքի իջեցման պլանները։ Ինքնարժեքի պլանների կատարման տեսակետից խոշոր ճեղքվածք ունեն Լենինականի տեքստիլ կոմբինատը, Կիրովականի կոշիկի ֆաբրիկան, Երևանի I և III կոշիկի գործարանները։ Ինքնարժեքի իջեցման առաջադրանքները չեն կատարել նաև մեքենաշինական մի շարք ձեռնարկություններ, այդ թվում և ավտոպահեստամասերի գործարանը։

1962 թվականի առաջին եռամսյակում, ինչպես և նախորդ տարում արդյունաբերության մեջ մեծ են եղել խոտանից ստացված կորուստները (316 հազար ռուբլի) և ոչ արտադրական ծախքերը (435 հազար ռուբլի)։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման ռեզերվներ կան արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում ու ձեռնարկություններում։ Այդպիսիք առանձնապես մեծ են եռ մնացող գործարաններում ու ֆաբրիկաներում։ Ինքնարժեքի իջեցման ռեզերվների ուսումնասիրության, հայտաբերման և օգտագործման վրա անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել։

Քննենք ավտոպահեստամասերի գործարանի արտադրանքի ինքնարժեքի

իջեցման հարցը, որը կարող է հետաքրքրել ռեսպուբլիկայի մյուս արդյունաբերական ձեռնարկություններին։

Ավտոպահեստամասերի կոլեկտիվը ռեսպուբլիկայի մյուս արդյունաբերական ձեռնարկությունների հետ մեկտեղ, անշուշտ, հասել է որոշակի նվաճումների։ Բայց այդ մասին չէ այժմ մեր խոսքը։ Վերջին 4—5 տարիների ընթացքում գործարանի տնտեսական-ֆինանսական գործունեության ցուցանիշներն իջել են։ Գործարանը, որն անցյալում շահութաբեր էր, այժմ վնաս է կրում։

Ավտոպահեստամասերի գործարանի հիմնական արտադրական ֆոնդերը 1958—1961 թթ. ժամանակաշրջանում ավելացել են 72, այդ թվում բանվորական մեքենաների և սարքավորումների արժեքը՝ 50 տոկոսով։ Գործարանը համալրվել է նոր, բարձր արտադրողական մեքենաներով ու սարքավորումներով, հետևապես աճել են նրա արտադրական կարողությունները։ Մինչդեռ խիստ դանդաղ է ավելանում գործարանի արտադրանքի ծավալը, որը նախորդ երկու տարիների համեմատությամբ աճել է միայն 6—7 տոկոսով։

Ժողտնտխորհի կողմից սահմանվող ավտոպահեստամասերի արտադրության պլանները չեն ապահովում գործարանի վերելքը։ Այսպես, եթե 1960 թվականի համար հաստատված պլանն ընդունենք 100, ապա 1961 թվականին այն կազմել է 91,7, իսկ 1962 թվականին՝ 102։ Դրա պատճառով գործարանի ռեալ արտադրական կարողություններն օգտագործվում են ոչ ավելի, քան 60 տոկոսի սահմաններում։ Ավելին, մի շարք դետալների արտադրության գծամասերում այդ կարողությունների օգտագործման պլանային ցուցանիշը նույնիսկ իջնում է։ Դա ավելի ցածր է, քան գործարանի համապատասխան միջին ցուցանիշը։ Այդ մասին է վկայում ներքոհիշյալ աղյուսակը։

| Արտադրվող մասերի համարները | Գործարանի առկա արտադրողական կարողությունը (հազ. հատ) | Պլանով սահմանված արտադրության չափը (հազ. հատ) | | | Գործարանի առկա կարողության օգտագործման տոկոսն ըստ 1962 թ. պլանի |
|---|---|---|---|---|---|
| | | 1960 թ. | 1961 թ. | 1962 թ. | |
| 32—0333 | 68,0 | 100,0 | 45,0 | 36,4 | 53,5 |
| 32—0403 | 90,0 | 56,0 | 30,0 | 20,6 | 22,9 |
| 14—0312 | 70,0 | 60,0 | 32,0 | 45,0 | 64,3 |
| 32—042 | 60,0 | 50,0 | 22,0 | 22,7 | 37,8 |
| 17—015 | 350,0 | 250,0 | 85,0 | 11,0 | 3,1 |
| 120—1701137 | 250,0 | 250,0 | 171,0 | 126,0 | 50,4 |
| 11—6256 | 350,0 | 210,0 | 217,0 | 146,7 | 41,9 |
| 401—1005013 | 12,0 | 10,0 | 5,5 | 2,5 | 20,8 |
| 401—1006013 | 20,0 | 6,0 | 5,5 | 2,1 | 10,5 |
| 400—2902135 | 120,0 | 120,0 | 65,0 | 40,0 | 33,3 |
| Թված 10 մասերը արժեքային արտահայտությամբ (հազ. ռուբ.) | 2809 | 2058 | 1473 | 1132 | 40,3 |

Ավտոպահեստամասերի գործարանի արտադրական կարողությունների թերբեռնվածությունը հանգեցնում է այն բանին, որ հիմնական արտադրական ֆոնդերի յուրաքանչյուր 1000 ռուբլուն ընկնող համախառն արտադրանքի թողարկումը տարեցտարի պակասում է։ Այսպես, եթե 1958 թվականին այն հավասար է եղել 1500, իսկ 1960 թվականին 1359 ռուբլու, ապա 1961 թվականին այն իջել է մինչև 1158-ի։ Նույնը վերաբերում է հիմնական ֆոնդերի ակ-



տիվ մասի օգտագործմանը։ Այսպես, բանվորական մեքենաների և սարքավորումների արժեքի յուրաքանչյուր 1000 ռուբլուն ընկած արտադրանքը համապատասխանորեն կազմել է 1958 թ. 2149, 1959 թ.՝ 2476, 1960 թ.՝ 2216 և 1961 թ.՝ 1941 ռուբլու։ Այս տվյալները վկայում են, որ գործարանում իջնում է հիմնական ֆոնդերի օգտագործման տնտեսական արդյունավետությունը։ Նույն երևույթը նկատվում է նաև շրջանառու ֆոնդերի օգտագործման ասպարեզում։ Ահա համապատասխան տվյալներ.

| | 1959 թ. | 1960 թ. | 1961 թ. |
|---|---|---|---|
| Շրջանառու միջոցների յուրաքանչյուր ռուբլուն ընկնող իրացված ապրանքային արտադրանքի գումարը ռուբլիներով . . . . . . . | 2,42 | 2,00 | 2,34 |
| Շրջանառու միջոցների շրջապտույտը օրերով . . | 150 | 182 | 156 |

Ինչպես տեսնում ենք, շրջանառու միջոցների օգտագործման արդյունավետության նվազումն արտահայտվում է այն բանում, որ գնալով դանդաղում է դրանց շրջապտույտը։

Գործարանում համախառն և ապրանքային արտադրանքի ծավալն ամբողջությամբ վերցրած ավելի դանդաղ է աճում, քան աշխատողների թիվը։ Այսպես, 1959—1961 թվականների ընթացքում արտադրանքն աճել է 1,1 տոկոսով, իսկ աշխատողների թիվը՝ 12,2 տոկոսով։ Այս տարբերությունն ավելի է մեծացել ընթացիկ տարվա առաջին եռամսյակում։

Գործարանի աշխատողների թվի համեմատաբար արագ աճը բացատրվում է ասորտիմենտի մեջ տեղի ունեցող փոփոխություններով՝ հօգուտ առավել աշխատատար, հաճախ ոչ շահութաբեր մասերի արտադրության։ Այդ կարգի փոփոխություններ իրոք լինում են գործարանում։ Դրա հետևանքով աշխատանքի արտադրողականության ռեալ պատկերը, արժեքային արտահայտությամբ, աղավաղվում է։ Այսպես, եթե մեկ աշխատողին ընկնող արտադրանքը արժեքային արտահայտությամբ 1959 թվականին ընդունենք 100, ապա 1960 թվականին այն իջել է 95-ի, իսկ 1961 թվականին՝ 85-ի։ Իրականում աշխատանքի արտադրողականությունը գործարանում, նամանավանդ հիմնական բանվորների մոտ, աճել է։ Այդ մասին են վկայում նորմա-ժամերով աշխատանքի արտադրողականության հաշվարկները։ Այնուամենայնիվ աշխատանքի արտադրողականությունը գործարանում բավարար չափով չի բարձրացել, որպեսզի դրա շնորհիվ կանխվեր աշխատողների թվի համեմատաբար արագ ավելացումը։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է նշել, որ 1959—1961 թվականների աշխատանքի արտադրողականության պլանը (որտեղ հաշվի են առնվել վերոհիշյալ ասորտիմենտային փոփոխությունները) միշտ թերակատարվել է։ Նույնն է վիճակը և ընթացիկ տարվա առաջին եռամսյակում։

Ավտոպահեստամասերի գործարանում աշխատուժը անբավարար է օգտագործվում։ Այստեղ կան աշխատանքի արտադրողականության բարձրացման մեծ հնարավորություններ։ Որպես ապացույց կարելի է բերել ռիթմիկության վերաբերյալ հետևյալ ցուցանիշները.

Արտադրանքի թողարկումն ըստ տասնօրյակների

| | 1961 թ. ամբողջությամբ | այդ թվում ըստ առանձին ամիսների | | | | 1962 թ. առաջին կիսամյակ |
|---|---|---|---|---|---|---|
| | | մայիս | հոկտեմբեր | նոյեմբեր | դեկտեմբեր | |
| 1-ին տասնօրյակ | 19.1 | 14,4 | 12.9 | 11,0 | 6,8 | 9,6 |
| 2-րդ տասնօրյակ | 28,7 | 35,1 | 22,9 | 21,4 | 21,8 | 23,6 |
| 3-րդ տասնօրյակ | 52,8 | 50,5 | 64,2 | 64,6 | 71,4 | 66,8 |

Այսպիսով, յուրաքանչյուր ամսվա առաջին և երկրորդ տասնօրյակների ընթացքում ավտոպահեստամասերի գործարանի աշխատողների անձնակազմը առնվազն երկու-երեք անգամ պակաս արտադրողականությամբ է աշխատում, քան երրորդ տասնօրյակում։ Ինչ խոսք, որ այս հանգամանքը խիստ բացասաբար է ազդում գործարանի տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշների վրա։

Աշխատանքի արտադրողականության վրա բացասաբար են անդրադառնում նաև բանվորական ժամանակի կորուստները։ Միայն այս տարվա առաջին եռամսյակում գործալքումները կազմել են 2010 մարդ-օր, կամ բանվորների աշխատած օրերի 2—3 տոկոսը։ Դրա հետ մեկտեղ գործարանում հաճախ է կիրառվում արտաժամյա աշխատանքը։

Բացի վերոհիշյալից, անբավարար է օգտագործվում բանվորական աշխատաժամանակը յուրաքանչյուր հերթափոխության ընթացքում։ Տնտեսագիտության ինստիտուտի 1961 թվականի սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատաժամանակի կորուստներն այստեղ կազմել են 47,4 տոկոս։ Դրանք հիմնականում բացատրվում են արտադրության և աշխատանքի կազմակերպման գործում եղած խոշոր թերություններով։

Աշխատանքի արտադրողականության վրա բացասաբար է ազդում բանվորների հոսունությունը։ 1961 թվականին գործարանում աշխատանքի են ընդունվել 629 մարդ, հեռացվել են 701, համապատասխանորեն այս տարվա 4 ամիսներին ընդունվել են 239 և հեռացվել 196 մարդ։ Ընդ որում մեծ մասամբ գործարանից հեռանում են որակավորում ստացած երիտասարդ կադրերը, որոնք աշխատանքի են անցնում Երևանի այլ մեքենաշինական գործարաններում։ Աշխատուժի հոսունության պատճառները բազմազան են, սակայն դրանցից ամենակարևորն այն է, որ գործարանում դեռևս չեն կարողանում լիարժեք օգտագործել աշխատուժը։

Գործարանում որակավորված երիտասարդ բանվորների զգալի մասը աշխատում է թերբեռնված, դրա պատճառով նրանք աշխատում են հեռանալ և գտնել նոր աշխատանք, ինչպես և վաստակի ավելի նպաստավոր պայմաններ։ Աշխատուժի հոսունության խնդրում որոշակի դեր են խաղում համանման գործարաններում բանվորների փաստացի վաստակի միջև եղած չարդարացված տարբերությունները։ Այս խնդիրը պետք է լրջորեն մտահոգի ժողտնտխորհի՝ աշխատավարձի խնդիրներով զբաղվող աշխատողներին։

Գործարանի առկա կարողությունների թերբեռնվածության (որն արտահայտվում է նրա համար շարված պլանների հաստատման մեջ) և աշխատանքի արտադրողականության անբավարար աճի հետևանքով խախտվել է ձեռ-



նարկության գործունեության հիմնական ցուցանիշների միջև տնտեսական իմաստով ճիշտ, նորմալ հարաբերակցությունը։ Արդյունաբերական-արտադրական անձնակազմի թվի և աշխատավարձի ֆոնդի աճը մի քանի անգամ գերազանցում է համախառն ու ապրանքային արտադրանքի աճը։ Միջին տարեկան աշխատավարձն ավելանում է, մինչդեռ աշխատանքի արտադրողականության ցուցանիշը ետ է մնում։ Այդ մասին են վկայում հետևյալ թվերը։

| | Տոկոսներով | |
|---|---|---|
| | 1961 թ. համեմատ. 1959 թ. հետ | 1962 թ. (պլան) համեմատ. 1959 թ. հետ |
| 1. Համախառն արտադրանքը . . . . . . . | 101,2 | 107,3 |
| 2. Արդյունաբեր. արտադր. անձնակազմի թիվը . . . | 119,3 | 120,2 |
| այդ թվում բանվորներ . . . . . . . | 118,9 | 117,8 |
| 3. Աշխատավարձի ֆոնդը . . . . . . | 124,5 | 127,3 |
| այդ թվում բանվորների աշխատավարձի ֆոնդը . . | 121.9 | 123,8 |
| 4. Մեկ աշխատողի միջին տարեկան աշխատավարձը . . | 104.1 | 105,9 |
| այդ թվում. բանվորներինը . . . . . . | 102.5 | 105,2 |
| 5. Մեկ աշխատողի հաշվով արտադրանքի թողարկումը . | 84.6 | 89.3 |

Ինչպես հայտնի է, սոցիալիստական տնտեսության զարգացման կարևորագույն օրինաչափություններից մեկն այն է, որ աշխատավարձի աճը միշտ պետք է հենվի աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Ավելին, որպեսզի անընդհատ ընդլայնվի ու կատարելագործվի հանրային արտադրությունը՝ աշխատանքի արտադրողականությունը պետք է ավելի արագ բարձրանա, քան աշխատավարձը։ Ինչպես տեսնում ենք, սոցիալիստական արտադրական ձեռնարկության վարման այս կարևոր պայմանները ավտոպահեստամասերի գործարանում խախտվում են։

Անշուշտ, արտադրանքի թողարկման աշխատատարության վերոհիշյալ ավելացումը, որ բացատրվում է ասորտիմենտի փոփոխություններով, ազդել է աղյուսակում բերված ցուցանիշների հարաբերակցության վրա։ Բայց այդ չէ միակ պատճառը։ Աշխատատարությունը, ինչպես հայտնի է, առաջին հերթին պիտի ազդեր բանվորների թվի և նրանց աշխատավարձի ֆոնդի վրա։ Մինչդեռ աղյուսակում բերված տվյալները վկայում են, որ ձեռնարկության ընդհանուր անձնակազմի թիվը և աշխատավարձի ֆոնդն ավելի արագ են աճել, քան բանվորների թիվն ու աշխատավարձի ֆոնդը։

Այստեղից հետևում է, որ վերոհիշյալ ցուցանիշների հարաբերակցության խախտման հիմնական պատճառը աշխատանքի արտադրողականության բարձրացման անբավարար տեմպերն են։ Հիմնականում դրանով պետք է բացատրել գործարանի տնտեսական-ֆինանսական դրության վատացումը։ Այստեղ հետզհետե մեծանում է վնասով թողարկվող ավտոպահեստամասերի նոմենկլատուրան։ 1961 թվականին 62 անուն ավտոպահեստամասերից 40-ը վնասաբեր են եղել։ Շատ պահեստամասերի ինքնարժեքը 50—100—170 տոկոսով գերազանցում է նրանց համար սահմանված մեծածախ գինը։

Վերոհիշյալ հանգամանքների (արտադրական կարողությունների թերբեռնվածություն, հիմնական և շրջանառու միջոցների օգտագործման ցուցանիշների վատացում, արտադրանքի ծավալի ետ մնալը աշխատողների թվի աճից, աշխատանքի արտադրողականության անբավարար բարձրացում և այլն)

պատճառով ավտոպահեստամասերի գործարանում ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու վրա կատարված ծախսումները տարեցտարի ավելանում են։

Այս գործարանը, որն անցյալում օգուտով էր գործում, 1961 թվականից սկսած վնասով է փակում իր հաշվեկշիռը։ Այսպես, գործարանի օգուտը, որ 1959 թվականին կազմում էր 525,4 հազար ռուբլի, 1960 թվականին իջավ մինչև 80,3 հազար ռուբլու, իսկ 1961 թվականին պլանով չնախատեսված վնասը կազմեց 479,9 հազար ռուբլի։ Արտադրանքի ինքնարժեքը պլանով նախատեսված 2,57 տոկոսով իջեցնելու փոխարեն ընթացիկ տարվա առաջին եռամսյակում բարձրացավ 0,32 տոկոսով, որի հետևանքով ստացվեց 43,2 հազար ռուբլու արտապլանային վնաս։

Գործարանի աշխատողները արտադրանքի ինքնարժեքի բարձրացումը բացատրում են արտադրական կարողությունների թերբեռնվածությամբ և ասորտիմենտի փոփոխություններով՝ համեմատաբար աշխատատար և պակաս շահութաբեր մասերի արտադրության ավելացմամբ։ Անկասկած գործարանի ծանրաբեռնվածության ավելացումը կիջեցներ արտադրվող յուրաքանչյուր պահեստամասի ինքնարժեքը, քանի որ վերջինի գրեթե մեկ երրորդը կազմում են ցեխային և ընդհանուր գործարանային ծախսերը։ Սրանց մեջ զգալի տեղ են գրավում, այսպես կոչված՝ պայմանական մնայուն ծախսերը։ Հետևապես, որքան մեծ լինի արտադրանքի ծավալը, այնքան կպակասի արտադրանքի միավորին ընկնող ծախսերի չափը։

Բայց ավտոպահեստամասերի գործարանում, մեր կարծիքով, կան արտադրանքի ինքնարժեքի իջեցման դեռ չօգտագործված այլ ռեզերվներ ևս, որոնց մոբիլիզացումը ձեռնարկության կոլեկտիվին հնարավորություն կտա նույնիսկ եղած ասորտիմենտի և արտադրական պլանի պայմաններում վերացնել արտադրանքի վնասաբերությունը և անցնել շահութաբեր աշխատանքի։ Մեր կարծիքով, գործարանի ղեկավարությունը դեռևս պատշաճ ուշադրություն չի նվիրում այդ ռեզերվներին։

Ներարտադրական ռեզերվների մոբիլիզացումն ու օգտագործումը բարդ, բազմակողմանի խնդիր է։ Այն պահանջում է նախնական լուրջ ուսումնասիրություն, որով պիտի զբաղվի գործարանի ողջ կոլեկտիվը, առաջին հերթին՝ ինժեներա-տեխնիկական կազմը, դիրեկցիան, պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունները։

Բանն այն է, որ ավտոպահեստամասերի արտադրությունը կապված է նյութերի, հատկապես մետաղների մեծ ծախսումների հետ։ 1961 թվականի տվյալներով նյութական ծախսումները համախառն արտադրանքի ինքնարժեքի մեջ կազմել են 68,5 տոկոս։ Բացի մետաղից, դրսից ստացվող գնովի կիսաֆաբրիկատներից, կոմպլեկտավորող շինվածքներից, նյութական ծախսումների մեջ են մտնում վառելիքի, էլեկտրաէներգիայի, ընթացիկ վերանորոգման համար անհրաժեշտ պահեստամասերի, օժանդակ նյութերի, գործիքների և այլ ծախսումները։ Հարց է ծագում. սահմանվա՞ծ է արդյոք գործարանում այդ մեծ արժեքների օգտագործման ասպարեզում անհրաժեշտ կարգ ու կանոն և վերահսկողություն։ Դժբախտաբար, ո՛չ։ Անբավարար վիճակում է գործարանի նորմատիվային տնտեսությունը։ Մետաղների ծախսման նորմաները 1959 թվականից մինչև այժմ չեն վերանայվել։ Նույնիսկ արտադրության մեջ նոր տեխնիկական միջոցառումների կիրառումից հետո էլ նյութերի ծախսման նորմաները մնում են հինը։ Այսպես, ազատ կոփման մուրճերով կռվող որոշ մասեր



1960 թվականից սկսած մամլվում են։ Սակայն դրանց վրա ծախսվող մետաղի նորմաները մինչև այժմ մնացել են նույնը։ Առանձնապես պետք է ընդգծել գործիքների, շտամպների, հարմարանքների գործածության ասպարեզում գործարանում տիրող արտոնյալ վիճակը։ Այս բոլորը ցեխերին, տեղամասերին բաց է թողնվում նրանց ներկայացրած պահանջի չափով։ Գործարանում չեն մշակվել և չեն կիրառվում համապատասխան նորմաներ, որոնց միջոցով հնարավոր լիներ հսկել գործիքների, շտամպների, հարմարանքների խնայողաբար օգտագործմանը։ Մինչդեռ այս ուղղությամբ գործարանի ծախսերը զգալի չափերի են հասնում։ Բավական է ասել, որ ընդհանուր գործածության գործիքների փաստացի ծախքը 1961 թվականին հավասար է եղել 345,5 հազար, իսկ հատուկ գործիքներինը՝ 138,9 հազար ռուբլու։ Այս երկու ուղղությամբ ծախսած գումարները կազմել են գործարանի արտադրանքի ինքնարժեքի 7,3 տոկոսը։

Նյութական միջոցների ծախսումների կարգավորման խնդրում մեծ է գործարանի գլխավոր ինժեների, գլխավոր տեխնոլոգի, գլխավոր մետալուրգի, գլխավոր մեխանիկի, էներգետիկի դերը։ Պասիվ դիրքում չպետք է լինի նաև գործարանի մատակարարման բաժինը, որն այժմ զբաղվում է միայն նյութերի լիմիտավորված թողարկումով։ Մինչդեռ անհրաժեշտ է միաժամանակ ստուգել թե ռացիոնա՞լ են օգտագործվում բաց թողած նյութերը, պայքարել այդ բնագավառում եղած կորուստների դեմ։ Անհրաժեշտ է վերացնել դիմազրկությունը նյութական միջոցների ծախսումների ասպարեզում։ Օրինակ, գործարանի գլխավոր մետալուրգի վրա պետք է դնել տեխնիկական պրոգրեսին համընթաց մետաղների ծախսման նորմաների սիստեմատիկաբար վերանայումը, պրոգրեսիվ նորմաների արմատավորումն արտադրության մեջ։ Գործիքների, շտամպների և հարմարանքների օգտագործման, էներգիայի ծախսման և այլնի համար պատասխանատու պետք է լինի գործարանային վարչության համապատասխան բաժինը։

Ինքնարժեքի իջեցման կարևոր ռեզերվներից է սարքավորման շահագործման, նրա վերանորոգման հետ կապված ծախքերի կրճատումը։ Այդպիսիք, ներառյալ ամորտիզացիոն և ցածրարժեք գործիքների ծախքը, այժմ կազմում են ցեխային ծախսերի 77 տոկոսը։ Արտադրանքի միավորի վրա ընկնող այս կարգի ծախքերի մեծությունը նախ և առաջ պայմանավորված է արտադրության ծավալով։ Բայց այդ ծախքերը կարելի է և բացարձակապես կրճատել, սակայն երկու պայմանով. նախ, երբ բարձրանում է սարքավորման վերանորոգման որակը, որի շնորհիվ պակասում է արտապլանային վերանորոգման անհրաժեշտությունը (գործարանում ի դեպ այն մեծ տոկոս է կազմում) և, երբ ավելի լավ են խնամում հաստոցը, կրճատվում, կամ վերանում են վթարները։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար տնտեսական մեծ նշանակություն ունի ներգործարանային տնտհաշվարկի արմատավորումը։ Պետք է ասել, որ նյութական միջոցների և աշխատավարձի ֆոնդի ծախսման ռուբլով հսկողությունը գործարանում անբավարար հիմքերի վրա է դրված։ Ներգործարանային տնտհաշվարկի արմատավորման գործի նախաձեռնողները պետք է լինեն գործարանի գլխավոր հաշվապահությունը, պլանային-արտադրական բաժինը։ Նրանք գործարանի մյուս բաժինների հետ մեկտեղ պետք է մշակեն և ցեխերին իջեցնեն նրանց ամսական գործունեության գլխավոր տնտեսական ցուցանիշները (ամսական արտադրանքի ծավալը, նյութական ծախսումների, աշխատավարձի ֆոնդի լիմիտները և այլն) և հետևեն դրանց պահպանմանը։

Ներգործարանային տնտհաշվարկի արմատավորման ասպարեզում գործարանը ետ է մնացել այն մակարդակից, որին հասավ նա դեռևս տասը տարի առաջ, երբ Տնտեսագիտության ինստիտուտի օգնությամբ այդ ասպարեզում լուրջ ձեռնարկումներ կատարեց։

Ավտոպահեստամասերի գործարանում լավ հիմունքների վրա է դրված արտադրանքի առանձին տեսակների պլանային և փաստացի ինքնարժեքի հաշվարկը։ Սակայն այդ հարուստ նյութը գործարանի ինժեներա-տեխնիկական անձնակազմը պատշաճ չափով չի օգտագործում և անհրաժեշտ միջոցառումներ չեն մշակվում շատ պահեստամասերի արտադրությունը վնասաբերից շահութաբեր դարձնելու նպատակով։ Հաճախ արտադրվող մասերի ինքնարժեքը մոտ երկու անգամ գերազանցում է նրանց մեծածախ գինը (№№ 401—1005013 Ա.1, 401—1701154, 402—1701105 և ուրիշներ)։ Այդ կալկուլյացիաների մանրամասն ուսումնասիրությունը ինքնարժեքը կազմավորող էլեմենտների կրճատման նպատակով պետք է օգնի գործարանի ինժեներա-տեխնիկական անձնակազմին և տնտեսագետներին (պլանային, հաշվարկային աշխատողներ)՝ համագործակցելու արտադրական-տնտեսական կարևոր խնդիրներ լուծելիս։ Այդ աշխատանքներում անբավարար է ներգրավված գործարանի ինժեներա-տեխնիկական կազմը։

Գործարանում արտադրանքի ինքնարժեքի իջեցման ամենավճռական ռեզերվը պետք է տեսնել աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, ավտոպահեստամասերի աշխատատարության կրճատման, նրանց մշակման գծամասերում արտադրական պրոցեսների ինտենսիֆիկացման մեջ։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել օժանդակ բանվորների աշխատանքի ռացիոնալացման, օժանդակ պրոցեսներում զբաղված աշխատողների աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա, մանավանդ որ գործարանի բանվորների ընդհանուր թվի 43 տոկոսը օժանդակ բանվորներ են։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր նախապայմանն են արտադրական և տեխնոլոգիական կարգապահության պահպանումը, արտադրանքի որակի բարձրացումն ու այդ ասպարեզում գործարանում եղած կորուստների վերացումը։ Գործարանն այդ կարգի մեծ կորուստներ է կրում։ Այսպես, խոտանից եղած կորուստները 1960 թվականին կազմեցին 209,6 հազար, 1961 թվականին 1205 հազար, իսկ ընթացիկ տարվա առաջին եռամսյակում 33,2 հազար ռուբլի։ Իր առաքած արտադրանքի մասին գործարանն ստանում է բողոքներ։ Այդ ցույց է տալիս, որ տեխնիկական ղեկավարությունը և վերահսկողությունը գործարանում դեռ անհրաժեշտ բարձրության վրա չեն։ Չպետք է մոռանալ, որ արտադրական պատշաճ վերահսկողությունը ևս արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր աղբյուր կարող է լինել։

Մենք շոշափեցինք ավտոպահեստամասերի գործարանի արտադրանքի ինքնարժեքի իջեցման վերաբերյալ մի քանի հարցեր, որոնց լուծումը կախված է գործարանի կոլեկտիվից, նրա գործադրած ջանքերից։ Սակայն կան և այնպիսի հարցեր, որոնք հնարավոր է կարգավորել միայն ժողտնտխորհի և պլանավորող օրգանների միջամտությամբ. օրինակ՝ գործարանի պրոֆիլի վերջնական ճշգրտումը, նրա լիարժեք ծանրաբեռնվածությունն ապահովելը։ Այս հարցի լուծման ձգձգումը, անկասկած, բացասաբար է անդրադառնում գործարանի ողջ տնտեսական ֆինանսական գործունեության վրա, դառնալով նրա վնասաբեր աշխատանքի պատճառներից մեկը։



Ավտոպահեստամասերի գործարանում, ինչպես նաև ռեսպուբլիկայի մի շարք այլ արդյունաբերական ձեռնարկություններում արտադրանքի ինքնարժեքի և կուտակումների պլանների սիստեմատիկաբար թերակատարելը ցույց է տալիս, որ այդ ձեռնարկություններում տնտեսական ղեկավարության դրվածքը և տնտեսագիտական աշխատանքների մակարդակը բավարար չէ։ Այդ ձեռնարկություններում հաճախ բացակայում է տնտեսական գործունեության համակողմանի և անհրաժեշտ կոորդինացիան։ Օրինակ, արտադրության մեջ կիրառվող տեխնիկական միջոցառումները բավարար չափով չեն շաղկապվում տվյալ ձեռնարկության գործունեության տնտեսական ցուցանիշների հետ և հակառակը։

Այս հարցերը պետք է ավելի շատ մտահոգեն ժողտնտխորհին ու նրա վարչություններին։ Մեզ մոտ քիչ բան է արվում տնտեսական աշխատանքի ասպարեզում Թաթարիայի ժողտնտխորհի ուսանելի փորձը տարածելու ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկայի մի շարք ձեռնարկություններում անհրաժեշտ է բարելավել տնտեսագիտական աշխատանքները և, մեր կարծիքով, ժամանակն է, որ Լենինգրադի, Սվերդլովսկի, Թաթարիայի և մի շարք այլ տնտեսական շրջանների օրինակով ռեսպուբլիկայի առանձին ձեռնարկություններում մտցվի գլխավոր տնտեսագետի պաշտոնը։

---



# Գիտությունը և կյանքը

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

Մեր ընթերցողների կոնֆերանսներում մի շարք ընկերներ ցանկություն հայտնեցին իմանալու, թե գիտությունն ինչպես է օգնում գյուղատնտեսության զարգացմանը:

Այդ նպատակով մեր թղթակիցը խնդրեց Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրի տեղակալ ընկ. Ռ. Աբրահամյանին՝ հակիրճ պատմել, թե այդ ուղղությամբ ինչ է արվում մեզ մոտ:

Ահա թե ինչ ասաց նա:

*—Սովետական գիտությունը մեծ ավանդ է ներդրել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում:*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի այս տարվա Մարտյան պլենումը երկրի գյուղատնտեսական գիտական հիմնարկների, այդ բնագավառի բոլոր գիտնականների ուշադրությունը հրավիրեց այնպիսի կարևոր հարցերի արագ լուծման վրա, ինչպիսիք են՝ սելեկցիոն աշխատանքի բարելավումը և կոլտնտեսությունների ու սովխոզների ապահովումը գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատու սորտերով, տոհմաբուծության զարգացումը և կոլտնտեսությունների ու սովխոզների ապահովումը անասունների ու թռչունների առավել մթերատու ցեղատեսակներով, միջոցների որոնումը կենդանիների հիվանդությունների ու պարազիտների, ինչպես նաև բույսերի հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարելու համար:*

*Որոշ նկատառումով, մենք այստեղ կխոսենք միայն մի քանի գիտական օջախների գործունեության մասին:*

*Մեր ռեսպուբլիկայի խիստ բազմազան հողակլիմայական պայմաններում բույսերի սելեկցիան գյուղատնտեսության աշխատանքի կարևոր բնագավառներից մեկն է: Այդ բնագավառը ղեկավարում են ակադեմիկոսներ Վ. Հ. Գուլքանյանը, Գ. Հ. Բաբաջանյանը, գիտաշխատողներ՝ Ս. Հ. Պողոսյանը, Ա. Ա. Անանյանը, Հ. Գ. Բադիկյանը, Ա. Մ. Վերմիշյանը, Ս. Ա. Ագուլյանը, Ս. Գ. Բարսեղյանը, Գ. Գ. Սուրմինյանը և ուրիշներ: Տարիների ընթացքում նրանք ստեղծել կամ ընտրել են ցորենի, եգիպտացորենի, պոմիդորի, ծխախոտի, խաղողի, պտղատու ծառերի և գյուղատնտեսական այլ բույսերի մեծ թվով նոր, արժեքավոր սորտեր ու հիբրիդներ: Ստեղծված նոր սորտերից և հիբրիդներից են՝ աշնանացան ցորեններից՝ լեռնային 22-ը, ալմարգարիտը, էրիտրոլեյկոն, գարնանացան ցորեններից՝ նոր կոնդիկը, վարդենիկ 9-ը, եգիպտացորենից՝ Կրասնոդարի 5 և Բուկովինսկայա 3 հիբրիդները, պոմիդորի՝ Լենինականի լեռնային մեկը, շտամպովի 152-ը, ծխախոտի՝ սամսոն 186-ը, խաղողի ավելի քան 30 և*



*պտուղների ու այլ կուլտուրաների նոր սորտեր: Անհրաժեշտ է դրանք խելացի ներդնել արտադրության մեջ, որի համար քիչ անելիքներ չունեն ինչպես գյուղատնտեսության գործնական աշխատանքով զբաղվողները, այնպես էլ գիտության բնագավառի գործիչները:*

*Սելեկցիոն նոր սորտերի արագ արմատավորումը մեծ չափով պայմանավորված է սերմնաբուծության կազմակերպմամբ: Կան հավանության արժանացած սորտեր, որոնք լավ արդյունք են տալիս, բայց դրանց սերմնաբուծության կազմակերպման մասին բոլորովին չեն մտածում: Օրինակ, աշնանացան ցորենի Եղվարդի 4 սորտը նախալեռնային գոտում շրջանացվել է դեռ 1953 թվականին, սակայն նրա ցանքատարածությունը 900—1000 հեկտարից չի անցել:*

*Պոմիդորի Արգավանդի—45 սորտն ունի բարձր բերքատվություն և լավ որակ: Այն շրջանացվել է 1954 թվականին, սակայն սերմ չտալու պատճառով վերջին երեք տարիներին այդ սորտերից գրեթե ոչ մի հեկտար չի ցանվել:*

*Երկրագործության գիտահետազոտական ինստիտուտը փորձարկել և հաստատել է, որ Արարատյան դաշտավայրի պայմաններում մեծ արդյունք է տալիս եգիպտացորենի վաղ ցանքը. ընդ որում ապրիլի առաջին տասնօրյակում ցանելիս եգիպտացորենը տալիս է 20—25 տոկոսով ավելի բերք, քան ապրիլի վերջերին և մայիսի առաջին տասնօրյակին ցանելիս:*

*Այս ինստիտուտում դեռ 1960 թվականին առաջին անգամ մշակվել են ղեբի օգտագործման, քարերի հավաքման միջոցառումներ: Առաջին 50 հեկտար տարածությունը մշակվել է Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի կոլտնտեսություններում:*

*Ջափազանց արժեքավոր աշխատանք է կատարել Երկրագործական ինստիտուտի ավագ գիտական աշխատող Ս. Սարգսյանը՝ ռեսպուբլիկայի ցածրադիր և նախալեռնային շրջանների ջրովի հողերում կերային նոր կուլտուրայի՝ շաքդարի մշակության ուղղությամբ: Այն արդեն մշակվում և տալիս է բարձր բերք ինչպես մաքուր, այնպես էլ խառը ցանքերում: Ինստիտուտում եգիպտացորենի սելեկցիայով զբաղվող գիտական աշխատողները Արարատյան և Կենտրոնական գոտիների պայմաններում փորձարկել և հաստատել են, որ ռեսպուբլիկայում եգիպտացորենի Կրասնոդար— 5 հիբրիդից ստացվում է 30—35 տոկոսով ավելի կանաչ զանգված, քան շրջանացված ՎԻՐ—42 հիբրիդից. Մարտունու շրջանում Բուկովինսկի—3 հիբրիդը տալիս է 25—40 տոկոսով ավելի կանաչ զանգված (կողրերի կաթնամոմային հասունացման վիճակում): Արդեն երրորդ տարին է, որ այդ հիբրիդային սերմացուները մշակվում են նշված գոտիների կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում:*

*Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում ինստիտուտի սելեկցիայի բաժնում ստացված ծխախոտի՝ սամսոն—186 սորտը, որը 1959 թվականից մշակվում է Աշտարակի, Աբովյանի, Թալինի, Սիսիանի և այլ շրջանների կոլտնտեսություններում: Այդ նոր սորտը մինչև այժմ շրջանացված և մշակվող սորտերի համեմատությամբ, տալիս է 15—20 տոկոսով ավելի բերք: Այս տարի այդ սորտի ծխախոտի պլանտացիաները հասնելու են 300 հեկտարի:*

*Արտաշատի շրջանի մի քանի կոլտնտեսությունների բամբակենու դաշտերում դեռ 1947—1948 թվականներին հայտնաբերվեց տուղտացեց վնասատուն, որը երկու տարում շատ արագ բազմացավ ու տարածվեց ռեսպուբլիկայի բոլոր բամբակացան շրջաններում: Այդ վնասատուն վեգետացիայի ընթացքում ոչնչացնում էր բերքի 45—55 տոկոսը: Միջատաբանների և բույսերի պաշտպանու-*

թյան բնագավառում աշխատողների համառ ջանքերով մշակվեցին կոմպլեքս միջոցառումներ այդ վնասատուի դեմ պայքարելու համար։ Գիտական և պրակտիկ աշխատողների միացյալ ուժերով ստեղծվեցին ԴԴՏ և մերկապտաֆոս օրգանո-սինթետիկ բուժանյութերը, որոնք տուղտացեցի դեմ պայքարելու լավագույն միջոցներն են։

Կարճ ժամանակում լավագույն արդյունքի հասան ծխախոտի գագաթային բորբոս հիվանդության դեմ պայքարի միջոցներ հայտնաբերելու բնագավառում։ Ծխախոտի այդ հիվանդությունը վերջին երկու-երեք տարում մասսայական չափերով երևաց Աբովյանի շրջանում և մեծ վնաս պատճառեց։ Հիվանդություն փոխանցողը, ինչպես հետազոտությունները ցույց տվին, տրիպսներն են, որոնց դեմ պայքարի լավագույն միջոցը ԴԴՏ թույնն է։

Տասնյակ տարիներ պրակտիկ աշխատողների շրջանում իշխել է այն կարծիքը, թե ծծմբափոշով հնարավոր չէ վերացնել բոստանային կուլտուրաների ալրացողը։ Ոմանք նույնիսկ այն կարծիքին էին, որ ծծմբափոշին նպաստում է ալրացողի տարածմանը և բույսերի տերևների չորացմանը։ Գիտությամբ հիմնավորված փորձը հաստատեց, որ այդ պնդումները սխալ են։ Ինչպես ծծմբափոշին, այնպես էլ կալցիումի պոլիսուլֆիդը ալրացողի դեմ պայքարելու լավագույն միջոցներն են։ Իսկ ալրացողը մեծ վնաս է հասցնում վարունգի, ձմերուկի, և սեխի ցանքերին՝ 50—60 տոկոսով իջեցնելով նրանց բերքատվությունը։ Բոստանային կուլտուրաների վնասատուների դեմ պայքարի նոր միջոցներն այս տարվանից կիրառվում են ամենուրեք։

Արդեն երրորդ տարին է, որ գյուղատնտեսության մեջ գործադրվում է մոլախոտերի դեմ պայքարելու քիմիական եղանակը։ Հացահատիկային կուլտուրաների դաշտերում մեծ արդյունք է տալիս, հատկապես, կրոտիլինի քիմիական նյութը։ Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտի քիմիական ամբիոնում այն սինթեզել է դոցենտ Վռամ Դովլաթյանը։ Ընթացիկ տարվանից կազմակերպված է կրոտիլինի մասսայական թողարկումը։

Մոտավոր հաշիվներով բույսերի վնասատուների և հիվանդությունների, ինչպես նաև մոլախոտերի պատճառած վնասները ռեսպուբլիկայում տարեկան հասնում են մի քանի միլիոն ռուբլու։ Ահա թե ինչու միութենական կառավարությունը բույսերի պաշտպանության կազմակերպումն ու ղեկավարումը հանձնարարել է գիտահետազոտական ինստիտուտներին։ Մեր ռեսպուբլիկայում դրանով է զբաղվում Երկրագործության գիտահետազոտական ինստիտուտը, որի բույսերի պաշտպանության բաժինը, բացի գիտահետազոտական աշխատանքներից, կատարում է նաև արտադրական նշանակություն ունեցող խոշոր գործեր։ Մեծարժեք աշխատանք են կատարում միջատաբանական, ֆիտոպաթոլոգիական, հերբիցիդների և հատուկ միջոցառումների սեկտորները, ինչպես նաև արտադրական սեկտորը, որը գյուղատնտեսական ինը գոտիներում ունի իր հիմնարկները, վնասատուների դեմ պայքար կազմակերպող բրիգադները և այլն։

Այգե-գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի գիտական աշխատողների կոլեկտիվը վերջին տարիներս մշակել է մի շարք նոր միջոցառումներ, որոնք պետք է ներդրվեն այգեգործության և գինեգործության մեջ։ Այսպես, լարային սիստեմով մշակվող այգիների համար մշակված է երկար էտի նոր եղանակ, որի շնորհիվ բարձրանում է խաղողի



(հատկապես ոսկեհատ, գառան դմակ, ռքածիթելի սորտերի) բերքատվությունը։

Առաջիկայում այգեգործության մեջ ներդրվելու են Մասիսի սովխոզի դիրեկտոր, վաստակավոր ագրոնոմ Խ. Մանուկյանի մշակած՝ խաղողի վազերի քառակուսի-բնային-փնջային կարգով այգիները մշակելու եղանակը, վաստակավոր ագրոնոմ Ա. Օրդոյանի մշակած կիլչեցման ենթարկված կտրոններով խաղողի այգիներ տնկելու և ագրոտեխնիկական այլ առաջարկությունները։

Դրանց արմատավորումը զգալի չափով կբարձրացնի այգիների մշակման մի շարք պրոցեսների մեքենայացման աստիճանը, աշխատանքները կկատարվեն կարճ ժամկետներում, այգիները 1—2 տարով շուտ կպտղաբերեն և, որ կարևորն է, կբարձրանան աշխատանքի արտադրողականությունն ու բերքատվությունը, 15—20 տոկոսով կիջնի արտադրվող հումքի ինքնարժեքը։

Գործնական կարևոր նշանակություն ունի վազերի արտա-արմատային պարարտացումը սուպերֆոսֆատի 5 տոկոսանոց, ինչպես նաև խլորիտոկոլի մեկ տոկոսանոց բորդոյան հեղուկի հետ կոմբինացված լուծույթներով, որը խաղողի վազի միլդիու (չոռ) հիվանդության դեմ պայքարի միջոցներից մեկն է։

Ինստիտուտի պտղաբուծության ագրոտեխնիկայի բաժնում հանգամանորեն ուսումնասիրվել են պտղատու այգիների միջշարային տարածություններում խոտացանության, տնկարաններում պտղատու այգիների ձևավորման, տնկանյութը տնկարաններում պահելու ժամկետների կրճատման և այլ հարցեր։

Վերջին երկու տարում Այգեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտը հանրագումարի բերեց խաղողի և պտուղների սորտային շրջանացման աշխատանքները. այժմ նոր պտղատու և խաղողի այգիներում տնկումները կատարվում են ըստ այդ շրջանացման պլանի։ Առաջիկա տարիներին գցվող այգիներում մշակվելու են մեծ մասամբ ինստիտուտում ստացված սորտերը։

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ ինստիտուտը առաջիկայում բոլոր սովխոզներին ու կոլտնտեսություններին կապահովի սորտային բարձրորակ արմատակալներով։

Մեր հողագետների վերջին երեք տարվա փորձերը ցույց տվին, որ ծծմբաթթվով և ազոտաթթվով լցված սոդային հողերը դառնում են գյուղատնտեսական կուլտուրաների համար պիտանի տարածություններ։ Առաջիկայում հողագիտության և պարարտացման գիտահետազոտական ինստիտուտի փորձնական բազաների արտադրական փորձերի արդյունքները մասսայաբար կներդրվեն արտադրության մեջ։ Ինստիտուտի ուժերով բամբակացան շրջաններում մանրամասն հետազոտվեցին և հայտաբերվեցին ավելի քան 3000 հեկտար թույլ աղակալած հողեր, որոնք կարելի է յուրացնել համեմատաբար հեշտ և քիչ աշխատանքով։ Սակայն, ինչպես այդ շրջանների կազմակերպությունների, այնպես էլ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների անպատասխանատվության հետևանքով այդ հողերը դեռևս ամբողջովին չեն օգտագործվել։ Այստեղ ևս զգացվում է գիտության և արտադրության կապի խզումը։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը մեծ հույսեր է կապել այդ սոդային ուժեղ աղակալած և թույլ աղակալած հողերի յուրացման հետ, որի շնորհիվ ավելի քան 30 հազար հեկտարով կավելանա Արարատյան դաշտավայրի օգտագործվող հողերի բալանսը։ Ուստի այդ բնագավառում ամեն մի գործնական և արդյունավետ

առաջարկություն գյուղատնտեսության արտադրության կողմից պետք է կենսագործվի առանց ձգձգումների։

Ջափազանց հետաքրքիր աշխատանք է կատարվում բանջարաբուծական գիտահետազոտական կայանում, որը գլխավորում է գիտությունների թեկնածու Ա. Անանյանը։ Այս կայանում տասնյակ տարիների ընթացքում բուծվել են պոմիդորի, վարունգի և տաքդեղի 10-ից ավելի նոր սորտեր ու հիբրիդներ, որոնք լայնորեն մշակվում են սովխոզներում ու կոլտնտեսություններում։

Անասնաբուծության զարգացման ուղղությամբ գիտահետազոտական աշխատանքներ են կատարվում Անասնապահական ու անասնաբուժական և Երկրագործության գիտահետազոտական ինստիտուտների համապատասխան բաժիններում ու Երևանի Անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտի համապատասխան ամբիոններում։

Անասնապահական և անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտի կերահայթայթման բաժինը Արարատյան դաշտավայրի և, մասամբ, նախալեռնային շրջանների ջրովի պայմանների համար մշակել է կանաչ կոնվեյերի սիստեմը, որի կիրառումը լավագույն արդյունք է տվել Էջմիածնի շրջանի կոլտնտեսություններում։ Այն տնտեսությունները, որոնք կաթնաապրանքային ֆերմաների համար ստեղծել են կանաչ կոնվեյերի դաշտ (կթու կովերը ապահովելու թարմ հյութալի կերով) 15—20 տոկոսով ավելի անասնաբուժական մթերքներ են ստացել։ Բայց պետք է նշել, որ ընդամենը մի քանի կոլտնտեսություններ են կիրառում կերակրման կանաչ կոնվեյերի սիստեմը։

Բնական խոտհարքներն ու արոտավայրերը մեր ռեսպուբլիկայում անասունների կերի հիմնական բազաներից են։ Ինստիտուտի արոտավայրերի և մարգագետինների բաժնի կոլեկտիվի ջանքերով մշակված են նրանց բարելավման ու բերքատվության բարձրացման կոմպլեքս միջոցառումներ։ Արդեն լուծված է արհեստական արոտների ստեղծման պրոբլեմը։ Մնում է, որ կոլտնտեսություններն ու սովխոզները կատարեն ինստիտուտի հանձնարարությունները։

Կերի կայուն բազա ստեղծելու գործում, հատկապես, մեր ռեսպուբլիկայի համար կարևոր նշանակություն ունեն խտացրած համատեղ (խառը) ցանքերը։

Ինստիտուտի կերի տեխնոլոգիայի լաբորատորիան վերջին երկու տարում մշակել է սիլոսի պատրաստման նոր եղանակ, որը մեծ չափով հեշտացնում է աշխատանքները, բարձրացնում սիլոսի որակը, իջեցնում նրա ինքնարժեքը։ Այդ նույն լաբորատորիան մշակել և ինստիտուտի պայմաններում կազմակերպել է տեխնիկական բիոմիցինի արտադրությունը, որի պահանջը տնտեսությունների կողմից անընդհատ ավելանում է։

Բազմամյա հետևողական աշխատանքների շնորհիվ ստեղծված են տավարի Գորշ կովկասյան ցեղ և հավերի Երևանյան ցեղախումբը, որոնք տեղական տավարի և հավերի համեմատությամբ խոշոր առավելություններ ունեն։ Նոր ցեղի կովերի կաթնատվությունը կրկնակի բարձր է տեղականի համեմատությամբ, կիսով չափ բարձր է մեկ տավարի քաշը։ Երևանյան ցեղախմբի մեկ հավը տեղականի համեմատությամբ 20-25 տոկոսով ծանր է, միսն էլ ավելի համեղ։

Ջափազանց մեծ հետաքրքրություն է ներկայացնում անասունների, հատկապես ոչխարների և խոզերի ամորձատման նոր մեթոդը, որը մշակել է Երևանի Անասնաբուժական-անասնաբուժական ինստիտուտի պրոֆեսոր Ա. Բայբուրթյանը։ Ամորձատման նոր եղանակի կիրառման շնորհիվ 10—12 տոկոսով ավելանում է անասունների քաշը, բարձրանում մսի յուղայնությունը, բրդի որակը և քանակը։ Ամորձատման այս եղանակը լայնորեն կիրառվում է ինչպես մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում, այնպես էլ մյուս ռեսպուբլիկաներում և ժողովրդա-դեմոկրատական երկրներում, հատկապես Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում և Ռումինիայում։



Ռեսպուբլիկայում անասնաբուծության գծով գիտական աշխատողները բազմաթիվ միջոցներ են մշակել վարակիչ և ոչ վարակիչ հիվանդությունները կանխելու համար։ Մանրամասն ուսումնասիրվել և մշակվել են առաջարկություններ սիբիրախտի, խոզերի ժանտախտի, լեպտոսպիրոզի և պաստերելոզի դեմ։ Մեծ աշխատանք է տարվում բրուցելյոզի դեմ պայքարի միջոցները կատարելագործելու ուղղությամբ, որոնց շնորհիվ ստամոքսա-աղիքային ուղիների, թոքերի բորբոքման, տարբեր տեսակի վերքերի և այլ հիվանդությունների ու պարազիտների պատճառով այժմ անհամեմատ ավելի քիչ կորուստներ են լինում։ Առաջարկվել է մագնիսական զոնդ՝ կենդանու նախաստամոքսից օտար, պատամագնիսային մետաղյա մարմինները հանելու համար։

Անասնաբուծության բնագավառում առանձնապես պետք է նշել տեխնիկական գիտությունների թեկնածու Ռոստոմյանի ղեկավարությամբ ստեղծված՝ անասնագոմերից գոմաղբ մաքրող և տեղափոխող մեքենայացված ավտոմատ սարքը, որի արտադրական փորձարկումներն ու կիրառումը ռեսպուբլիկայի և Միության մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում լավ արդյունք են տվել։ Այդ ավտոմատ սարքի գործող օրինակը վաղուց է դրված Սովետական Միության ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում, որպես գիտության լավագույն նվաճումներից մեկը։

Գյուղատնտեսության վարման կուլտուրան բարձրացնելու, ինչպես և արտադրվող մթերքների ինքնարժեքն իջեցնելու գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների կիրառումը։ Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտը հանգամանորեն ուսումնասիրելով առանձին տնտեսությունների աշխատանքը՝ առաջարկել է արտադրության մեջ արմատավորել տնտեսության վարման, ներտնտեսային տնտհաշվարկի, կոլտնտեսություններում դրամական վարձատրության, միասնական տրակտորային-դաշտավարական բրիգադների կազմակերպման առաջավոր մեթոդներ։

Ինստիտուտը կանոններ է մշակել և գիտական ընդհանրացումներ արել գյուղատնտեսական գոտիների համապատասխան բուսաբուծության և անասնաբուծության բնագավառներում կիրառվող ձեռքի և մեքենայացված աշխատանքների օրինակելի նորմաների վերաբերյալ, ինչպես և կոնկրետ օգնություն է կազմակերպել միջկոլտնտեսային կապերի ու շինարարության ավելի ռացիոնալ ձևերի արմատավորման ուղղությամբ։

Նման առաջարկությունների խելացի կենսագործման շնորհիվ շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ լուրջ հաջողությունների են հասել դաշտավարական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Դժբախտաբար ոչ բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն են, որ գիտության կողմից առաջարկված միջոցառումները կենսագործում են ժամանակին ու ճշտությամբ։ Չէ որ գիտական աշխատողները միայն իրենց ուժերով ի վիճակի չեն դրականորեն լուծված հարցերը անհրաժեշտ մասշտաբներով և

պահանջվող ժամկետում արտադրության մեջ արմատավորել. դրա համար
անհրաժեշտ է արտադրության մեջ աշխատող մասնագետների, տնտեսություն-
ների ղեկավարների ու գյուղատնտեսական օրգանների անմիջական ակտիվ
մասնակցությունը։

Շատ հաճախ ոչ միայն բացակայում է համագործակցված աշխատանքը,
այլև արգելակվում է նորի արմատավորումը։ Երբեմն, նոր, օգտակար առա-
ջարկությունների արգելակվում, սովերի տակ են թողնվում հենց այն ինստի-
տուտներում, որտեղ նրանք ստեղծվել են։ Գիտական աշխատողները պարտա-
վոր են գիտության նորագույն տվյալները հետևողականորեն դնել գյուղատնտե-
սության մեջ, իսկ կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողները պետք
է կենսագործեն գիտության կողմից առաջադրվող պրոգրեսիվ ու արդյունա-
վետ միջոցառումները. այլապես հնարավոր չի լինի ապահովել դաշտավարա-
կան բոլոր կուլտուրաների բարձր ու կայուն բերք, ինչպես նաև շեշտակի
բարձրացնել անասունների մթերատվությունը։

Մեր գիտահետազոտական հիմնարկներում դեռևս վատ հիմքերի վրա է
դրված սերմնաբուծության և, հատկապես, էլիտային սերմերի և խաղողի ու
պտուղների հազվագյուտ սորտերի, արմատակալների արտադրման գործը։
Սերմնաբուծական և տնկարանային տնտեսություններում ևս անբավարար է
բարձրորակ սերմեր և տնկանյութեր արտադրելու գործը։ Իսկ այդ քիչ է մտա-
հոգում գյուղատնտեսության գիտահետազոտական հիմնարկներին։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Մարտ-
յան պլենումը, նշելով վերջին ժամանակներում գյուղատնտեսության բնագա-
վառում ձեռք բերված հաջողությունները, միաժամանակ ցույց տվեց, որ հա-
ցահատիկի, մսի, կաթի և հողագործության ու անասնաբուծության մյուս մը-
թերքների արտադրության մակարդակը դեռևս խիստ անբավարար է։ Այդ մա-
կարդակը չի համապատասխանում տնտեսության սոցիալիստական սիստեմի
հսկայական հնարավորություններին և գյուղատնտեսական մթերքների նկատ-
մամբ եղած պահանջմունքներին, այն մեծ խնդիրներին, որ ժողովրդի նյութա-
կան բարեկեցությունը բարձրացնելու բնագավառում առաջադրեց ՍՄԿԿ XXII
համագումարը։

ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումը դատապարտեց խոտադաշտային սիստեմը
որպես գիտականորեն սնանկ, սոցիալիստական տնտեսության համար ոչ պի-
տանի սիստեմ և նշեց, որ անհրաժեշտ է խոտադաշտային սիստեմից վճռա-
կանորեն անցնել հողագործության ավելի ինտենսիվ սիստեմի, լայնորեն ար-
մատավորել բարձր մթերատու շարահերկ և լոբազգի կուլտուրաների ցանքերը։
Գիտնականները պետք է ավելի սերտորեն կապվեն կյանքի հետ, նրանց հե-
տազոտությունները պետք է նպաստեն գյուղատնտեսական մթերքների արտա-
դրության ավելացմանը։

Կասկածից վեր, է, որ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագա-
վառի ավելի քան 850 հոգուց բաղկացած գիտության աշխատողների կոլեկ-
տիվը իր ավանդը կներդնի համաժողովրդական մեծ պայքարում, որպեսզի
գյուղատնտեսության ասպարեզում աշխատողները անթերի կատարեն յոթն-
ամյա պլանը։

---

# Արվեստների ԱՄԲԻՈՆ

## ՄԱՐԴԸ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

(Գրականագետի մտորումներ)

Կոմունիստական պարտիայի XXII համագումարը պատմության մեջ մտավ
որպես մի սխրագործություն, որով սկիզբ է դրվում մարդկության դարավոր
երազանքի՝ կոմունիզմի լիակատար կառուցմանը։ Դա լինելու է այնպիսի մի
հասարակարգ, որտեղ իշխելու է մարդը մարդուն ընկեր ու բարեկամ սկզբ-
բունքը, մեկը բոլորի համար է աշխատելու, բոլորը մեկի, որտեղ մարդու անձ-
նական խիղճը պետական խղճի արտահայտություն է ստանալու և գործելու են
ամենամաքուր, բայց և խստապահանջ բարոյական նորմերը։

Սոցիալիստական հասարակարգը միակն է աշխարհում, որը չի վախենում
ճշմարտությունից, իր քաղաքացիներին օժտում է բնավորության այնպիսի գծե-
րով, ինչպիսին ազնվությունն է, ճշմարտախոսությունը, բարոյական մաքրու-
թյունը, պարզությունն ու համեստությունը հասարակական ու անձնական
կյանքում։ Նման առաքինությունների տեր անհատը միայն կարող է ստեղծել
համաձայն գեղեցկի օրենքների, դիտվել որպես պետական բարիք, ազնվացնել
հասարակությունը և արժանանալ հասարակության ջերմ պաշտպանությանը։
Անտոն Չեխովը իր հերոսներից մեկի բերանով այն միտքն է արտահայտել, թե
մարդուն ոչ թե երեք արշին հող, ոչ թե տնատեղ է հարկավոր, այլ ամբողջ
երկրագունդը, ողջ բնությունը, որտեղ նա կարողանար բացահայտել իր ազատ
ոգու բոլոր ունակություններն ու առանձնահատկությունները։ Դա մեծ հումա-
նիստի երազանքն էր՝ տեսնել մարդուն ազատ, աշխարհին ու բնությանը բարե-
կամացած, ամեն ինչ բարեկամի աչքերով դիտող։ Այդ երազանքն իրականու-
թյուն է դառնում կոմունիզմի հայրենիքում։

Ելնելով կոմունիզմի կառուցման խնդիրների վեհությունից, ընկեր Խրուշ-
չովը սովետական գրողներին համարեց պարտիայի հավատարիմ օգնականներ։
Դա ոգեշնչող, թևավորող, միաժամանակ նաև պարտավորեցնող գնահատական
է։ Հիրավի անհնար է պատկերացնել կոմունիզմի քաղաքացու բնավորության
ձևավորումը, նրա հոգևոր աշխարհի բյուրեղացումն ու պայծառացումը առանց
արվեստի ու գրականության մասնակցության։ Չափազանցություն չի լինի, եթե
ասենք, որ պատմության մեջ չի եղել և ոչ մի դասակարգ, որ դիմած չլինի
գեղարվեստական գրականության օգնությանն իր գաղափարները, իր բարոյա-

կան սկզբունքները հաստատելու, իր գոյությունը հավերժացնելու համար։ Ավելին, գրականությունների պատմությունը կարելի է դիտել որպես համառ ու տևական պայքար մարդու համար կամ մարդու դեմ։ Այս երկու տենդենցները մշտական հակամարտության մեջ են եղել, որի ընթացքում էլ առաջացել են գրական տարբեր հոսանքներ, ուղղություններ, սկզբունքներ ու տեսություններ, որոնք վերջ ի վերջո եկել, բախվել են դարձյալ նույն կնճռոտ հարցի լուծման ճանապարհին. ինչպիսի՞ն պետք է լինի մարդը, ինչո՞ւ է նա աշխարհ եկել և ի՞նչ է պարտավոր թողնել իրենից հետո։

Պետք է ասել, որ անցյալի մեր դասական գրականությունն առավելապես ցույց է տվել հասարակության ոչ մարդկային գծերը։ Նա դիպուկ հարվածներ է հասցրել բուրժուական հասարակությանը, բացել նրա սոցիալական խոցերը, երբեմն էլ բացահայտել դրանց առաջացման պատճառները։

Այսպիսով, անցյալի խոշորագույն գրողները ցույց են տվել, որ այս կամ այն հասարակարգը, իր շահագործողական էությամբ, անհարիր է մարդկության բանական գոյությանը, որ չի կարելի նորմալ համարել այն կյանքը, որը բաղկացած է միայն տառապանքներից ու վշտերից, որտեղ իշխում է «մարդը մարդուն գայլ» վայրենի օրենքը։ Անհրաժեշտ էր դիմել երկրորդ, ամենավճռական քայլին, աշխարհի բացատրումից անցնել այդ նույն աշխարհի վերափոխմանը, աշխարհ, որ ապրում է մարդու աշխատանքի, նրա անօրինակ ջանքերի հաշվին, բայց մարդուն միայն ստրկության շղթաներ է ժառանգություն թողնում։ Եվ ահա, հնչեցին Կարլ Մարքսի հանճարեղ խոսքերը. «Փիլիսոփաները միայն տարբեր կերպով բացատրել են աշխարհը, բայց խնդիրն այն փոխելն է»։ Այս ուղեցույց հայտնագործությունը վերաբերում էր նաև գրողներին։ Աշխարհը փոխելու համար ակտիվ պայքարի, հզոր երազանքների մարդիկ էին հարկավոր, մարդիկ, որոնք ընդունակ լինեին գրոհել նույնիսկ երկինքը, երկրի վրա երջանկություն հաստատելու համար։

Հոկտեմբերյան հեղափոխությունը նախ և առաջ հումանիստական մեծագույն ակտ էր, որը եկավ վերջ դնելու մարդու դարավոր տառապանքներին, որոշակիորեն նշեց հնի և նորի սահմանագիծը, և պատմությունը հանձնեց իր իսկական ստեղծողի՝ ժողովրդի տնօրինությանը։ Ասել, թե բոլոր փայլուն մտածողները կարողացան հենց սկզբից ճիշտ կողմնորոշվել նոր հասարակարգի երևան գալու պատմական անհրաժեշտության մեջ (նրա բարոյական սկզբունքների մաքրության, վերջապես նրա ճակատագրի հարցերում), ճիշտ չէր լինի։ Եղան տատանումներ, համառ որոնումներ, որոնք վերջ ի վերջո հասցրին հնի ժխտմանը և նորի անվերապահ ընդունմանը։

— Ես այնպես եմ համոզված,— ասել է Ավ. Իսահակյանը,— թե միայն կոմունիզմի հաղթանակը ողջ երկրագնդի վրա կարող է փրկել ողջ չարատանջ մարդկությունը դարերի հասարակական բոլոր չարիքներից, ոճիրներից, սարսափներից, միայն և միայն կոմունիզմը կարող է բերել հավերժական խաղաղություն, թե՛ մեծ և թե փոքր ժողովուրդների իսկական եղբայրություն, երջանկություն բոլորի համար։

Սովետական հումանիզմի առանձնահատուկ գծերից մեկն էլ նրա անզիջող լինելն է։ Պարտիայի նոր Ծրագրի այն պահանջը, թե այսուհետև մեր երկրում պետք է գործի մարդը մարդուն ընկեր ու բարեկամ սկզբունքը, ոմանք ճիշտ չեն հասկացել։ Ոչ մարդկայինի, այլանդակի, բարոյական արատավո-



րության դեմ պայքարը լինելու է անհաշտ ու աններող։ Պարտիայի համագումարը դրա ցայտուն ապացույցն էր։ Չի կարելի հանդուրժել, երբ ճշմարտությունը զոհաբերում են դոգմատիզմին, վստահությունը՝ երկերեսանիությանը։ Չի կարելի հանդուրժել մեր կյանքում այնպիսի երևույթներ, ինչպիսիք են՝ աչքակապությունը, կարիերիզմը, գոռոզամտությունն ու եսասիրությունը։ Բոլոր այս ախտերը պետք է հանձնել քննադատության կազդուրիչ կրակին։

Ահա թե ինչու կոմունիզմ կառուցողի բարոյական աշխարհի վեհության արտահայտություններից մեկն էլ պետք է համարել մարդը մարդուն բարեկամ, ընկեր և եղբայր սկզբունքը։ Պայքարի դարավոր ճանապարհ է անցել մարդկությունը մինչև կարողացել է ընկեր բառին վերադարձնել իր իսկական իմաստը, նրա մեջ բովանդակել բոլոր աշխատավորներին միավորող ուժը, հավատը դեպի բոլորի եղբայրությունը ամենքի հետ։ Դեռևս հեղափոխությունից առաջ Մաքսիմ Գորկին իր «Ընկեր» հեքիաթում ցույց է տալիս, թե ինչպիսի տառապալից կյանք էին վարում խելոք ու դժբախտ մարդիկ մինչև նրանց հառաչող սրտի մեջ մի բառ է նետվում։

— Ընկեր...

Այդ բառն, իհարկե, վաղուց էին նրանք լսել, սակայն ոչ մի իմաստ չի ունեցել, բոլոր մյուս բառերի նման խեղդվել է «ոսկու հնչյունների» մեջ։ Բայց ահա, երբ հանդես են գալիս դեպի մարդը հավատով լի երազողներ, և ցույց տալիս, թե ինչ երջանկություն կարող է բերել ճշմարտության ըմբոստ կայծը, և ինչ պիտի անել, որպեսզի դժբախտությունը բարձրաձայն ճչար իր մասին, իսկ ատելությունը մեղմ շշնջյունից վերածվեր հեղափոխական փոթորկի, ընկեր բառը դառնում է «սրտի պես պարզ ու խորունկ», հնչում որպես «ապագայի, նոր կյանքի ուրախ լուր»։

Սովետահայ պոեզիայում հին աշխարհի դեմ մենամարտի ելած այդ հեղափոխող ընկերության առաջին երգիչը Հակոբ Հակոբյանն էր։

Իր «Ամբոխի կոչ»-ում նա առաջինն է խոսում ժողովրդի և պոետի սրտերի ընկերակցության մասին, այն մասին, որ մարդկային ցավից հյուսված երգը պետք է դառնա ցասման կոչ, սրտի բողոք ընդդեմ «ուժեղի բռնության»։ Հակոբյանի մոտ ընկեր, եղբայր բառերը սոցիալական խոր իմաստ ունեն, ազատության զինվորի, մաքառման զոհերի խորհրդանիշներ են։

Ոչինչ, իմ ընկեր, մեր օրն էլ կգա,
Եվ ինչպես ջահել արևածագին
Փախուստ է տալիս խավարը նաև՝
Այնպես էլ այգը կողջունի կյանքին։
(Ոչինչ, իմ ընկեր... 1915 թ.)

Հակոբյանի պոետական աշխարհը վեհապանծ սարերը չէին, ոչ էլ դյութող աստղերը, թեև դրանց էլ էր նա կարոտում, այլ ճնշված ու լքված կարիքի աշխարհը, մարդկային այն ցավն ու կսկիծը, որ կոչ են անում, թե արի՛, պոե՛տ,

Մեր վիշտը լացիր,
Մեզ ընկեր դարձիր։

Ժողովրդի վշտին ու ցավին ընկերացած այդ ըմբոստ երգչի ուղին տանելու էր դեպի հեղափոխություն, դեպի այն հասարակությունը, ուր այլևս մար-

դուն չեն զինելու մարդու դեմ և պատմության ամբիոն է նենելու «հալալ վաս-
տակը»։ Այսուհետև ընկեր բառը Հակոբյանի երգերում դառնալու է նաև սի-
րո, հավատի, անկեղծության, բարոյական մաքրության չափանիշ։ («Փնջած
մեխակներ—քանվեց ընկերներ», «Մեր լավ ընկեր», «Նզովք նրան, հե՜յ,
ընկերներ»)։
Ընկեր բառը գաղափարական մի նոր հնչեղություն է ստանում Չարենցի
մոտ. նա «բյուր-հանճար ընկեր» է անվանում աշխատավոր մարդկանց, հե-
ղափոխություն կատարող մարդիկ նրա համար «հեռու մոտիկ ընկերներ» են,
նաև «կարմիր ընկերներ», որոնց կռիվն է երգել Չարենցը։ «Մաճկալ Սաքոյի
պատմության» մեջ ժողովուրդը սիրում, հավատում ու վստահում է Լենինին
նախ և առաջ այն բանի համար, որ նա մարդ է, ընկեր.

Ու մի օր էլ ասին ճեռվանց
Մարդ է գալիս — «ընկեր Լենին»:

Երիտասարդ սերնդի կյանքում ընկեր բառն այսօր նույնքան բնական ու
սովորական է հնչում, ինչքան օդը, ջուրը, արևը։ Բայց տեսեք, թե Մովսես
Արազու պատմվածքներից մեկի հերոս Մուկուչը ինչպիսի ծանր ու դժվարին
ուղի է անցել մինչև իրավունք է նվաճել «ընկեր Մուկուչ» կոչվելու, կարողա-
ցել է ընկեր բառի մեջ մի ամբողջ հասարակարգի բարոյականություն տեսնել,
տեսնել այն կարմիր սահմանագիծը, որը նորը բաժանում է հնից։ «Իհարկե,
Մուկուչը գանգատ չունի, գործարանում ամենքը հետը սիրով են վարվում,
բայց թե որ կարգ է, պատիվ է, թող իրեն էլ «ընկեր» ասեն, թե չէ Մուկուչի
սիրտը շատ է պակասում»։
Այսպիսով, ընկերը նաև պատիվ է կոչվում, և այդ պատվից զուրկ մարդու
սիրտը շատ բանով է պակասավոր։ Բնավ պատահական չէ, որ Մուկուչն իր
տեսածն ու լսածը, իր կատարածը Լենինով է չափում։ Այն ամենը, ինչ անհա-
րիր է Լենինի կերպարին, խորթ նրա համոզմունքին, նշանակում է կեղծ է,
վնասակար և դատապարտելի։ Հին բոլշևիկ Օլմինսկին իր հուշերում հատ-
կապես ընդգծում է մեծ առաջնորդի խոր մարդկայնությունը։ Վ. Ի. Լենինին
ճանաչելը, նշանակում էր ճանաչել նաև ինքներս մեզ. դրանում էր նրա անձի
նկատմամբ մեր ունեցած հետաքրքրության արդարացումը։ Առանց Լենինին
հավատալու, առանց սեփական արարքը նրա տեսանկյունից գնահատելու ինքդ
քեզ ճանաչել չես կարող։ Լենինն ուներ ընդհանուրին հատուկ գծեր, բայց և
հարուստ էր անհատականով, միայն իրենով։ Նաև այդ ընդհանուրի և բոլորին
հարազատ անհատականի գեղեցիկ ներդաշնակությամբ էր Լենինը տարբեր-
վում ժամանակի բոլոր մտածողներից։
Լենինին նվիրված իր բանաստեղծության մեջ Նիկոլայ Ասեևը առաջնորդի
հենց այդ մարդկային պարզությունն է ընդգծում, այն, որ նա նույն հացն է
կերել, նույն վիշտն է կրել, ինչ ամբողջ ժողովուրդը։ Իսկ երբ աշխարհի մեծ
մտածողներին է իր մոտ հյուր ընդունել, մուտքի մոտ թիկունքը չի դարձրել
նրանց։ Այսինքն, չի արհամարհել նրանց, որովհետև արհամարհանքը անհա-
րիր է մարդու արժանապատվության զգացումին։ Լենինի այդ համեստությու-
նը ժամանակակիցներից շատերն են նշում։
Այն նորը, որով համակվել է վերջին տասնամյակի սովետահայ պոեզիան,
բնորոշվում է մտքի ու զգացմունքի նորությամբ։ Մարդու ճակատագիրն այժմ
դիտվում, գնահատվում է Հայրենիքի անցած դժվարին ու վեհ ճանապարհի



տեսանկյունից։ Պետք է անդարձ համարել այն ժամանակաշրջանը, երբ բա-
նաստեղծը ձգտում էր «կյանքում տեսնել միայն կիրակի օրերը, կարմիր ամ-
սաթվերը, մի կողմ թողնելով շաբաթվա բոլոր մյուս աշխատանքային օրերը.
որ լի են տքնությամբ, հոգսերով ու կարիքներով» (Ա. Տվարդովսկի)։ Եթե
իրավ է, որ տաղանդը դա նույն հողն է, միայն այն տարբերությամբ, որ հացի
փոխարեն ճշմարտություն է երկնում, ապա կարելի է ասել, որ լենինյան նոր-
մերի վերականգնումը անսահման հնարավորություններ է ստեղծել ճշմար-
տությանը ծառայող ազնիվ տաղանդի ծաղկման ու հասունացման համար։
«Մարդի՛կ, չե՞մ կարող առանց ձեզ ապրել» (Հր. Հովհաննիսյան)։ Ահա
մարդուն տածած այն վստահությունը, առանց որի չի կարող ապրել արվեստը,
անիմաստ կլիներ նրա գոյությունը։ Այդ վստահությունն է հպարտության կանչ
դարձել նաև մարտիկ բանաստեղծ Գ. Սարմենի շուրթերին. «Մեր ամբողջ
կյանքը մենք ապրեցինք որպես մարդիկ և մարդկանց համար»։ Ամբողջ հա-
յացքով մարդուն դառնալը բխում է կոմունիզմի էությունից։ Համաշխարհային
գրականության պատմության մեջ շատ քչերն են ունեցել մարդու այն մեծ
կարոտը, ինչպիսին մենք տեսնում ենք Ալեքսանդր Բլոկի պոեզիայում.
«Մարդը—ապագան է,— ասել է նա,— եթե չկա այդ ապագան, ուրեմն չկա
նաև մարդը, առանց մարդու բանաստեղծությունը զոլորշի է, և ուրիշ ոչինչ»։
Բլոկը, ինչպես նաև Տերյանը, ուժեղ է ապրել մարդու կարոտը։ Մարդուն
կորցնելով նրանք արտասվել են, գտնելով՝ այրվել նրա դառն ճակատագրով։
Դարերի ընթացքում մարդը բազմիցս լիուլի ճաշակել է իր կործանվող երա-
զանքների դառնությունները, վերստին երազել նորը, առավել վեհն ու գեղե-
ցիկը։ Եվ հաղթանակեց այդ համառ երազանքը մեր ջանքերով, մեր երկրում։
Այժմ արդեն դժվար է ստույգ որոշել, թե որտեղ է վերջանում մեր ներկան և
սկսվում գալիքը։ Մեր կյանքի առավելություններից մեկն էլ հենց այն է, որ
մարդն ինքն է իրագործում իր երազանքը, ինքն է այն պլանավորում։ Թող
մեզ ների, որ հույժ արտադրական այդ բառը մենք գործածում ենք չշոշափ-
վող, բայց ամեն ինչում ապրող այնպիսի մի հարստության կապակցությամբ,
ինչպիսին երազանքն է, իսկ ի՞նչ կարող ես անել, երբ մարդը կարգապահու-
թյուն է մտցրել ոչ միայն արտադրության մեջ, այլև իր հոգևոր ու մտավոր
աշխարհում։ Միայն այդպիսի մարդը կարող է դիմել իր բախտին, որպես հա-
վասարը՝ հավասարին։

Շնորհակալ եմ քեզնից իմ բախտ,
Որ չես խնայել ինձ համար ոչինչ՝
Ոչ մրրիկներում շառաչող ճամփա,
Ոչ ձեռներդ, ոչ գարունդ չինչ:

Շնորհակալ եմ քեզնից իմ բախտ,
Որ ազատելով չնչինից, մանրից,
Դու ինձ ես կոչել կոմունիստ և մարդ
Ու ճարբել ճամփան այս շռնդալից:
(ԱՐՏ. ՊՈՂՈՍՅԱՆ)

Բնավ պատահական չէ բախտի, հավատի մոտիվների նոր խորությամբ
երևան գալը վերջին տարիների պոետական ստեղծագործություններում։ Սո-
վետական մարդու ճակատագիրը, կյանքի նրա հավատը շատ փորձություննե-
րի են ենթարկվել, երբեմն խոցվել են, արյունոտվել, բայց նա, այդ մարդը
երբեք չի նահանջել ազնվության դիրքերից, չի մանրացել, հուսալքման զոհ
չի դարձել։ Երբ Համո Սահյանն ասում է, թե՝

Սկսել եմ ինձ ճանաչել այս ճամարձակ առավոտով,
Սկսել եմ ճոգնել ճովից, ճողմերի մեջ ճանգստանալ:

կամ, երբ Պարույր Սևակը երգելով պարտիական այն աշխատանքային օրացույցը, որ աշնանը գարնանային տաքուկ քամի է բերում (խոսքը պարտիայի XXII համագումարի մասին է — Վ. Մ.) ոգեշնչված ասում է.

Շնորհակալություն և մեր ճակատից,
Որ փիրավորվեց, խոցվեց տարիներ,

Բայց երբեմ, երբեմ չմեռավ, ապրեց,
Նվ պիտի ճակերժ մեզ ապրեցնի:

Բոլոր այս խոստովանություններում ու երախտագիտական խոսքերում մենք դարձյալ տեսնում ենք մարդու ճակատագիրը, նրա հոգևոր ուժն ու հպարտությունը: Դա նաև յուրահատուկ պատասխան է նրանց, ովքեր մեր ժողովրդի կյանքում տեղի ունեցած գարնանային վերափոխությունները չարամտորեն փորձում են դիտել որպես ամբողջ անցյալի ժխտում: Ո՛չ, ճշմարիտ է եղել պարտիայի, ժողովրդի անցած ճանապարհը, միայն եղել են մարդիկ, որոնք ծուռ են քայլել այդ ճանապարհով, ծռել են շատ բան և, չկարողանալով գլուխ հանել դարաշրջանի դժվարություններից, սկսել են «մեղավորներ» որոնել ազնիվ մարդկանց շարքերում: Իհարկե, այդ ամենը բացասաբար է անդրադարձել մեր ընթացքին, բայց նրա ընդհանուր ուղղությունը մնացել է անկոտրում: Ուրեմն խոսքը երեկվա անհանդուրժելի երևույթների ու թերությունների մասին է, և ոչ թե անցյալի մասին ընդհանրապես:

Սովետական գրողների երրորդ համագումարում արտասանած իր ճառում ընկ. Խրուշչովը նշելով այն փաստը, որ Սովետական իշխանության տարիներին մեր ժողովրդի կատարած մեծագործությունները հիացնում, ցնցում են աշխարհը, հատկապես անդրադառնում է այն «ոչ գունազարդողներին», որոնք պնդում են, թե «իբր ներկա էտապում գրականության գլխավոր խնդիրն է ի հայտ բերել ամեն տեսակ արատներն ու թերությունները, ընդսմին, անտեսելով սովետական հասարակարգի մեծ նվաճումները»: Պարտիան, ուրեմն, դատապարտեց հինը, դեպի նորը տանող ուղին հարթելու նպատակով: Կյանքում այդ նորն է առաջատարը: Գրականությունը չի կարող դուրս լինել այդ օրենքից:

Ահա թե ինչու պարտիան այն գրողների կողմն է, որոնք հիմք են ընդունում դրական երևույթները, այդ դրականի վրա ցույց են տալիս աշխատանքի պաթոսը, խանդավառում մարդկանց սրտերը: Ընդհանրացնելով մարդկանց լավագույն գծերն ու հատկությունները, գրողը նրանց հակադրում է բացասական կերպարներին, ցույց տալիս նորի պայքարը հնի դեմ և նորի անխուսափելի հաղթանակը: Ահա կյանքի արտացոլման մարքսիստական էսթետիկայի պահանջը:

Սովետահայ արդի պոեզիայում մի այլ ուրախալի երևույթ էլ է նկատվում: Զգալիորեն ընդարձակվել են մարդու մտահորիզոնը, նրա պատկերացումներն աշխարհի մասին:

Տիեզերքը, պոետական ոգու այդ երբեմն «անհայտ ու անորոշ» հանգրվանը, արդեն դարձել է ոգեշնչման կոնկրետ առարկա, լցվել է կյանքով ու հերոսությամբ: Պետք է նկատել, որ հետզհետե անհետանում են արվեստի կենսական հյուսվածքը կրծող աղմկարարությունը, բարձրաթռիչ սեթևեթանքը, ավելի հաստատուն արմատներ է ձգում մեծ մտքերով ու հույզերով հարուստ խոսքը: Հաճախ բանաստեղծն այնպիսի անմեղ տողերով է սկսում իր ասելիքը, որ կարծես որևէ մեկին անհանգստացնելու, ինչ որ բան հաստատելու կամ ժխտելու մտադրություն չունի: Ահա դարավոր մանուշակը — ով չի՞



խոնարհվել այդ համեստ ու աննշան ծաղկին, բոլորը, ամենասեգ մարդն անգամ: Գեղեցկի առջև խոնարհվողը, գեղեցիկը որոնողն ինքը նույնպես պետք է գեղեցիկ լինի հոգով, սրտով ու գործով: Ահա այն գաղափարը, որ ոգեշունչ պարզությամբ արտահայտել է Հր. Հովհաննիսյանը իր «Մանուշակը» բանաստեղծության մեջ:

Այսօրվա պոեզիան չի սիրում ներկվել հաճոյանալու համար: Այն պահանջում է ազատ մուտք դեպի սիրտը, ցանկանում է միայն այնտեղ ստուգած լինել իր մարտունակության աստիճանը: Ով խուսափում է այդ պոեզիայի հետ երես առ երես հանդիպելուց, նշանակում է նա ազնվության, շիտակության դասալիք է, իսկ դասալիքին երբեք չեն ներում ոչ պատերազմի, ոչ էլ բարոյականության դաշտում: Մեզ թվում է, որ սառը ներբողի մեթոդը, որ լայն տարածում էր գտել անհատի պաշտամունքի տարիներին, ո՛չ միայն անհարիր է սրտաբաց, ազնիվ պոեզիայի ոգուն, այլև շատ դեպքերում նսեմացնում է պոետին ու նրա հերոսին:

Այժմ, երբ արդեն ամուր սեպ է խփված երեկվա տխուր երևույթների մեջ, պոեզիան ավելի ամուր է կապվել կյանքին, ավելի մարդկային ու անկեղծ է դարձել նրա հերոսի վերաբերմունքն աշխարհի նկատմամբ:

Խոսելով այսօրվա պոեզիայի արտահայտած մեծ ճշմարտության մասին, բնականաբար, առաջինը ցանկանում ենք տեսած լինել այդ ճշմարտության խիզախ կրողին՝ կոմունիստին: Ասում ենք առաջինը ոչ թե նրան բոլորից բարձր դասելու նպատակով, այլ որովհետև պատմությունն ինքն է վստահել նրան լինել առաջինը ամենուր, կռվի դաշտում, կառուցման մեջ, կռվի հորդեհներում, մահ ընդունելիս և անմահության պատվանդանին: Կոմունիստը մարդ է նշանակում, որտեղ մարդն է, այնտեղ էլ ճշմարտությունը, իսկ ճշմարտությունը միայն հաջողություններից չի հյուսված, դա ունի նաև դժվարություններ ու դառնություններ: Ասում ենք առաջինը, որովհետև իրոք նա առաջինն էր, որ իր թշնամին համարեց մահն ու վիշտը և բարեկամանալով կյանքին ու երջանկությանը՝ հայտարարեց.

Կոմունիստ լինել,
Ասել է կրել տանջանքը բանտի,
Որ Հոկտեմբերը ծնվի, զորանա,
Կոմունիստ լինել
Ասել է կրծքով փակել երախը մահ բնդանոթի,
Որ գումարտակը գրոհի գնա.
Կոմունիստ լինել,
Ասել է նետվել առաջին գիծը կյանքի, մաքառման,
Որ հասկն առավել ծփա ծանրաքիստ,
Այդ ինչպե՞ս է, որ մորթապաշտներին դարձել է պատյան
Բառը՝ կոմունիստ...

(Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ)

Հավասարության նշան դնելով կոմունիստ և սխրանք, կոմունիստ և արդարություն հասկացողությունների միջև, բանաստեղծուհին միաժամանակ ատելությամբ է խոսում նրանց մասին, ովքեր կարմիր տոմսը վարագույր արած ապրում են վատով, այլանդակով: «Անողոք եղեք հանուն ճշմարտի» կոչ է անում բանաստեղծուհին, և «մաքրեք շարքերը», ինչպես գարնանը խոփերն են մաքրում, որպեսզի կոմունիստ բառը երդումի պես շողա մարդկանց շուրթերին ու տանի առաջ:

Վերը մենք նշեցինք, որ պարտիայի նոր Ծրագրում հստակորեն գծված է մարդուն դեպի կոմունիզմ տանող բարոյական ուղին, ասացինք, որ դարերով, սերնդե-սերունդ փոխանցված պատվի, երջանկության, ազնվության, անկեղծության զգացումներն իրենց լիակատար ու ամենագեղեցիկ արտահայտությունն են գտնելու կոմունիզմի օրոք։ Իսկ ի՞նչ է կատարվում այսօր այդ դալիքը մոտեցնելու համար, ի՞նչ է պահանջվում այսօրվա մարդուց, որ լինելու է նաև վաղվա քաղաքացին։ Այդ հարցերի ճշմարիտ պատասխանը նույնպես մտահոգել է հայ պոեզիային և դա հասկանալի է։ Մարդկային պատմության մեջ առաջին անգամ ընդհանուր է դարձել հասարակության ու անհատի ուղին, նրանց կյանքն ու երջանկությունը, «նույնիսկ արցունքները» (Մայակովսկի)։

Կոմունիստական բարոյականությունը երջանկությունը դիտում է ոչ որպես պարապ ուրախություն, ապահով անհոգության արտահայտություն, այլ որպես կառուցման կիրք, նոր հեռուներ բացելու ձգտում, սրբազան անհանգստության լավի, գեղեցիկի համար։

Երջանկություն է, երբ գիշերային հերթափոխից տուն ես վերադառնում այնպես առույգ, թեթև ու կենսուրախ, որ կարծես խնճույքից ես տուն դառնում. («Հարևանիս» Ս. Հարությունյան)։ Երջանկություն է նաև, երբ քեզ տեր ես զգում հողին ու կապույտ երկնքին, աշխարհը չափում ես քո մեծ սրտով և նույն սրտով ընկալում թռիչք ու տագնապ, երբ հպարտորեն կարող ես ասել.

Ես հոգնած եմ շատ ու վաստակաբեկ
Եվ շատ բան գուցե կրողնեմ բերի,
Բայց հոգով երբեք չեմ ընթանա բեք,
Չեմ դառնա բնավ ստվերի գերի։
(Մ. ՄԱՐԳԱՐՅԱՆ)

Այս խոստովանությունների մեջ գլխավորը պայքարն է մարդու, նրա ճակատագրի համար։ Իսկ այդ մարդը երբեմն նաև ծանր փորձությունների է ենթարկվում. տխրում է, արտասվում։ Ճիշտ է նկատել Գ. Մահարին, թե մի վախենա տխուր երգերից, նրանք կարող են անգամ բուժել։ Իր հուշերում հին բոլշևիկ Ի. Պապովը վկայում է, որ Լենինը սիրում էր կրկնել Նեկրասովի հայտնի խոսքերը, թե «ով ապրում է առանց վշտի ու զայրույթի, նա չի սիրում իր հայրենիքը»։

Փոխվել են ժամանակները, դրանց հետ նաև Նեկրասովյան վշտի ու զայրույթի իմաստը, բայց դրանք չեն անհետացել, շարունակում են ապրել նոր երանգներով։ Անհնար է թվարկել բոլոր այդ երանգները, բայց մի բան անվիճելի է—այդ վիշտը զուրկ է հուսալքման, անհուսության երանգից։ Այսօրվա պոեզիայի հերոսը գիտի վշտանալ գեղեցիկի ճանապարհին կորցրածով և հպարտանալ իր ձեռք բերած գեղեցկով, կարող է արտասվել մի ծաղկի կորուստը, հուզվել մի բացվող բողբոջով, «տառապանքի ժայռեր կուլ տալ» բերկրանքի լեռներն առնելու համար։ Կար ժամանակ, երբ պոետները խոսում էին տիեզերական վշտի, տխրության մասին։ Այժմ երկրի վրա հաստատված ուրախությունն իր ակոսն ունի նաև տիեզերքում.

Երեկ առավոտ իմ տունը մտավ
Տիեզերական մի ուրախություն.

Եվ տիեզերքով լցվեց իմ հոգին
Երեկ առավոտ...
(Հ. ՍԱՀՅԱՆ)



Այն ժամանակ, երբ Սովետական երկրում մարդու երջանկությունը պետական գործի կարևորություն է ստանում, երբ ամեն ինչ արվում է մարդու ձեռքերով և մարդու համար, բուրժուական մեռնող աշխարհի տեսաբանները փորձում են մարդու համար մղվող պայքարում կրած իրենց պարտությունը քողարկել ինչ-որ «մասսայական հասարակության» ցնորքով, որտեղ անհատի ներքին թափառումները, նրա մեկուսացումը հասարակությունից, իսկական ստեղծագործական հոգեվիճակ է համարվում։ Ամերիկյան ռեակցիոն գրականագետ Իրվինգ Խաուն, օրինակ, խոստովանում է, որ իրենք գնում են դեպի միջակության լուռ անապատը, «որտեղ մարդիկ շուտով կորցնելու են հետաքրքրությունը բարոյական ու մտավոր այն որոնումների նկատմամբ, որ մի ժամանակ հատուկ էր Արևմուտքի հասարակությանը։ Հումանիզմի լուսապսակը փոխարինվելու է հղփացածության նիհիլիզմով, բարձր կուլտուրան հետզհետե ավելի ու ավելի է փոխվելու ինչ որ տարակուսանք հարուցող մնացուկի»։ Մի այլ «արևմտացի»՝ Կլեմենս Խերզենհաուզը գտնում է, որ «քննադատությունը չպետք է զբաղվի մարդով։ Այդ գիտության գործը՝ գեղարվեստական երկն է առանց մարդու»։

Հասարակություն առանց անհատի, արվեստ՝ առանց մարդու, ահա թե հոգևոր քայքայման ի՞նչ խորության է հասել ժամանակակից դեկադենտությունը։ Այս ատիճանական անկումը բուրժուազիայի «բարի կամքի» արտահայտություն չէ, այլ հետևանք այն հարաճուն հավատի, որ աշխարհի ժողովուրդները տածում են սոցիալիստական հասարակարգի հումանիստական սկզբունքների նկատմամբ, այդ հասարակարգի մեջ տեսնելով մարդկության բախտը տնօրինող միակ կենսահաստատ ուժը։

Անդրադառնալով պարտիայի նոր Ծրագրի միջազգային արձագանքներին, Ն. Ս. Խրուշչովը նշում է, թե «Կոմունիզմը արդի հասարակական կյանքի մեջ է մտել «ծանրակշիռ» և «տեսանելի» կերպով, առաջատար դիրքեր գրավել այնտեղ, և չկա այնպիսի մի ուժ, որը կարողանա կանգնեցնել նրա հաղթարշավը»։ Անզոր գտնվելով այդ հաղթարշավի հանդեպ, Արևմուտքի ռեակցիոն մտածողները մի կողմից ջանում են կասկածանքի ու թերահավատության մթնոլորտ ստեղծել, մյուս կողմից պնդում են, թե իսկական ազատությունը տառապելու մեջ է, թե անհատի առաքինության իսկական չափանիշը տառապանքն է։ Մարդատյացության այս տեսությանը սովետական գրականությունը հակադրվում է իր հումանիստական բարձր գաղափարներով, կյանքը գեղեցկացնելու իր պայծառ իդեալներով։

Դեռևս Մայակովսկին է ասել, թե հարկավոր է այնպես անել, որ սերն անցնի ամբողջ տիեզերքով.

Чтоб вся
На первый крик — товарищ!
Оборачивалась земля.

Երկրագունդը մարդկային սիրով համակելը, խնդության օթևան դարձնելը սովետական պոեզիայի սրբազան ձգտումներից մեկն է։

Մենք կոչված ենք այսօր, որ համայն
Աշխարհի սրտում ոսկեհուն
Անվհատ ջնփորենք հիմա
Ծնգությունք մեր-քո խոսքերով

Մենք կոչված ենք հիմա, որ քարից,
Եվ ջրից ինքնությամբ լցված
Ավետենք համայն աշխարհին
Այս առավոտք բացված։
(«Նորք», ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ)

Պահպանելով «քարի և ջրի» ինքնությունը (սերը սեփական ժողովրդի
նկատմամբ, առողջ ազգայինը—Վ. Մ.) հայ պոետներն իրենց գրիչը ի սպաս են
դրել համայն աշխարհի համար բացվող ինտերնացիոնալիզմի մեծ առավո-
տին: Եվ գրողը, որքան ավելի պայծառ ու խորն է զգում այդ առավոտը, այն-
քան ավելի է իր հպարտ ազգայինով մերձենում մյուս ժողովուրդներին:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը ոչ թե ջնջում, այլ ավելի բարե-
նպաստ պայմաններ է ստեղծում սոցիալիստական ազգերի կուլտուրաների
հետագա զարգացման համար, ուժեղացնում նրանց փոխազդեցությունն ու
փոխադարձ հարստացումը: Առանց հայրենիքի խոր ու անձնվեր սիրո անհնար
է ինտերնացիոնալիստ լինել, պահպանել մարդու բարոյական վեհությունը:

Կոմունիզմը մարդասիրության բարձրագույն աստիճանն է, մարդու հոգե-
վոր ունակությունների անկաշկանդ ու ներդաշնակ զարգացման նոր դարա-
շրջանը: Բայց ինչպե՞ս պետք է ստեղծվի այդ մարդը, նրա նոր կեցությունը,
նրա կուլտուրան: Նա պիտի պահպանի՞, պիտի տանի՞ իր հետ իր ազգային
կուլտուրայի լավագույն արժեքները, դարերից եկած և բոլոր փորձություննե-
րին դիմացած իր ժողովրդի բարոյական առողջ գծերը. թե՞ ամեն ինչ մի կողմ
նետած, մի օր դառնալու է բոլորովին նոր մարդ: Այդ հարցի շուրջ
վերջերս հաճախ են արտահայտվում ու վիճում: Ոմանք փորձում են ավելի
առաջ գնալ, կտրվելով ազգայինի զարգացման այսօրվա պատմական խնդիր-
ներից, ուրիշները դժվարությամբ են հրաժարվում ազգայինի հնացած, արդեն
իրենց դարն ապրած որոշ գծերից: Մեզ թվում է որ երկու տենդենցն էլ վնասա-
կար են: «Ազգային կուլտուրայի ձևերը,—ասում է ընկ. Խրուշչովը,—քարացած
չեն մնում, այլ կատարելագործվում են. չքանում են հնացած, կոմունիստական
շինարարության խնդիրներին չհամապատասխանող ձևերը, ծագում են նոր
ձևեր»: Հիրավի, այժմ ոչ մի արգելակ չկա ազգային կուլտուրաների զարգացման
համար: Բայց դրանց զարգացումը պետք է տանի ոչ թե դեպի ազգային միջ-
նորմների ուժեղացում, այլ դեպի ազգերի մերձեցում (ընդգծումները մերն
են — Վ. Մ.): Այսպիսով, մենք տեսնում ենք, որ պարտիան պատմության
ներկա էտապում կարևորագույն խնդիր է համարում ազգային կուլտուրաների
այնպիսի զարգացումը, որը տանում է դեպի ժողովուրդների մերձեցում:
Ուրեմն պետք է զարկ տալ այդ մերձեցմանը նպաստող, դեպի ինտերնացիո-
նալիզմը տանող, ինտերնացիոնալիզմով հագեցող ազգայինին:

Ինտերնացիոնալիզմը դրսից ներմուծված ինչ որ գաղափար չէ, որ եկել
է տիրելու բոլորին, դա ծնվում է ազգայինի առողջ, բարեբեր հողի վրա և
դառնում նաև մյուս ազգերի սեփականությունը: Ինտերնացիոնալիզմը ոչ թե
ոչնչացնում է ազգայինը, այլ ծնվելով եղբայրացած ժողովուրդների ճակա-
տագրերի ընդհանրությունից, ազգայինը հետզհետե բարձրացնում է համա-
մարդկայինի աստիճանին: Այդ հեռավոր, բայց այսօրվա մեր մեծագործու-
թյուններում ստեղծվող հասարակության անդամն իր ճակատագրի մեջ ար-
տացոլելու է բոլոր հին ու նոր միջնորմներից զերծ մարդկության ճակատա-
գիրը:

Ժամանակին Գերցենն ասել է. «Մենք չենք կառուցում, մենք փշրում ենք,
մենք նոր հայտնություններ չենք հռչակում, այլ վերացնում ենք հին կեղ-
ծիքը...»:

Կոմունիզմը լինելու է ընդհանուր կառուցման, մեծ հայտնությունների
դարաշրջան և, եթե մարդիկ ստիպված են լինելու փշրելու, ապա նրանք փշր-



ելու են միայն արգելքները տիեզերքի նվաճման ճանապարհին: Այդ մեծ վա-
ղը կառուցում է այսօրվա մարդը, որ ունի հայրենիք. ռուս է, ուկրաինացի,
հայ է ու վրացի, ուզբեկ է և էստոնացի: Գրականությունն ու արվեստը դրանց
մասին պետք է խոսի և դրանց անունից: Ռուսաստանին նվիրված իր բա-
նաստեղծաշարքում («Սիրո խոստովանություն») Ալեքսանդր Պրոկոֆևն ասում
է, թե կան «խուլ խոսքեր», որոնք հարազատ չեն իրեն, բայց կան նաև այն-
պիսիք, որ կրակից էլ ուժեղ են: Դրանք ուրիշներից ավելի գեղեցիկ են. օրի-
նակ, Ռուսաստանը, որ սկսվում է «Ռ» հզոր տառով: Բանաստեղծը խոստո-
վանում է նաև, որ Ռուսաստանը «շողացել է մայրական աչքերից, մտել իր
կուրծքը, թափանցել արյան մեջ: Եվ եթե այն հանգչեր իր կրծքի տակ, նույն
ակնթարթին կպայթեր իր սիրտը: Ամեն ինչում Պրոկոֆևը հենվում է Ռուսաս-
տանին, ամենուր տեսնում է իր հայրենիքի ազնիվ, խաղաղասեր ձեռքը:

Ահա աշնանամուտ է և սոխակները պատրաստվում են չվելու ուրիշ եր-
կրներ. թող հանգիստ չվեն, քանի աշխարհում կա Ռուսաստանը. բանաստեղ-
ծին կախարդում են բնությունը «իր» ռուսական գեղեցկությամբ, երկինքը
դարձյալ իր ռուսական կապտությամբ: Եվ այսպես ամենուր Ռուսաստանը
պոետի հետ է: Սակայն դա փոքր ժողովուրդներին պաշտպան կանգնած «մեծ
ու բազմաձայն» Ռուսաստանն է:

Կարելի է բազմաթիվ այլ օրինակներ բերել համոզվելու համար այն ճըշ-
մարտության մեջ, որ ինտերնացիոնալիզմը անցնում է ոչ թե ռուսի, ուզբեկի
սրտերի կողքով, այլ դրանց միջով, որ ինտերնացիոնալիզմի հայրենիքը Ռու-
սաստանն է, Ուկրաինան, Հայաստանը, Վրաստանը, Լատվիան... որ վերջա-
պես, երգը ռուսի կամ հայի մասին հարազատ ու մոտ է նաև բելոռուսին ու
վրացուն: Սա է ազգերի կուլտուրական մերձեցման ճշմարիտ ուղին:

Հենց այդ ուղին էր պաշտպանում Չարենցը, երբ ասում էր. «Ես ես որպես
հայ գրող, պատկանում եմ «փոքր» ազգության և գիտեմ, որ եթե իմ ստեղ-
ծագործական գործունեությունը հոգեբանորեն սահմանափակեմ, ազգային
ներփակված շրջանակներում, որքա՜ն ողորմելի կլինի նրա դիապազոնը և
ազդեցության ոլորտը: Ես երջանիկ եմ և զգում եմ ինձ մարդկության ամենա-
առաջավոր հոսանքի մասնիկը շնորհիվ այն բանի, որ Հոկտեմբերյան հեղա-
փոխությունը վերացրել է իմ հոգևոր տեսադաշտից ազգային ինքնասահմա-
նափակումների այդ ողորմելի ցնորքը»:

Գրելով իր «Ես իմ անուշ Հայաստանի» հայրենասիրական բանաստեղծու-
թյունը, Չարենցը դրսևորում է կատարյալ մարդկային սեր իր ժողովրդի նը-
կատմամբ. սակայն այդ համամարդկային զգացումը մարմնանում է կոնկրետ
ազգային ձևում, որը նրան ուրույն երանգ է տալիս: Չարենցը տեսնում ու սի-
րում է Հայաստանը, ինչպես Պրոկոֆևը՝ Ռուսաստանը: Չարենցի երգած նաիր-
յան արևը նույնպես «լենինյան հրով էր ճառագած»: Եվ բնավ պատահական
չէ, որ Չարենցը գալիք սերմնացաններին խորհուրդ է տալիս առաջին բուռ
ցորենը դաշտերի վրա թափելուց հետո.

Դեպի հյուսիս նետէ շնորհը ձեր երկրորդ,
Դեպի տափաստաններն ընդարձակ.
Ուր բոցերկած կարմիր ուրագանը մի օր
Այս նեղձեցյալ երկրում և ամենուր
Գարնան անձրև դարձավ:

Այս բանաստեղծության փիլիսոփայությունն այն է, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը եկավ փրկելու ո՛չ միայն հայ ժողովրդի անցյալը, «որբ ու առնական» Նաիրին, որին երբեք չլքեց Չարենցը, այլև ապահովելու «դեպի Լյառն Մասիս» նետած սերմերի հասկավորումը։ Չարենցի երգած այդ բարդին տարիներ հետո պիտի մի նոր հպարտությամբ ու երջանկությամբ խշշար Համո Սահյանի պոեզիայում։

Ես երգիչ, հրի, սրի, շահ չունեմ քո սիրուց զատ,
Քեզ նման կանաչ կյանքով քեզ համար ելած մարտի,
Կմեռնեմ, միայն թե դու դարերում ազատ խշշաս,
Իմ հեռո՜ւ, հեռո՜ւ, հեռու Նաիրյան դալար բարդի։

Սա ազգային հպարտության հենց այն զգացումն է, որին նույնքան հարազատ են նաև Դոնի ծփանքը, Քուռ գետի շառաչը և Նեմանի անդորրությունը։ Ինտերնացիոնալիզմը կոսմոպոլիտիզմից առանձնանում է նաև նրանով, որ տարբեր ազգությունների մարդիկ մերձենում են իրար ոչ թե դատարկ ձեռքերով, այլ իրենց հետ բերած հոգևոր այն գանձերով, որոնցով մարդկային է տվյալ ժողովուրդը։ Այդ մերձեցումը կատարվում է ոչ թե հայրենիքից հրաժարվելու գնով, այլ ազգայինի հետագա ծաղկման, համամարդկային բովանդակությամբ հագենալու ճանապարհին։

Աշխարհի ճակատագրին նման հարազատությամբ մոտենալու դեպքում մարդը հպարտանում է ուրիշի հողում կատարվող բարի գործով, վեհանում սրտից-սիրտ ձգվող, հայրենիքներ իրար կապող ընդհանուր երազանքով։

Մի առիթով Պրիշվինն ասել է, թե մեր ժամանակի թեման է՝ յուրաքանչյուրին տված սիրո ելքը գտնել բոլորի սիրով և, ընդհակառակը, այնպես սիրել ամենքին, որ պահպանվի ուշադրությունը յուրաքանչյուրի նկատմամբ։ Ահա նաև այդ «ես»-ի և «մենք»-ի բարոյական ներդաշնակությամբ է հարուստ լինելու կոմունիզմի քաղաքացին։ Երբ բանաստեղծն այսօր ասում է, թե ես իսկական հայ եմ, սիրում եմ իմ լեզուն, հայկական բարբառը և «մագաղաթները մեր երազուն», դրանով նա չի ցանկանում ընդգծած լինել իր բացառիկությունը, այլ ուզում է հաստատել այն ճշմարտությունը, թե միայն այդ հայրենասիրությունն է ընդունակ անկեղծորեն հրճվելու ուրիշի ստեղծած գեղեցիկով, ապրել ուրիշի ճակատագրով, թե հոգևոր այդ առաքինություններով օժտված անհատը միայն կարող է խենթանալ Ցեյլոնից եկած նեգրերի, «բրոնզե հնդիկների», «գարուն Նորվեգուհու» պարերով։

Եթե ճշմարիտ է, որ նա, ով ազնվորեն ծառայում է մարդուն, պիտի ապրի բոլոր ժամանակներում, ապա կոմունիզմով սկսվում է մեկը բոլորին, բոլորը մեկին ծառայելու այն գեղեցիկ դարաշրջանը, որ երազել են շատերը, բայց մեզ է վիճակվել կառուցել ու տեսնել այն։

---

# Մեր օրերի ՀԵՐՈՍՆԵՐԸ

## ՓՈՐՁԻ ՈՒ ԳՈՐԾԻ ՄԱՐԴԸ

### 1



Ինչ-որ բանաստեղծական, գերագույն զգացում է ապրում մարդ, երբ նույնիսկ ամռան տապին մտնում է այս այգիները, շնչում ճամփեզրին բուսած անթառամների ու դառնածաղկի, նոր հնձած խոտի խառնաբույրը ու տեսնում, թե ինչպես է խաղողի ողկույզը լցվում հողի քաղցրահամ ավիշներով, դեղձը օծվում արևի երանգներով։ Քայլում ես այս զմրուխտե այգիների միջով և զարմանում, թե մարդու կամքն ու համառ աշխատանքը ի՛նչ հրաշքների են ընդունակ։

Չէ որ շատ ժամանակ չի անցել այն օրից, երբ այստեղ եկան առաջին շինարար-այգեգործները, և լսվեցին ուժանակի առաջին պայթյունները... Այգի տնկել այնպիսի մի վայրում, որը երբեք ջուր չի տեսել, ավելի ճիշտ կլինի ասել՝ համատարած քարի տափաստան է եղել, դժվար է պատկերացնել։ Բայց ահա պայթեցին ուժանակները, և դարավոր անդորրը վրդովվեց... Սակայն չկարծես, թե այդ պայթյուններով շենքերի հիմքեր էին փորվում. ո՛չ։ Այգեգործները հողը նվաճում էին թիզ առ թիզ, պայթեցնելով հրաբխային սալաքարերը։ Խոփերը ջարդվում էին այդ քարակարկառներում, տրակտորները ծառանում, մարդիկ ոչ թե բահով, այլ լոմով էին բացում տնկափոսերը, չէին փորում, պայթեցնում էին։

Այսպիսի սխրանքների հայը վաղուց է սովոր։ Իր բարձրիկ լեռնաշխարհում շինականը դար ու դարեր կռիվ է տվել քարի ու հողի հետ, ձորերից ջուրը հանել սարալանջերը ու անօրինակ մի եռանդով ծառ ու այգի մշակել։ Կառչած մի բուռ հողին, նա իր իսկ քրտինքով ջրել է տունկը ու զովացել նրա ստվերի տակ։ Եվ վաղեմի սովորույթն այդ ապրում է մինչև այսօր։ Պատերազմը դեռ նոր էր վերջացել, դեռ նոր էին սերմնացանները ու այգեգործները վերադառնում արտ ու այգի, նոր էին նրանք ողջագուրվել հարազատների հետ, երբ այս քարուտներում պայթեցին ուժանակները, և ծնվեցին Այգեգործության ու պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտի Փարաքարի այգեստանները։ Եվ հիմա, ուղևո՛ր, երբ անցնելու լինես Երևան-Էջմիածին ճանապարհով, Փարաքար չհասած թեքվիր դեպի աջ, ու կտրիր ևս մի քանի կիլոմետր։ Այնտեղ դու կտեսնես ծաղկափթիթ այգիներ, ուր թռչուններն են համերգում ու խոխոջում են պաղպաջուն առվակները, կտեսնես խաղողի ու պտուղների զարմանալի սորտեր, որոնցից շատերը նույնիսկ ջնջվել են հին ու բազմափորձ այգեգործների հիշողությունից, կամ սորտեր, որոնք դեռևս անծանոթ են մարդկանց ու աշխարհին։ Այստեղ քեզ կընդունի բանվորների ու գիտական աշխատողների սիրալիր ու համբերաշխ մի կոլեկտիվ, որի ջանքերով է ստեղծվել այս ամենը։ Իսկ երբ այդ

պահին իր առօրյա բազում հոգսերից մի պահ ազատ լինի բազմափորձ գիտնական Սուրեն Պողոսյանը, ապա նա քեզ շա՜տ ու շատ հրաշալիքների մասին կպատմի և այն էլ ի՜նչ սիրով ու իսկական բանաստեղծի ներշնչանքով...

2

Առաջին անգամ ես նրան տեսա իր տանը՝ Երևանում: Հանգստանում էր աշխատանքային օրվա հոգսերից՝ գիշերը սեղանի առջև նստելու, ցերեկվա փորձերի արդյունքը ամփոփելու, երազելու, նոր հայտնագործությունների ոսկե բանալին հղկելու համար:

Բարձրահասակ, առնական լեռնցի՝ Շամշադինի շրջանից, առօրյա զրույցի ժամանակ տեղային առոգանություն, խոհուն, խոր աչքեր ու երբեմնակի ծանր հայացք ու արտահայտություն, որը, որպես անջնջելի հետք, մնացել է պատերազմի ծանր ու դաժան օրերից:

— Խորհուրդ եմ տալիս գրելու այլ թեմա ընտրել,— հանգիստ, անվրդով ասում է նա: Ծխի քուլաները օղակ-օղակ վեր են բարձրանում, նոսրանում ու մշուշի պես կանգնում էլեկտրական ջահի տակ:

— Գրելու համար թեման ես եմ ընտրում,— համառում եմ ես, և արդեն ընտրել եմ...

— Ես դեռևս շատ քիչ բան եմ արել,—խուսափում է դոկտորը,— ինչպե՞ս և ի՞նչ կարող եք գրել իմ մասին:

Ո՛չ, որոշել եմ համոզել նրան, և ոչ մի պայմանով ձեռնունայն չեմ դուրս գա տնից: Դրա համար էլ շատ մեղմ, որպեսզի չվիրավորվի, ասում եմ.

— Իսկ ես անձամբ ձեր մասին ոչինչ չեմ գրելու, կգրեմ բաժնի, կոլեկտիվի աշխատանքի մասին:

— Կրկնում եմ, աչքի ընկնող ոչինչ չկա:

— Այնուամենայնիվ մի բան կա՞...

— Մի բան կա՛,— ասում է նա,— բայց եթե սպասեք մի քանի տարի էլ, լավ բաներ շատ կլինեն:

— Մի քանի տարի հետո կհանդիպենք անպայման:

— Խնդրեմ,— կարծելով թե ինձ համոզեց, ուրախությամբ համաձայնում է դոկտորը:

— Իսկ այժմ՝ այսօրվա մասին:

Նա հոնքը վեր է քաշում զարմացած: Երևի իմ համառությունը զարմացնում է նրան:

— Դե, լա՛վ,— վերջապես համաձայնության հոգոց է հանում նա,— տեսնում եմ՝ դուք ինձնից համառն եք:

Եվ սկսում է պատմել դժկամությամբ, բառերն արտասանում է հատ-հատ, ծանր, ապա հավանաբար մոռանում է ամեն ինչ և բացվում է հետաքրքրական, անմոռանալի զրույցի կծիկը...

— Երբ 1938 թվականին գյուղատնտեսական գիտությունների թեկնածուի գիտական աստիճան ստացա և աշխատեցի ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի Հայկական ֆիլիալի բիոլոգիական ինստիտուտում, ինձ հետաքրքրում էին բույսերի գենետիկայի և ժառանգականության ընդհանուր հարցերը: Զբաղվում էի միամյա բույսերով՝ ցորեն, պոմիդոր և այլն: Ցորենի «Արտաշատի—42» սորտը, որն այժմ Արարատյան դաշտում համատարած կերպով ցանվող միակ ցորենն է, այդ տարիների աշխատանքի արդյունքն է: Սակայն մինչև վերջ չկարողացա հասցնել այն, պատերազմը խանգարեց: Ես մեկնեցի բանակ, բայց իմ ընկերները՝ Վարդան Գուլքանյանը և Գրիգոր Սուրմենյանը, նորածնին իրենց խնամքի տակ առան, գլուխ բերին գործը, և ցորենի այդ սորտն այժմ ապրում է ու տարածվում:

Կիսատ մնացին և բազմամյա կուլտուրաների, հատկապես խաղողի նոր սորտեր ստանալու ուղղությամբ տարվող փորձերը: Սակայն փորձերը շարունակեց կինը՝ Սուսաննա Խաչատրյանը: Եվ այժմ գոյություն ունեցող խաղողի «Տոկուն», «Արագածի», «Արմենիա» սորտերը պահպանվել են կնոջ համառ աշխատանքի ու ջանքերի շնորհիվ:

Ընդհատվեց մարդու խաղաղ ստեղծարար կյանքը: Վազերը դեռ նոր էին պտղակալել, դեռ նոր էին ողկույզները լցվում քաղցր հյութով, երբ սկսվեց պատերազմը: Շատերի հետ միասին երիտասարդ գիտնական Սուրեն Պողոսյանն էլ մեկնեց ռազմաճակատ: Անցավ դժվար ու դաժան ճանապարհներով. նրա աչքի առաջ այրվում էր հայրենի հողը, մերկանում ծառ ու ծաղկից, ոչընչանում մարդկային ձեռքով ստեղծված բարիքը, պտուղը չորանում էր դեռ չհասունացած... ու կարծրացավ բույսերը քնքշորեն սիրող մարդու սիրտը:

Երկար ու դժվարին էր մարտիկի ուղին. բայց հանկարծ այն ընդհատվեց 1942 թվականի մայիսյան մի օր, Կերչում՝ արյան փրփուրով ծածկված ծովափին: Գերի... Գերությո՞ւն, օտարի շըղթա, մա՛հ... Մա՞հ, թե՞ փախուստ: Ո՛չ, ազատատենչ լեռնցու հոգին չի կարող տանել գերության շղթան:

Ձգվել է գերիների երկար, անվերջանալի շըղթան փոշոտ ճանապարհների վրա: Բոկոտն ու կիսամերկ, քաղցած ու ծարավ քայլում է այդ շղթան անծիր ճանապարհներով:

Եվ մեռնում էին նրանք, ովքեր ծնվել էին ապրելու, սիրելու համար, ընտանիք ու երեխաներ ունենալու, կառուցելու համար: Մեռնում էին դեռ չսիրած ու չսիրված, դեռ սիրտը համբույրի երազանքով լի:

Եվ ընկնում էին մարդիկ, ապրողները բարձրանում էին նորից, մեռնողները ամուր գրկում հայրենի հողը՝ կարծես չցանկանալով հեռանալ նրանից: Ավելի լավ է հայրենի հողում, քան օտար:

Փախչե՛լ, փախչե՛լ, փախչե՛լ...

Բայց ինչպե՞ս: Պահապանների գայլային մի ոհմակ օղակել է շարասյունը՝ պատրաստ կրակելու նրա վրա, ում ոտքը դուրս կգա տողանի եզրից: Քանի գյուղ ու քաղաք մնաց հետևում, արյունածեծ ոտքերը քանի անգամ բարձրացան ու իջան, քանի կաթիլ արյուն հեղեց նա հարազատ հողի վրա, դժվար է հաշվել: Այսպես անցան օրեր, ամիսներ, տարիներ...

Օդեսա... այն քաղաքը, ուր անցել են նրա ուսումնառության տարիները, ուր ստացել է գիտական կոչում, ուր այնքա՜ն բարի, հրաշալի ընկերներ ուներ նա: Նրանցից շատերը չկան այլևս. կամ զոհվել են արդեն, կամ կռվում են թշնամու դեմ: Բայց այստեղ է դեռ Նադեժդա Դիմիտրիևնա Սիչը, այստեղ է Օլգա Գրիգորևնա Դովգանը: Այդ մասին նա իմացել էր դեռևս Խերսոնի գերիների համբարում, ուր որպես բանվոր աշխատում էր գյուղատնտեսական փորձակայանում:

Անվերջ երթերից ու սովից հյուծված Սուրենը միայն այստեղ մի քիչ հանգստացավ: Ընկեր—գերիները առաջին օրերին նրան չէին թողնում աշխատի: Հողը հուզում էր երիտասարդ մասնագետին: Հիմա այնտեղ, հեռավոր Երևանում, քաղցրամրմունջ Հրազդանի ափին, որտեղ Բիոլոգիական ինստիտուտի փորձնական այգին էր, աճում են խաղողի իր նոր սորտերը: Բայց աճո՞ւմ են արդյոք, չե՞ն չորացել, չե՞ն փչացել: Ո՛չ, չեն փչացել, այնտեղ է հավատարիմ ընկերն ու կինը, այնտեղ են մյուս ընկերները, նրանք չեն թողնի, որ իր աշխատանքն ու հիշատակը մեռնի: Մարդը կարող է մեռնել, բայց նրա հիշատակը պետք է ապրի, ապրի մարդկանց սրտում, ապրի այն բույսերի մեջ, որոնց կյանք ու շունչ է տվել ինքը: Ահա այստեղ հիշեց նա Օդեսայի իր ընկերներին ու գտավ Նադեժդա Սիչի հետքերը: Շուտով բախտը նրան նետեց Օդեսա: Դա 1944 թվականի հունվարն էր:

Հագնելով Նադեժդա Սիչից ստացած ներկած քաղաքացիական հագուստը, Սուրեն Պողոսյանն ընկերոջ հետ փախավ լագերից: Քաղաքացիական հագուստը խաբեց ելքը հսկող պահակին: Լուսաբացը մոտենում էր: Ծանոթ նրբանցքներով ու իրեն քաջածանոթ մթին փողոցներով նա ընկերոջ հետ հասավ Նադեժդա Դիմիտրիևնայի տունը: Ամբողջ չորս ամիս նրանք ապրեցին մթին գաղտնարաններում. փախստականներին համառորեն որոնում էին: Չորս ամիս անց Օդեսան ազատագրվեց: Սուրեն Պողոսյանը վերադարձավ Հայրենիք:

3

— Դե՛, ահա և ես վերջացրի,— այդ պատկառելի մարդը հուզված է, ավելի հաճախ է ծխում, հայացքը ծանրացել է քարի պես: Լռում է. ես գիտեմ, որ դժվար է նրա համար հիշել այս ամենը, դժվար է հիշել բոլոր նրանց, ովքեր ընկան գերության շղթաները ձեռքին ու չտեսան ազատության արշալույսը, դժվար է հատկապես այն պատճառով, որ դեռևս երբեմն ինչ-որ բիծ էին տեսնում մարդիկ գերությունից մինչև ազատություն ու վերադարձ ընկած նրա ճանապարհին այն օրերին, երբ դեռ մեկն էր թագավորում մարդու նույնիսկ անձնական կյանքի ու զգացմունքների բոլոր ոլորտներում:

Հիշողությունը անցած կյանքի երկրորդ վերապրումն է: Ինձ պատմելու ընթացքում նա երկրորդ անգամ ապրեց այդ ամենը, երկրորդ անգամ դառնացավ, պարզորոշ տեսնելով այն մարդկանց քամնելի դեմքը, ովքեր այդքան տանջանքից հետո էլ կանգնեցին նրա ճանապարհին այն ժամանակ, երբ նա ուղղում էր բնության սխալը, հողը զարդարում բույսերի ու մրգերի նոր տեսակներով՝ հուրախություն մարդկանց:

Եվ ահա կրկին նա իր փորձնական այգու տերն է, կրկին վաղ առավոտից արևի տակ, որթատունկի առաջ: Կենդանի են, անվթար են մնացել «Տոկունը», «Արագածին» ու «Արմենիան» և արդեն կարելի է նրանց քաղաքացիական իրավունք տալ: Պետք է ետ նվաճել կորցրած ժամանակը, կռվել բնության հետ, նրան ծնկի բերել, նրանից ստանալ այն ամենը, ինչ պետք է մարդուն ու աշխարհին:

Սակայն արդեն փոքր էր այն այգին, որը մի ժամանակ կարծես թե բավարարում էր. ասենք՝ նպատակներն ու պահանջներն էլ այն ժամանակ փոքր էին կարծես: Անհրաժեշտ է նոր հողամաս ընտրել... Պահանջներ, դիմումներ և առաջարկություն՝ Փարաքար գյուղից քիչ վեր, ամայի, անջրդի քարոտ մի տարածություն, ուր մարդն իսկ ոտք չի դրել:

— Մեր ինչի՞ն է պետք այդ հողամասը,— փորձեցին առարկել ոմանք:

— Այս է, ուզում եք՝ լավ, չեք ուզում՝ ավելի լավ...

Սակայն Սուրեն Պողոսյանը, Վ. Գուլքանյանը, Գ. Բաբաջանյանը չառարկեցին: Նրանց համար պարզ էին այդ հողամասի յուրացման հետ կապված բոլոր դժվարությունները, բայց և մեծ ու հրապուրիչ էին հեռանկարները: Նախ տարածությունը մեծ էր ու անսահման, ապա ընկնում էր Արզնի—Շամիրամ ջրանցքի տակ: Եվ 1947 թվականից սկսվեց այս խոպանի յուրացումը. մեկ տարի անց խաղողագործության և գինեգոր-

ծության ինստիտուտի խաղողի սելեկցիայի բաժինը փոխադրվեց Փարաքար: Հին փորձայգիներից խաղողի նոր արմատակալներ բերվեցին ու սկսվեց ստեղծարար ու վերափոխիչ այն մեծ աշխատանքը, որն այսօր այնպես հիացնում ու հմայում է դիտողին:

Բաժինն իր առջև խնդիր դրեց՝ բարելավել հնից մեզ հասած սորտերը, ստանալ նորերը: Դրա համար անհրաժեշտ էր նախ մի միասնական սիստեմի վերածել, կենտրոնացնել, արժեքավորել խաղողի մինչ այժմ եղած բոլոր սորտերը, կործանումից փրկել նրանք, որոնցից մնացել են փշրանքներ միայն: Այս աշխատանքը միայն կարող էր հնարավորություն տալ բարելավել և տարածել եղածը, ստանալ նոր սորտեր: Անհրաժեշտ էր կազմակերպել ամպելոգրաֆիական կոլեկցիա, այսինքն՝ տեղական և ներմուծված սորտերն աճեցնել իրար կողքի, միևնույն հողամասում, ընտելացնել նոր պայմաններին: Այս աշխատանքն այնպիսի եռանդով ծավալեցին բաժնի գիտական աշխատողներ Վարդան Սարգսյանն ու Սրբուհի Մուրադյանը, որ շուտով եղած 160 սորտի քանակը հասավ 600-ի:

Այգեգործության և գինեգործության ինստիտուտի խաղողի սելեկցիայի բաժնի կոլեկտիվը զբաղված է մի քանի կարևորագույն խնդիրների լուծմամբ: Այսպես՝ հայտաբերել տեղական սորտերը, դրանք հավաքել մի տեղ, ուսումնասիրել, բազմացնել: Այս տեսակետից ինստիտուտի՝ Փարաքարի մոտ ստեղծված այգին որքա՜ն նման է յուրատեսակ մի մատենադարանի: Մատենադարանում ի մի են բերված մեր ժողովրդի հոգևոր ժառանգության պտուղները՝ մատյաններ, որոնք պատմում են բազմաչարչար, բայց կենսասեր ու կենսահաստատ մի ժողովրդի մտքի ու ոգու խոյանքների մասին, այստեղ հավաքված խաղողի և պտուղների բազմազան սորտերը պատմում են այդ նույն ժողովրդի աշխատանքային նվաճումների մասին, ժողովուրդ, որը քարի վրա իսկ խաղող ու դեղձ է աճեցրել, պահել, պահպանել իր մագաղաթների պես ու հասցրել մինչև մեր օրերը: Բայց գրված են այդ սորտերը Հայաստանով մեկ, ու շատերից, ինչպես մագաղաթյա մատյաններից, պատառիկներ են միայն հասել մեզ: Եվ ահա մեր այգեգործ գիտնականները իսկական բանահավաքների պես գյուղից-գյուղ, այգուց-այգի անցնելով, դիտելով և ուսումնասիրելով, հավաքել և այստեղ, այս այգին են բերել այն ամենը, ինչ մնացել է ց' այսօր, ինչ ոտնատակ չի արել ո՛չ թշնամին, և ո՛չ էլ ամենաստեղծ, բայց և ամենակործան բնությունը: Այդ պատառիկներն աճում են հնագետի ձեռքի տակ, և հեռու չէ օրը, երբ նրանցից շատերը կրկին կբազմանան, այգիներ, բերք ու բարիք դառնալու այն վայրերում, ուր մի ժամանակ ծաղկել են իրենց նախնիները, այն վայրերում, ուր դարեր շարունակ ոչ մի ծառ չի բուսել ու ծաղկել:

Տեղական սորտերի հետ միասին այստեղ աճեցվում, բազմացվում և ուսումնասիրվում են համաշխարհային հռչակ ունեցող խաղողի սորտեր: Ինչո՞ւ, ի՞նչ նպատակով:

Հայաստանն ինչքան էլ հարուստ է խաղողի բազմազան սորտերով, այնուամենայնիվ չի կարող բավարարել մեր ժողովրդի օրավուր աճող պահանջմունքները: Դեռևս քիչ են սեղանի ո՛չ միայն համեղ ու հաճելի, այլև գեղեցիկ սորտերը, քիչ են գինեգործության զարգացման համար անհրաժեշտ, լավ գույն և բարձր շաքարայնություն ունեցող խաղողները: Չկան ցրտադիմացկուն սորտեր:

— Բնությունը չի նախատեսել այս ամենը,— կատակում են այգեգործները,— մենք պետք է ուղղենք բնության սխալը:

Եվ ուղղում են: Տեղական սորտերի կողքին աճեցվում և ուսումնասիրվում են պտուղների արտասահմանյան լավագույն սորտերը, որոնցից ոմանք խիստ վաղահաս են, ոմանք հակառակը՝ ուշահաս, ոմանք ցրտադիմացկուն են, մյուսները գեղեցիկ, հաճելի, բայց ունեն որոշ թերություններ:

Տեղական սորտերի հավաքում, արտասահմանյան լավագույն սորտերի ներմուծում և մշակում, լեռնային խաղողագործության« ստեղծում—այս երեք խնդիրները հաջողությամբ լուծվում են և տալիս հիանալի արդյունքներ: Սակայն կա մի կարևոր խնդիր էլ, որը, թերևս ամենահիմնականն է, և կոչված է ի մի բերելու և լուծելու մինչև այժմ չլուծված շատ հարցեր: Դա սելեկցիոն աշխատանքն է, արհեստականորեն նոր սորտեր ստանալու, հները բարելավելու կարևոր և այնքան անհրաժեշտ գործը: Սելեկցիոն աշխատանքի հիմքում ընկած է այնպիսի խնդիրների լուծումը, ինչպիսիք են՝ խաղողի որակը, բերքի քանակը, նոր սորտերի ստացումը: Այս գործում նույնպես բաժինը մեծ հաջողությունների է հասել: Մեր ռեսպուբլիկայի սահմաններից վաղուց է դուրս եկել Վ. Ի. Լենինի անվան Համամիութենական Գյուղատնտեսական ակադեմիայի թղթակից-անդամ Սուրեն Պողոսյանի աշխատանքների համբավը: Տեղական և օտարերկրյա սորտերի սելեկցիայի միջոցով ստացվել են խաղողի բազմաթիվ նոր գծեր, որոնցից 31-ը հաստատված են որպես սորտ: Սրանց մեջ կան սեղանի, գինեգործության վաղահաս, ուշահաս և այլ սորտեր: Խաղողի նոր՝ «Հաղիսի», «Արմենիա». «Տոկուն», «Կարմուս», «Արազած» և այլ սորտեր արդեն տարածվում են ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում:

...Նա դեռ երիտասարդ մի գյուղատնտես էր, օրն ի բուն շրջում էր դաշտերում, բարձրանում սարերը, իջնում ձորերը և նրա քննախույզ միտքն ու աչքերն ամեն տեղ որոնում էին, ամեն ինչ տեսնում, կշռադատում: Եվ ահա մի անգամ. Հաղիսի սարը բարձրանալիս, քարափի վրա նա նկատեց խաղողի մի վազ: Որտեղի՞ց էր այստեղ ընկել այդ վազը: Թռչուննե՞րն են նրա սերմը գցել այստեղ, կամ գող աղվե՞սն է անուշադիր տանտիրուհու պատշգամբից գողացել ու այս ձորակում վայելել իր «որսը»: Կամ թե հոգնած հնձվո՞րն է ամռան տապին իր բերանը քաղցրացրել Արարատյան դաշտից բերված այս բարիքով. ո՞վ գիտե.

— Այն ժամանակ դրանով ես շատ էի ոգևորված,— Պողոսյանը պատմում է դանդաղ, բայց ներքին հուզմունքով ու կրքով:— Սակայն շուտով սկսվեց պատերազմը, և ես չկարողացա զբաղվել այդ վազով:

Պատերազմի դաժան օրերին էլ նա չէր մոռանում, որ այնտեղ, հեռավոր Հաղիսի սարի փեշին, քարին ու հողին կառչած, ձմռան հողմից անպաշտպան մրսում են որբասունկի մերկ ճյուղերը: Ցուրտը չի՞ տարել արդյոք, ռազմաճակատ մեկնած հորը փոխարինող մի պատանի հովիվ անզգուշորեն չի՞ պոկել վազը, առանց հասկանալու, որ դա բացառիկ մի երևույթ է ու մեծ ապագա է խոստանում:

— Ծանր էր ինձ համար մտածել, որ ամեն ինչ կարող է կորչել, բայց կյանքի սերը և ապագայի նկատմամբ ունեցած հավատը ամենահաղթ են, ամենազոր:— Նա լռում է մի պահ, ապա շարունակում,— կենդանի մնացի ո՛չ միայն ես, այլև գործը: Այնպես որ, խաղողի մի քանի նոր սորտերի հեղինակը երկուսս ենք՝ ես և Սուսաննան:

Սուսաննա Խաչատրյանը մինչ այդ նստած է լուռ, բայց էլ չի կարողանում համբերել, փորձում է առարկել:

— Ի՞նչ ես ասում, Սուրեն, չէ՞ որ դա քո՛ գործն է...

Եվ զրույցը ձգվում է երկար, մինչև կես-գիշեր:

— Նոր սորտերի ստացումը ինքնանպատակ չէ,— շարունակում է Պողոսյանը,— դա ունի ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն: Մեր ստացած 31 նոր գծերը, որոնք հաստատված են որպես սորտ, բաժանվում են երկու խմբի: Դրանցից 17-ը տեխնիկական սորտեր են, այսինքն՝ հիմնականում հումք են գինեգործության համար, իսկ մյուսները սեղանի խաղողներ են: Սակայն դրանով նպատակադրումը չի սպառվում: Սեղանի, ուտելու խաղողը պետք է լինի գեղեցիկ և համեղ, բացի այդ, դրանցից մի քանիսը պետք է վաղահաս լինեն, մյուսները՝ ուշահաս, որպեսզի օգտագործման տևողությունը երկար լինի: Տեխնիկական սորտերը նույնպես պետք է ուշահաս և վաղահաս լինեն, որպեսզի խաղողի բերքահավաքն ու մշակումը չկուտակվեն ինչ-որ մի 15—20 օրվա մեջ, այլ լինեն պարբերաբար, աստիճանաբար, այլապես մեծ դժվարություններ կստեղծվեն և՛ կոլտնտեսություններում ու սովխոզներում, և՛ վերամշակման գործարաններում:

— Մենք աշխատում ենք,— ասում է Սուսաննա Խաչատրյանը,— որ գինու համը կատարյալ լինի: Ինչպես գիտեք, մեր խաղողների պտղամիսը գունավոր չէ: Նույնիսկ սև խաղողի միսը սպիտակ է: Պատկերացրեք, ինչքան լավ կլինի, երբ մենք գունավոր պտղամսով խաղող ունենանք: Եվ ունենք: Օրինակ. «Սպիտակենի». «Արենի», «Սև Այգենի»—«Ներկենի», «Սև Այգենի»—«Սապերավի» սորտերի տրամախաչումից ստացվել են բոլորովին նոր տեսք ու բնավորություն ունեցող խաղողներ, որոնք շուտով, շատ շուտով մեծ տարածում կգտնեն: Սրանց և՛ մաշկը, և՛ մսանյութը կարմիր են, իսկ շաքարայնությունը՝ սովորականից բարձր:

Հիշում եմ՝ անցյալ տարի աշնանը գնացել էի ինստիտուտի այգիները և այնտեղ ինձ ցույց տըվին վաղահաս խաղող: Դրանք «Սպիտակ Արաքսենի»-միչուրինյան «Զորնի սլադկի» և «Ֆեյանետ»—«Սև Սաբենի» սորտերի հիբրիդներ էին. որոնք արդեն օգոստոս ամսվա վերջին օրերին հասունանում և կուտակում են մինչև 30 աստիճան քաղցրություն:

— Այդ հիբրիդները Սուսաննային են պատկանում,— ժպտում է Պողոսյանը,— դրանք դեռևս սորտ չեն, բայց թեկնածու են, շուտով հավանաբար համփորձության ուղեգիր կստանան և շատերին կզարմացնեն իրենց բարձր բերքատվությամբ և այլ արժանիքներով: Այդ հիբրիդները փորձարկվում են նաև Լենինականում և հիանալի արդյունք են տալիս: Խաղողի ցրտադիմացկուն սորտեր ստանալը շատ է հետաքրքրում բաժնի աշխատողներին: Այդ ուղղությամբ բաժինը մեծ աշխատանք է կատարում: Շուտով «Հաղիսից» ավելի լավ սորտեր կստացվեն: Ահա, օրինակ, «1508—12» հիբրիդը, որն ստացված է Ամուրյան (Ամուրի երկրամաս) և «Հաղիսի» սորտերի տրամախաչումից: Այն դեռևս անուն և անձնագիր չունի, բայց հիանալի խաղող է: Այս հիբրիդը դիմանում է մինչև 28 աստիճան ցրտին, խիստ բերքատու է և ունի գունավոր պտղամիս:

«845—10» հիբրիդը հասել է մինչև Շիրակի բարձրավանդակը: Շիրակցին նրանից պատրաստում է բացառիկ որակյալ գինի: Նրա հետ աճում է և «Կոտայքին», որը Լենինականում իրեն ավելի լավ է զգում, քան նախկին հայրենիքում:

— Լենինականի հենակետի վարիչ, փաստակավոր գյուղատնտես Արամայիս Բունիաթյանը,— ջերմությամբ ասում է դոկտորը,— անգնահա-

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԹՌՉՈՒՆՆԵՐԻ ԱՎՏՈՄԱՏԱՑՎԱԾ ՄՇԱԿՈՒՄԸ

Պոլտավայի մսի սարքավորման գործարանը պատրաստել է անկոնվեյերային «ԲԼԿ—600» ավտոմատ գծի փորձնական նմուշ: Այն նախատեսված է ոչ մեծ ձեռնարկություններում, միջկոլտնտեսային և սովխոզային մորթման կետերում՝ թռչունի մեքենայացված մշակման համար:

Ռոտորային ագրեգատում կատարվում է թռչունի մորթը, արյունազերծումը և ջերմային մշակումը: Հորիզոնական ցենտրիֆուգան (թափամեքենա) ծառայում է փետուրների հանման համար, իսկ կոնվեյերը՝ կիսաֆաբրիկատի տեղափոխման համար: Գծի արտադրողականությունը— 600 գլուխ է: Այն զբաղեցնում է ընդամենը 27,5 քառ մետր տարածություն և օգտագործում է 3,3 կիլովատ հզորություն: Նախնական մշակման տեխնոլոգիական պրոցեսը անընդհատ է: Ռոտորային ագրեգատի ծածկից թռչունը նետվում է ավտոմատիկորեն, ավտոմատիկորեն է կատարվում նաև թռչունի մսեղիքի բեռնումը ցենտրիֆուգայի վրա: Գծի ոչ մեծ չափսերը և կշիռը (1340 կգ.) հնարավորություն են տալիս այն հեշտությամբ տեղափոխել և օգտագործել որպես շարժական թռչնամշակման կետ:

Ժամում 500 թև-թռչունի արտադրողականությամբ գոյություն ունեցող կոնվեյերային գծի համեմատ նորը երկու անգամ թեթև է, երկու անգամ քիչ տարածություն է զբաղեցնում և ավելի քիչ էներգիա է ծախսում:

## 18 ՄԵՏՐ ԵՐԿԱՐՈՒԹՅԱՆ ՁՈՒԼԱՁՈՂ

Կիրովի գունավոր մետաղների մշակման գործարանի ձուլման ցեխում 18 մետր երկարության արույրե և պղնձե սիլիկատներ ստանալու համար աշխատում է մի նոր մեքենա: Այն ստեղծել են ձեռնարկության կոնստրուկտորները: Ագրեգատն ունի հատուկ սառեցնող հարմարանք, որտեղ մետաղը ենթարկվում է ակտիվ սառեցման, արագ բյուրեղանում և պնդանում է: Ձուլվածքի կառուցվածքը դառնում է համասեռաչափ, նվազում է հրաքեփը: Այդ մեքենայի ներմուծմամբ աշխատանքի արտադրողականությունն աճել է մի քանի անգամ:

Նոր տեխնոլոգիայի կիրառումը գործարանին թույլ է տվել այս տարվա առաջին եռամսյակում խնայել 18 տոննա գունավոր մետաղ:

## ՈՒՏԻՃԻ ԴԵՄ ԴԻՄԱՑԿՈՒՆ ԲԱՄԲԱԿԵՆԻ

Ցզյանսի նահանգի (Չինաստան) գյուղատնտեսական ինստիտուտի աշխատակիցները ստացել են բամբակենու նոր սորտ, որը դիմանում է բամբակենու ուտիճին: Թեև բամբակենին չէր սրսկվել թունավոր քիմիկատներով, բույսերի ցողունները, առանձնապես տերևները մնացել էին կանաչ և առողջ: Այս տարի ստացված «Տունձուն-յուան—I» նոր սորտը չի վնասվել բամբակենու ուտիճից և, բացի դրանից, բարձր բերքատու է, երաշտադիմացկուն, անպահանջկոտ: Նոր սորտի գլխավոր առանձնահատկությունը ցողունի, ճյուղերի, կոկոնների և առանձնապես տերևների վրա բարակ, բայց ամուր մազմզուկների առկայությունն է, որոնք և արգելակում են վնասատուների թափանցումը բույսերի մեջ:

## ԱՆԱՍՆԱԲՈՒԺԱԿԱՆ ՆՈՐ ՊՐԵՊԱՐԱՏՆԵՐ

Բուլղարիայի գյուղատնտեսական կենդանիների բազմացման, կենսաբանության և պաթոլոգիայի (ախտաբանության) ինստիտուտի գիտական աշխատակիցները գառների մկանային դիստրոֆիան բուժելու համար կիրառել են սելենային անհիդրիդ: Պրեպարատը մի միլիգրամանոց դոզայով ջրի լուծույթում տրվում է գառանը և հիվանդությունը 24 ժամվա ընթացքում բուժվում է: Էքսուդատիվ (արտածորանային) դիաթեզի դեմ օգտագործվում է նատրիումի սելենիդ և սելենային անհիդրիդ մեկ միլիգրամ՝ 33 կիլոգրամ կերային խառնուրդով: